ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1959 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՀՐԱՇԱԼԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՓԱՅԼՈՒՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Հունվարի 10—12-ը տեղի ունեցավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX արտահերթ համագումարը, որը լսեց և քննարկեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանի զեկուցումը նվիրված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներին։

Համագումարը նշեց այն վիթխարի ոգևորությունը, որ առաջացրել է ռեսպուբլիկայի աշխատավորների մեջ կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի պայքարի ու աշխատանքի մեծ արդյունքներն ի մի բերող, մեր Հայրենիքի հետագա զարգացման փայլուն հեռանկարները ցույց տվող այդ հրաշալի փաստաթուղթը։

ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշման համաձայն Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները քննության դրվեցին պարտիական ակտիվի, սկզբնական կազմակերպությունների ժողովներում, բանվորների, կոլտնտեսականների և ծառայողների բազմամարդ հավաքույթներում։ Մեր Հայրենիքի հետագա զարգացման այդ հոյակապ ծրագիրը, որը մշակել է Կոմունիստական պարտիան, լիակատար հավանություն գտավ սովետական մարդկանց կողմից։

Այդ ծրագրի հրապարակումը հիացմունք և ոգևորություն առաջացրեց նաև մեր երկրի բարեկամների շրջանում։ Ահա թե ինչ է գրել լեհական «Գլոս Պրացի» թերթը ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները հրապարակելու կապակցությամբ։ «Երբ հետամնաց ցարական Ռուսաստանում,— գրում է այդ թերթը,— հաղթեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան, հարկ եղավ ամեն ինչ նորից կառուցելու, կառուցելու անսովոր դժվարին պայմաններում, կապիտալիստական ամբողջ շրջապատման ատելության պայմաններում։ Հսկայական ջանքեր ու ժամանակ խլեցին պայքարը հակառևոլյուցիայի ու ինտերվենցիայի դեմ, համաշխարհային երկրորդ պատերազմը և դրանց պատճառած վերքերի բուժումը։ Եվ ահա, հակառակ ամեն ինչի, ռևոլյուցիայից 40 տարի հետո Եվրոպայի ամենահետամնաց պետություններից մեկը դառնում է համաշխարհային էկոնոմիկայի գլխավոր ուժը։ Նա այդքան կարճ ժամանակում արտադրության ամենամեծ ցուցանիշներ է նվաճում, առաջ անցնելով կապիտալիստական աշխարհի հզոր պետություններից, որոնք ներկա մակարդակին են հասել ոչ թե տասնամյակների ընթացքում, այլ հարյուրավոր տարիների ընթացքում, հարստանալով գաղութների ժողովուրդների շահագործման միջոցով»։

Ֆրանսիայի կոմպարտիայի օրգան «Յումանիտե» թերթը ընդգծելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի խաղաղասիրական նպատակը, գրում է, որ «Ոչ մի ժողովուրդ այդքան կարճ ժամանակում այնքան շատ բան չի արել իր սեփական բախտը և ամբողջ մարդկության ապագան փոխելու համար, ինչքան սովետական ժողովուրդը... Ինչ էլ որ

մտածեն սոցիալիզմի և ՍՍՌՄ-ի մասին, կա մի կետ, որի վերաբերյալ բոլոր լրջախոհ մարդիկ պետք է համաձայնեն. այն երկիրը, որը հայտարարում է, թե յոթ տարում կկառուցի միլիոնավոր բնակարաններ, կրկնակի կբարձրացնի իր բնակչության բարեկեցությունը, այդպիսի երկիրը խաղաղություն է ցանկանում»։

Մեր երկրի զարգացման հոյակապ ծրագրերի ռեալ լինելը արդեն անզոր են ժխտել թշնամիները։ Այսպես, օրինակ, ամերիկյան «Նյու-Յորք Հերալդ տրիբյուն» թերթը խմբագրականում գրում է. «Հիացմունք են պատճառում այն խնդիրները, որոնք Սովետական Միությունը պետք է կատարի մինչև 1965 թվականը։ Այդ պլանների վիթխարի թափը պետք է ցույց տա, որ Միացյալ Նահանգների համաշխարհային արդյունաբերական առաջնությունը սպառնալիքի տակ է դրվում»։

Միանգամայն բնական է և՛ բարեկամների ուրախությունը, և՛ թշնամիների տագնապը։ Սովետական ժողովուրդը իրականացնելով իր հարազատ Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները, մեծ հաջողություններ ձեռք բերեց արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Վերջին տարիներին աննախընթաց կերպով աճեց Սովետական պետության դերը միջազգային հարաբերություններում, ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար մղվող մեծ պայքարում։

«Սովետական ժողովուրդը,— ասված է Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում,— համախմբված իր Կոմունիստական պարտիայի շուրջը, հասել է այնպիսի բարձունքների, կատարել այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրները կլինեն կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի համակողմանի ստեղծման, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման և միաժամանակ սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման խնդիրները։ Դա վճռական էտապ կլինի կապիտալիստական աշխարհի հետ մրցության մեջ, երբ գործնականում պետք է կատարվի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և նրանցից անցնելու պատմական խնդիրը»։

Մեր երկրի զարգացման պատմական նոր շրջանի այս խոր բնութագիրը մի անգամ ևս ապացուցում է ստեղծագործական մարքսիզմի ճշմարտացիությունը։ Նրա լույսի տակ էլ Ն. Ս. Խրուշչովը սպառիչ պարզությամբ ուրվագծել է կոմունիզմի ծավալուն կառուցման խնդիրները։

Հայտնի է, որ ՍՄԿՊ XX համագումարի կողմից առաջ քաշվեց մեր երկրի զարգացման ավելի երկարատև ժամանակաշրջանի համար հեռանկարային պլան մշակելու խնդիրը։ Այդ պլանի գլխավոր ուղղություններն ու խնդիրները շարադրվեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակին նվիրված սեսիայում։ Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը այդ հեռանկարային պլանի բաղկացուցիչ մասն է կազմում։



Մեր երկիրը տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների շնորհիվ պատմականորեն կարճ ժամանակամիջոցում կարողացավ հաղթահարել իր դարավոր հետամնացությունը և դարձավ հզոր տերություն, որն ընդունակ է պաշտպանելու իր մեծ նվաճումները, ազատությունն ու անկախությունը։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառումը հնարավորություն տվեց փայլուն հաղթանակներ ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայում։ Ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ծայրամասերից մեկը հանդիսացող Հայաստանը Սովետական իշխանության տարիներին ոտքի կանգնեց, վերափոխվեց և դարձավ Սովետական մեծ Միության առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX համագումարի մասնակիցները մեծ ոգևորությամբ էին խոսում մեր ռեսպուբլիկայի աննախընթաց հաջողությունների մասին։ Բավական է ասել, որ 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 54 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 6,4 անգամ։ Հնգամյակների տարիներին կառուցվեցին բազմաթիվ նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնց մասին հնում երազել անգամ չէր կարելի. կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ արմատապես վերափոխվեց գյուղատնտեսությունը, փարթամորեն ծաղկեց հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Առաջիկա յոթ տարում զարգացման արագ տեմպերը հնարավորություն կտան մեր Հայրենիքին նոր թռիչք գործելու դեպի սոցիալիստական էկոնոմիկայի որակական ավելի բարձր վիճակ՝ դեպի կոմունիզմ։

«Իր առջև դնելով կոմունիստական հասարակարգի կառուցման նոր վիթխարի խնդիրներ,— ասված է թեզիսներում,— մեր պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը հենվում են համաշխարհային-պատմական այն նվաճումների վրա, որոնք ձեռք են բերվել մարքս-լենինյան տեսության, գիտական կոմունիզմի հիմնական սկզբունքների կենսագործման շնորհիվ»։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում վիթխարի դեր խաղացին արդյունաբերության և շինարարության կառավարման վերաբերյալ պարտիայի որոշումները, մեքենա-տրակտորային կայանների վերակառուցման և կոլտնտեսային կարգի հետագա զարգացման ուղղությամբ նրա մշակած միջոցառումները։ Ինչպես այդ, այնպես էլ պարտիայի մյուս միջոցառումներին սովետական ժողովուրդը պատասխանեց կոնկրետ գործերով, աշխատանքային մեծ սխրագործություններով։

Մեր երկրի աշխատավորները անկեղծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումը, որի մեջ հանրագումարի են բերված սովետական ժողովրդի աշխատանքն ու պայքարը վերջին հինգ տարում՝ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի, կոլտնտեսային կարգի և ամբողջ սոցիալիստական սիստեմի ամրապնդման գործում։

Կոմունիստական պարտիան մշակելով յոթնամյա պլանի առաջադրանքները, ելել է ծանր ինդուստրիայի և նրա վճռական ճյուղերի՝ մետալուրգիայի, վառելիքի արդյունաբերության, էներգետիկայի, քիմիայի առաջնահերթ զար-

գացման վերաբերյալ լենինյան ուսմունքից։ Յոթնամյակի տարիներին ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 80 տոկոս աճի հետ մեկտեղ, արտադրության միջոցների արտադրությունն ավելանալու է 85—88 տոկոսով. 39-ից մինչև 65—70 միլիոն տոննա ավելանալու է չուգունի ձուլումը, 55-ից մինչև 86—91 միլիոն տոննա՝ պողպատի ձուլումը։ Մոտ 3 անգամ ավելանալու է քիմիական արդյունաբերության արտադրանքը, ավելի քան 2 անգամ՝ նավթի հանույթը, մոտ 5 անգամ գազի հանույթն ու արտադրանքը։ 2—2,2 անգամ աճելու է էլեկտրաէներգիայի արտադրությունը, մոտ 2 անգամ՝ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը։

Ծանր ինդուստրիայի այսպիսի աճը կապահովի էկոնոմիկայի մյուս բոլոր ճյուղերի հետագա զարգացման բարձր տեմպերը։

Արագ տեմպերով զարգանալու է սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Վերջինս կհասնի այնպիսի մակարդակի, որը հնարավորություն կտա խիստ կերպով ավելացնելու գյուղատնտեսական հումքի ռեսուրսները այն հաշվով, որպեսզի ազգաբնակչությունն ապահովվի սննդամթերքներով և բավարարվի պետության մյուս բոլոր կարիքները գյուղատնտեսական մթերքների գծով։ Նախատեսվում է յոթնամյակի վերջին հացահատիկի տարեկան արտադրանքը հասցնել մինչև 10—11 միլիարդ փթի, նշանակալի չափով ավելացնել բամբակի, շաքարի ճակնդեղի, վուշի, բանջարեղենի, մրգերի բերքատվությունը, երկու անգամ ավելացվելու է մսի և 1,7—1,8 անգամ կաթի արտադրանքը։

Յոթնամյա պլանը նախատեսում է սովետական ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացում, սպառման ապրանքների արտադրության ավելացում։ Այդ տարիներին քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվելու են 15 միլիոն բնակարաններ և գյուղական վայրերում՝ 6 միլիոն տներ։ Ազգային եկամուտը ավելանալու է 62—65 տոկոսով, բարձրացվելու է բանվորների և ծառայողների ցածր և միջին վարձատրվող խմբերի աշխատավարձը, իջեցվելու են հասարակական սննդի ապրանքների գները, լայնացվելու է մանկապարտեզների, մանկամսուրների, գիշերօթիկ դպրոցների ցանցը, կրճատվելու են աշխատանքային օրն ու աշխատանքային շաբաթը և այլն։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերի մեջ իր վառ արտահայտությունն է գտել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վարած լենինյան ազգային քաղաքականությունը։

Առաջիկա յոթնամյակում նախատեսվում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացնել 2,26 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը («Ա» խումբ) 2,61 անգամ, իսկ սպառման առարկաների արտադրությունը («Բ» խումբ)՝ 1,75 անգամ։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակի կարևոր խնդիրները հանդիսանում են գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության, հատկապես արհեստական և սինթետիկ նյութերի, պլաստմասսայի և հանքային պարարտանյութերի, մեքենաշինության, հատկապես էլեկտրատեխնիկական արդյունաբերության, գործիքաշինության և սարքաշինության հետագա զարգացումը, նոր էլեկտրակայանների շինարարությունը և այլն։

Արդյունաբերության բոլոր ճյուղերում իրականացվում է արտադրության պրոցեսների հետագա կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում,



բարձր արտադրողական սարքավորումների և առաջավոր տեխնոլոգիայի ներդրում, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացում և ձեռնարկությունների կոոպերացում։

Ռեսպուբլիկայում յոթնամյակի տարիներին արագ տեմպերով է զարգանալու գունավոր մետալուրգիան։ Գունավոր մետալուրգիայի զարգացումը հիմնականում լինելու է գործող ձեռնարկությունների վերակառուցման, նրանց արտադրական կարողությունների ընդլայնման, բարձր արտադրողական մեքենաների և սարքավորումների ներդրման ու նոր ձեռնարկությունների կառուցման ուղղությամբ։ Յոթնամյակի վերջին տարում նախատեսվում է սև պղնձի արտադրությունը 1958 թվականի համեմատությամբ ավելացնել 3,8 անգամ, ռաֆինացված պղնձինը՝ ավելի քան 5 անգամ, գունավոր մետալուրգիայի գլանվածքինը՝ 14—14,6 անգամ։

Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է ավելի քան 3,3 անգամ։ Յոթնամյակի ընթացքում վերակառուցվելու և ընդլայնվելու են Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ, ավտոդողերի գործարանները, Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը և կառուցվելու են նոր գործարաններ։ Զգալի չափով ընդլայնվում է թողարկվող արտադրանքի նոմենկլատուրան։ Քիմիական արդյունաբերության մեջ լայն չափով կիրառվելու է բնական գազը, որպես սինթետիկ նյութերի և այլ քիմիական նյութերի ստացման հումք, մինչ այդ օգտագործվող կարբիդ-կալցիի փոխարեն։ Բնական գազի օգտագործումը քիմիական արդյունաբերության մեջ բացի արտադրվող նյութերի քանակի ավելացումից, մեծ չափով իջեցնում է նրանց ինքնարժեքը։ Էլեկտրակայանների հզորությունը յոթնամյակում ավելանալու է 2 անգամ, էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծերինը՝ 2,1 անգամ։ 1959 թվականին շահագործման է հանձնըվելու Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը և 1960 թվականին՝ Երևանի հիդրոէլեկտրակայանը։ Որոտան գետի վրա սկսվում է Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որի առաջին հերթը շահագործման կհանձնվի 1965 թվականին։

Բնական գազի բազայի վրա ռեսպուբլիկայում կառուցվելու են ջերմաէլեկտրակայաններ։ Իրականացվում են բոլոր էլեկտրակայանների լրիվ ավտոմատացումը և տելեմեքենայացումը։ Շահագործման է հանձնվելու Աղստաֆա—Երևան էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը։

Լայնորեն զարգանալու է ռեսպուբլիկայի մեքենաշինությունը։ 1965 թվականին մեքենաշինության համախառն արտադրանքը 1958 թվականի համեմատությամբ ավելանալու է 3,5 անգամ։ Մետաղահատ հաստոցների արտադրությունը ավելանալու է 6,5—7 անգամ, կոմպրեսորներինը՝ ավելի քան 3 անգամ, սարքերինը, ավտոմատացման միջոցներինը և նրանց պահեստամասերինը՝ 5,5 անգամ։

Նոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման, բնակարանային շինարարության առաջադրված խնդիրների իրականացման և ժողովրդական տնտեսության այլ կարիքների բավարարման նպատակով զգալի չափով աճելու է շինանյութերի արդյունաբերությունը։ Այսպես, ցեմենտի արտադրությունը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ ավելանալու է 1,6 անգամ, կրինը՝ 3,5 անգամ, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներինը՝ 4,6 անգամ, գաջինը՝ 2 անգամ և այլն։

Գյուղատնտեսության հումքի արտադրության ավելացման, ինչպես նաև արհեստական և սինթետիկ նյութերի արտադրության բազայի վրա նախատեսվում է ժողովրդական առարկաների արտադրության զգալի աճ։ Թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, նախատեսվում է ավելացնել 1,67 անգամ, սննդի արդյունաբերությանը՝ 1,7 անգամ, կահույքինը՝ 2 անգամ, ապակյա և հախճապակյա-ճենապակյա արդյունաբերությանը՝ 5,9 անգամ։

Յոթնամյակի տարիներին ուժեղ թափով զարգանալու է ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ 1965 թվականին նախատեսվում է խաղողի արտադրությունը հասցնել 231 հազար տոննայի, որը 1957 թվականի համեմատությամբ ավելի է 2,9 անգամ, պտուղներինը՝ մինչև 93 հազար տոննայի, այսինքն՝ 1957 թվականի համեմատությամբ ավելանալու է 3 անգամ։ Յոթնամյակում տնկվելու են 44 հազար հեկտար խաղողի և պտղատու այգիներ, որից 24 հազար հեկտարը խաղողի և 20 հազար հեկտարը պտղատու այգիներ։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելանալու է հետևյալ չափերով. միսը (սպանդանոցային քաշով)՝ 2,1 անգամ, կաթինը՝ 1,8 անգամ, բրդինը՝ 2 անգամ, ձվինը՝ 1,6 անգամ։ Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման հիմնական պայմանը հանդիսանում է կայուն կերային բազայի ստեղծումը։ 1965 թվականին նախատեսվում է եգիպտացորենի ցանքատարածությունները հասցնել 40 հազար հեկտարի և մեծ չափով ավելացնել խոտաբույսերի ցանքը։ Յոթնամյակի վերջին տարում հացահատիկի արտադրությունը նախատեսվում է ավելացնել 23,2 տոկոսով. զգալիորեն կավելանա տեխնիկական կուլտուրաների արտադրությունը, որը կատարվելու է հիմնականում ի հաշիվ բերքատվության բարձրացման։ Կոլտնտեսությունների, սովխոզների և ՆՏԿ-ների լրիվ էլեկտրիֆիկացումը նախատեսվում է ավարտել 1961 թվականին։ Յոթնամյակում մաքսիմալ չափով էլեկտրիֆիկացիայի և մեքենայացման է ենթարկվելու գյուղատնտեսական արտադրությունը, որի հիման վրա զգալի չափով բարձրանալու է աշխատանքի արտադրողականությունը։

Առաջիկա յոթնամյակում զգալի զարգացում է ստանալու ռեսպուբլիկայի տրանսպորտը։ Ավարտվելու է Երևան—Սևան երկաթգծի շինարարությունը Ախտա—Սևան գծամասում և սկսվելու է Երևան—Աղստաֆա երկաթգծի կառուցումը՝ Սևան—Աղստաֆա գծամասում։

Ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը ավելանալու է 2 անգամ։ Յոթնամյակում կառուցվելու է 300 կիլոմետր երկարությամբ խճուղային ճանապարհ։ Հեռախոսային կայանի հզորությունը ավելանալու է 1,6 անգամ, քաղաքային հեռախոսային ցանցի աբոնենտների քանակը՝ 2,1 անգամ։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները 1959—1965 թվականների ընթացքում կազմելու է 12 միլիարդ ռուբլի։

Առաջիկա յոթնամյակում նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ բարձրացնել 45—50 տոկոսով, շինարարության մեջ՝ 58 տոկոսով, սովխոզներում՝ 70 տոկոսով, կոլտնտեսություններում՝ 2 անգամ։

Յոթնամյակում սոցիալիստական արդյունաբերության անընդհատ զարգացման բազայի վրա բարձրանում է աշխատավորների նյութական բարեկե-



ցությունը։ Պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառությունը ավելանալու է 73 տոկոսով, այդ թվում հասարակական սննդինը՝ 78,3 տոկոսով, ռեսպուբլիկայում ի հաշիվ կենտրոնացված միջոցների կառուցվելու և շահագործման է հանձնվելու 2330 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը 4 անգամ ավելի է, քան նախորդ յոթնամյա բնակարանային շինարարությունը։ Հետագա ծաղկում են ապրելու ռեսպուբլիկայի ժողովրդական կրթությունը, գիտությունը և կուլտուրան։

Ինչպես ասված է ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում. Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, սոցիալիստական լագերի բոլոր երկրների՝ մեր օրերում կենսագործվող ժողովրդատնտեսական պլանները մեծագույն միջազգային նշանակություն ունեն։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի հաջող իրականացումը նոր, չտեսնված բարձրության կհասցնի մեր երկրի էկոնոմիկան, նյութական ու հոգևոր բարիքների առատություն կստեղծի աշխատավոր մասսաների համար, է՛լ ավելի կամրապնդի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորությունը, մեծ չափով կնպաստի մեր երկրի միջազգային տնտեսական կապերի ընդլայնմանը, կապահովի մեր հաղթանակը խաղաղ մրցության մեջ, զգալիորեն կարագացնի ամբողջ մարդկության զարգացումը խաղաղության և առաջադիմության ուղիով։

Մեր երկրի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի բնագավառներում ձեռք բերված հաջողությունները սովետական ժողովրդի անխոնջ, հայրենանվեր աշխատանքի, Կոմունիստական պարտիայի քաղաքական ու կազմակերպչական վիթխարի գործունեության, լենինյան գլխավոր գծի անշեղ կենսագործման արդյունքն են։

ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կատարման համար մղած պայքարի շնորհիվ է՛լ ավելի է աճել պարտիայի դերը մեր ժողովրդի կյանքում, է՛լ ավելի է բարձրացել նրա հեղինակությունը մասսաների աչքում։ Պարտիան այժմ ավելի քան երբևէ ուժեղ է, միաձույլ ու կուռ համախմբված իր լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Պարտիան է՛լ ավելի հարազատ է դարձել ժողովրդին, մեծ չափով ամրապնդել է իր կապերը աշխատավորական մասսաների հետ, հարստացել է աշխատանքի ու պայքարի նոր փորձով։

Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարը նշեց, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ղեկավարվելով ՍՄԿՊ դիրեկտիվներով, վերջին տարիների ընթացքում զգալիորեն բարելավել են իրենց գործունեությունը ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում, վճռական քայլեր են կատարել իդեոլոգիական աշխատանքը կյանքի հետ կապելու ուղղությամբ։

Համագումարը խնդիր դրեց պարտիական կազմակերպությունների առաջ ամրապնդել ձեռք բերված հաջողությունները, է՛լ ավելի մոտ կանգնել մասսաներին, բազմակողմանիորեն ուսումնասիրել և ընդհանրացնել նրանց փորձը, ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների ուժերն ու եռանդը ուղղել յոթնամյա պլանի առաջադրանքների անթերի կատարմանը։

Յոթնամյա պլանի կատարման հաջողությունը որոշվելու է անմիջապես արտադրական ձեռնարկություններում, շինարարություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, գիտական հիմնարկներում։ Այդ կապակցությամբ է՛լ ավելի է մեծանում սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը։

Հարկավոր է անընդհատ կատարելագործել մասսաների մեջ կատարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մեթոդներն ու ձևերը, ռեսպուբլիկայի աշխատավորներին դաստիարակել մեր Հայրենիքի առաջ կանգնած խնդիրների խոր ըմբռնման ու նրանց անշեղ կատարման ոգով, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ յոթնամյակի առաջադրանքների իրականացման համար մղվող պայքարում պահպանի իր ավանգարդային դերը և օրինակ ծառայի անպարտիականների համար։

Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի խնդիրների վեհությունը պահանջում է է՛լ ավելի բարձրացնել աշխատավոր մասսաների կոմունիստական գիտակցությունը, ուժեղացնել սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործը։ Այդ կապակցությամբ պետք է ամենուրեք բարձրացնել պարտիական կազմակերպությունների կողմից տարվող գաղափարական աշխատանքի մակարդակը։ Գաղափարական ներգործման բոլոր միջոցները՝ պրոպագանդան, ագիտացիան, մամուլը, ռադիոն, գիտությունը, գրականությունն ու արվեստը պետք է ամբողջովին ի սպաս դրվեն յոթնամյա պլանի առաջադրանքների կատարմանը։ Հարկավոր է ավելի ամուր դարձնել գաղափարական աշխատանքի կապը կոմունիստական շինարարության խնդիրների հետ, հասնել այն բանին, որպեսզի մեկընդմիշտ դուրս մղվի մեր գաղափարական աշխատանքի պրակտիկայից վերացականությունն ու դպրոցայնությունը, դոգմատիզմն ու թալմուդիզմը, ապահովել ՍՄԿՊ տեսության ու փորձի ստեղծագործական յուրացումը կոմունիստների կողմից։

Պարտիական կազմակերպությունները պետք է գործադրեն բոլոր միջոցները մասսաների ռևոլյուցիոն զգոնությունն է՛լ ավելի բարձրացնելու համար, անհաշտ պայքար մղեն բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիստական զանազան տեսակի հայացքների, ազգային սահմանափակվածության, կրոնական նախապաշարմունքների և մարքսիզմ-լենինիզմին խորթ բոլոր արտահայտությունների դեմ։ Գաղափարական աշխատանքն ամենուրեք պետք է ակտիվ, հարձակողական բնույթ կրի։

Մասսաների կոմունիստական դաստիարակության հաջողությունը կախված է նաև այդ գործին ղեկավար կադրերի ունեցած մասնակցությունից։ Չպետք է մոռանալ մեծ Լենինի ցուցումն այն մասին, որ առանց այդ կադրերի անձնական մասնակցության չկա ոչ իսկական քաղաքական գործունեություն, ոչ էլ կազմակերպական աշխատանք։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի հաջող կատարման շահերը հրամայաբար պահանջում են մեզանից է՛լ ավելի բարելավել պետական ապարատի, արհմիությունների, լենինյան կոմերիտմիության գործունեությունը։ Պարտիական կազմակերպությունները պարտավոր են հետևողական պայքար մղել բյուրոկրատիզմի և թափթփվածության երևույթների դեմ՝ հանուն պետական ապարատի ճկուն աշխատանքի։ Պետք է այնպես անել, որ արհմիությունները ավելի լայնորեն ներգրավվեն տնտեսության կառավարման մեջ, ավելի խոր կերպով զբաղվեն արտադրության, աշխատանքի նորմավորման և վարձատրության հարցերով, բանվոր-ծառայողների աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, բնակարանային շինարարության ծրագրի իրականացման և աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացման մյուս միջոցառումների իրականացման գործով։



Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում լենինյան կոմերիտմիության և ամբողջ սովետական երիտասարդության առաջ մեծ խնդիրներ են դրվում։ Պարտիական կազմակերպությունները պարտավոր են ջերմ հոգատարությամբ շրջապատել երիտասարդությանը, հատուկ ուշադրություն դարձնել նրա կոմունիստական դաստիարակության հարցերին, ապահովել բոլոր երիտասարդների ակտիվ մասնակցությունը յոթնամյա պլանի առաջադրանքների կատարմանը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, պետությանը բամբակի, շաքարի ճակնդեղի, հացահատիկի, մսի, կաթի և բրդի վաճառքի պլանները կատարելու և գերակատարելու գործում ձեռք բերած խոշոր հաջողությունների համար մեր ռեսպուբլիկային Լենինի շքանշանով պարգևատրելը քաղաքական ու արտադրական մեծ ակտիվություն է առաջացրել ռեսպուբլիկայի աշխատավորների մեջ։ Ի պատասխան այդ բարձր պարգևի, ռեսպուբլիկայի աշխատավորները լիակատար պատրաստակամություն են հայտնում՝ պատվով կատարելու Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության բոլոր առաջադրանքները։

Կառավարական այդ բարձր պարգևը պարտավորեցնում է ավելի ուժեղ պայքար ծավալել աշխատանքային նորանոր սխրագործությունների համար, հարազատ Հայրենիքին ավելի շատ արտադրանք տալու համար։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի աշխատավորները խանդավառությամբ լեցուն ամենուրեք նորանոր պարտավորություններ են ստանձնում Հայրենիքին ավելի շատ արտադրանք տալու և յոթնամյա պլանով իրենց առջև դրված խնդիրները ժամկետից շուտ կատարելու համար։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի արտահերթ XX համագումարը, որի աշխատանքն անցավ ՍՄԿՊ XXI համագումարի նախօրյակին, մեր երկրի բոլոր աշխատավորների քաղաքական ու արտադրական մեծ վերելքի պայմաններում, միահամուռ կերպով հավանություն տվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կոնտրոլ թվերի մասին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներին։

Համագումարը ռեսպուբլիկայի կոմունիստների, բոլոր աշխատավորների անունից հավաստիացրեց ՍՄԿՊ լենինյան Կենտրոնական Կոմիտեին անդուլ պայքար մղել հանուն պարտիայի մարտական առաջադրանքների կատարման, հանուն Սովետական Հայրենիքի էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա ծաղկման, հանուն կոմունիզմի հաղթանակի։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## ԳԼՈՒԽ V

## ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

## (1910—1914 թվականներ)

### 1. ՍՏՈԼԻՊԻՆՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿՐԱԽԸ ԵՎ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՃՈՒՄԸ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՄԵՋ

1910—1911 թվականներին Ռուսաստանում ստեղծվեց տնտեսական և քաղաքական նոր իրադրություն։

Արդյունաբերական լճացումը 1910 թվականից փոխարինվեց արդյունաբերական վերելքով։ 1909 թվականին քարածխի հանույթը կազմում էր 1591 միլիոն փութ, 1913 թվականին՝ 2214 միլիոն փութ։ Այդ նույն թվականներին ձուլվել էր 175 միլիոն և 283 միլիոն փութ չուգուն, արտադրվել էր 163 միլիոն և 247 միլիոն փութ երկաթ ու պողպատ։ Ավելի շատ էր արտադրվում գործվածքեղեն, աճեց շաքարի արտադրությունը։ Ավելացավ հացի արտահանումն արտասահման։

Հետռևոլյուցիոն տարիներին Ռուսաստանում իմպերիալիզմի զարգացումն ընթանում էր արագ քայլերով։ Զգալիորեն ուժեղացավ արտադրության և կապիտալի համակենտրոնացումը։ Արդյունաբերության գրեթե բոլոր բնագավառներում և տրանսպորտում իշխում էին կապիտալիստների մոնոպոլիստական միավորումները։ Այսպես, օրինակ, «Պրոդամետ» սինդիկատը տնօրինում էր երկրի երկաթի ամբողջ արտադրության ավելի քան 80 տոկոսը, իսկ «Պրոդուգոլ» սինդիկատը՝ Դոնի ավազանի քարածխի հանույթի երեք քառորդը։ 12 խոշորագույն բանկեր տնօրինում էին բանկային բոլոր միջոցների ավելի քան 80 տոկոսը։ Ֆինանսական օլիգարխիան ավելի ու ավելի մեծ չափերով էր իր ձեռքը վերցնում երկրի տնտեսական կյանքը, ավելի ու ավելի ընդհուպ էր սերտաճում ցարիզմի պետական ապարատի բյուրոկրատական վերնախավի հետ։

Ուժեղացավ օտարերկրյա կապիտալի ներհոսումը Ռուսաստան։ 1914 թվականի մոտերքին արդյունաբերական բաժնետիրական ընկերությունների հիմնական կապիտալի մոտ մեկ երրորդը և ռուսական գլխավոր բանկերի հիմնական կապիտալի 40 տոկոսից ավելին պատկանում էր արևմտաեվրոպական բուրժուազիային։ Օտարերկրյա կապիտալիստները տնօրինում էին



տնտեսության այնպիսի կարևորագույն բնագավառներ, ինչպես՝ քարածխի, նավթի հանույթը, մետաղամշակությունը։ Նրանք ամեն տարի հարյուր միլիոնավոր ռուբլի առատ եկամուտ էին ստանում փոխառությունների տոկոսների և շահույթների ձևով։ Աճեց ցարական Ռուսաստանի կախումը արևմտաեվրոպական իմպերիալիզմից։

Կապիտալի եվրոպական և ռուսական մի բուռ մագնատներ հարստանում էին, ժողովրդական մասսաները՝ աղքատանում։ Երկրի ժողովրդական եկամտի մոտ երեք քառորդը յուրացնում էին կալվածատերերը, կապիտալիստները, կուլակները։ Հարյուր հազարավոր աշխատավորներ բախտ էին որոնում օտարության մեջ։ XX դարի առաջին տասնամյակում ավելի քան մեկ ու կես միլիոն մարդ Ռուսաստանից մեկնեց օտար երկրներ՝ վաստակ փնտրելու։

Աճեց կյանքի թանկությունը, բանվորների դրությունը վատացավ։ Ֆաբրիկաների ու գործարանների պաշտոնական հետազոտությունը ցույց է տվել, որ բանվորը տարեկան միջին հաշվով ստանում էր 246 ռուբլի, իսկ կապիտալիստին տալիս էր 252 ռուբլի շահույթ։ Հետևաբար, բանվորն օրվա ավելի քիչ մասն աշխատում էր իր համար, իսկ մեծ մասը՝ կապիտալիստի համար։ Բանվորի կյանքն ու առողջությունը էժան էին գնահատվում ցարական, բուրժուա-կալվածատիրական Ռուսաստանում։ Այդ մասին պերճախոս կերպով խոսում էր «Բանվորի օրգանիզմի վնասվածքների գնահատության աղյուսակը», որը կիրառվում էր Օբուխովի գործարանում. երկու աչքի տեսողությունը կորցնելու դեպքում բանվորին հասնում էր 100 ռուբլի, իսկ մեկ աչքի տեսողությունը կորցնելու դեպքում՝ 35 ռուբլի, լրիվ խլությունը գնահատվում էր 50 ռուբլի, խոսելու ընդունակության կորուստը՝ 40 ռուբլի։

Գյուղում թագավորում էր աներևակայելի կարիք։ Ստոլիպինյան ագրարային քաղաքականության անմիջական հետևանքը եղավ գյուղացիության մասսայական քայքայումը և կուլակ-ցեցերի հարստացումը։ Ձիազուրկ և մեկական ձի ունեցող ծխերի թիվը XIX դարի վերջից մինչև 1912 թվականը ավելացավ գրեթե երկու միլիոնով։ Կալվածատեր-ճորտատիրոջ անսահման իշխանության պահպանում, կուլակային տնտեսությունների ամրապնդում, աղքատացող միջակ գյուղացիների հսկայական զանգված, հողազուրկ գյուղացիների, զուտ պրոլետարների թվի զգալի ավելացում,— այսպիսին էր այն ժամանակվա գյուղի պատկերը։ Սնանկ դուրս եկավ նաև ցարիզմի փորձը՝ Եվրոպական Ռուսաստանից մի քանի միլիոն գյուղացիների Սիբիրում վերաբնակեցնելու միջոցով մեղմացնելու հակասությունները գյուղում։ Սիբիր գնալու համար ծախծխելով իրենց ամբողջ գույքը, գյուղացիները մասսայաբար ետ էին վերադառնում՝ ամեն ինչ կորցրած և չարացած։

Հակասությունները գյուղում ավելի և ավելի էին խորանում ու սրվում։ Առաջվա պես գյուղացու գլխավոր թշնամին ճորտատեր-կալվածատերն էր։ Բայց ուժեղացավ գժտությունը կուլակների և չքավորության միջև։ 1910 թվականից սկսած գյուղացիները ավելի ու ավելի հաճախ էին հրկիզում կալվածատիրական կալվածքներն ու կուլակների խուտորները։ 1911 թվականին բռնկվեց սոսկալի սով, որն ընդգրկեց մինչև 30 միլիոն գյուղացիների։ Գյուղում ստեղծված իրադրությունը անհերքելիորեն վկայում էր ստոլիպինշչինայի կրախի մասին։

Ստոլիպինշչինայի ձախողումը է՛լ ավելի մեծ ուժով մերկացրեց Ռուսաստանի ամբողջ հասարակական և քաղաքական կարգի խոր հակասությունները,

*ցույց տվեց, որ ցարական կառավարությունն անընդունակ է լուծելու հասարակական-տնտեսական գլխավոր պրոբլեմները։*

*Ճորտատիրության մնացորդները երկրի զարգացման անտանելի խոչընդոտն էին։ Թեև Ռուսաստանը զարգանում էր կապիտալիստական ուղիով, բայց տարեցտարի ավելի ու ավելի էր ետ մնում առաջավոր կապիտալիստական երկրներից։ Լենինը 1913 թվականին գրում էր, որ թեև գյուղացիների ազատագրումից հետո կես դարի ընթացքում երկաթի սպառումը Ռուսաստանում աճել է հինգ անգամ, այնուամենայնիվ, Ռուսաստանը մնում էր հետամնաց երկիր, որը արտադրության ժամանակակից գործիքներով սարքավորված է Անգլիայից քառապատիկ վատ, Գերմանիայից հնգապատիկ վատ, Ամերիկայից տասնապատիկ վատ։ Դեռևս 1900 թվականին Ռուսաստանը նավթի արտադրությամբ աշխարհում գրավում էր առաջին տեղը, ընդամենը մեկ տասնամյակ անց նա ետ շպրտվեց։ Աղքատությունը, կեղեքումը, իրավազրկությունը, ծաղր ու ծանակը ժողովրդի նկատմամբ՝ այս ամենը. ինչպես նշում էր Լենինը, աղաղակող չափերով չէր համապատասխանում թե՛ արտադրողական ուժերի վիճակին, թե՛ ռուսական առաջին ռևոլյուցիայի կողմից արթնացած գիտակցականության և պահանջկոտության աստիճանին։ Միայն նոր ռևոլյուցիան կարող էր փրկել Ռուսաստանը։*

*Որքան էլ մոլեգներ ստոլիպինյան ռեակցիան, նա չէր կարող արմատախիլ անել ժողովրդի ձգտումը ազատության, իր կյանքի պայմանների բարելավման համար։ Մասսաների հոգնածությունն սկսում էր անցնել։ Կեղեքիչների նկատմամբ ատելությունն սկսեց նոր ուժով պոռթկալ։*

*Բանվոր դասակարգն առաջինն սկսեց հարձակողական պայքարը։ Ռևոլյուցիայի և ռեակցիայի տարիները շատ բան սովորեցրին բանվորներին, բարձրացրին նրանց դասակարգային գիտակցականությունը։ Վարձու բանվորների թիվը դարի սկզբի համեմատությամբ նշանակալի չափով աճեց։ 1914 թվականին միայն ֆաբրիկա-գործարանային պրոլետարիատը մոտ 3 միլիոն մարդ էր կազմում։ Խոշոր ձեռնարկություններում բանվորների կենտրոնացման տեսակետից Ռուսաստանը գերազանցում էր աշխարհի առավել զարգացած արդյունաբերական երկրներին։ Այն ժամանակ, երբ Ամերիկայի Միացյալ Նահանգներում 500 և ավելի մարդ ունեցող ձեռնարկություններում զբաղված էր բանվորների միայն մեկ երրորդը, Ռուսաստանում այդ թիվը կազմում էր բոլոր բանվորների կեսից ավելին (53,4 տոկոսը)։*

*1910 թվականի ամռանը Մոսկվայում տեղի ունեցան բանվորների գործադուլներ։ Այդ գործադուլներն աշխուժացրին մասսաներին։ Տարվա վերջին Պետերբուրգում, Մոսկվայում և այլ քաղաքներում տեղի ունեցան քաղաքական ցույցեր։ Սկսվեցին ուսանողական ցույցեր ու դասադուլներ։ 1911 թվականին մասսաների մեջ խմորումը շարունակում էր աճել։ Գործադուլներին մասնակցեցին ավելի քան 105 հազար բանվորներ՝ երկու անգամ ավելի, քան նախորդ տարին։ Տարվա վերջին Պետերբուրգի գործարաններում ու ֆաբրիկաներում բուռն միտինգներ տեղի ունեցան այն կապակցությամբ, որ դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիան հարցապնդում էր մտցրել II Պետական դումայի սոցիալ-դեմոկրատ դեպուտատների դատի պրովոկացիոն բնույթի վերաբերյալ։ Բոլշևիկների կոչով բանվորները պահանջում էին ազատել դեպուտատներին։*

*Հաստատվեց բոլշևիկների կանխագուշակումը ռևոլյուցիոն նոր վերելքի*



*անխուսափելիության մասին։ Ամենուրեք աճում էին ժողովրդի դժգոհությունն ու վրդովմունքը։ Բոլշևիկյան ռևոլյուցիոն լոզունգներում բանվորները գտնում էին իրենց ձգտումների ճիշտ արտահայտությունը։ Մասսաների մեջ բոլշևիկների աշխատանքի համար լուրջ նշանակություն ունեցավ «Զվեզդա» լեգալ շաբաթաթերթը, որն սկսեց լույս տեսնել Պետերբուրգում 1910 թվականի վերջերից։*

*Ռևոլյուցիոն աշխուժացման իրադրության մեջ առանձնապես վնասակար և խայտառակ դեր խաղացին օպորտունիստները։ Լիկվիդատորներն ու տրոցկիստներն ուզում էին բանվորների ռևոլյուցիոն պայքարը ննդափոխել «պետիցիոն կամպանիայով»։ Նրանք բանվորներին կոչ էին անում ստորագրել «կոալիցիաների ազատության» (միությունների, ժողովների, գործադուլների և այլ ազատությունների) վերաբերյալ խնդրագիրը, այն հաշվով, որ հետո դա հանձնվի Պետական դումային։ Բոլշևիկները բանվորներին բացատրում էին, որ ոչ մի ազատություն էլ հնարավոր չէ, քանի դեռ երկիրը կառավարում են սևհարյուրակային կալվածատերերը, որ միայն ցարական միապետության տապալումը իսկական ազատություն կտա ժողովրդին։ «Պետիցիոն կամպանիայի» առթիվ լիկվիդատորական աղմկարարությունը վերջացավ կատարյալ ձախողումով։ Լիկվիդատորներին հաջողվեց հավաքել միայն 1300 ստորագրություն, մինչդեռ բոլշևիկյան լոզունգների շուրջը համախմբվեցին հարյուր հազարավոր բանվորներ։*

*Բանվորների գործադուլները, քաղաքական ցույցերն ու միտինգները, գյուղացիների պայքարը կալվածատերերի ու կուլակների դեմ՝ այս ամենը մոտալուտ նոր ռևոլյուցիայի նշաններ էին։ Կկարողանա՞ արդյոք պրոլետարիատը առաջնորդի դեր կատարել ժողովրդական մասսաների հարաճուն ռևոլյուցիոն պայքարում՝ դա վճռականապես կախված էր Ռուսաստանի բանվոր դասակարգի մարքսիստական պարտիայի վիճակից։*

## 2. ՊՐԱԳԱՅԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ

*Սկսված ռևոլյուցիոն մարտերը ամբողջ սրությամբ դրեցին պարտիայի ամրապնդման և մասսայական ռևոլյուցիոն շարժման ղեկավարման նոր խնդիրների հարցը։*

*Ռևոլյուցիայի ժամանակ բոլշևիկների ու մենշևիկների ձևական միավորումը միասնական ՌՍԴԲՊ շրջանակներում յուրահատուկ դրություն էր ստեղծել և որոշեց բոլշևիկների ներպարտիական խնդիրները։ Բոլշևիկները նպատակ էին դրել՝ գաղափարական պայքարի միջոցով պարտիան մաքրել օպորտունիստական տարրերից։ Նրանք արդեն շատ բանի էին հասել։ Գրեթե բոլոր անլեգալ պարտիական կազմակերպությունները բոլշևիկյան էին։ Մենշևիկները պրոլետարիատին դավաճանելու ուղիով այնքան հեռու էին գնացել, որ պարտիական մասսաները ավելի ու ավելի պարզորեն էին գիտակցում լիկվիդատորներից կապերը լիովին խզելու և պարտիայից նրանց վտարելու անհրաժեշտությունը։*

*Բոլշևիկները եռանդուն կերպով ձեռնամուխ եղան պարտիական կոնֆերենցիայի նախապատրաստմանը։ Ձախողվեցին լիկվիդատորների, տրոցկիստների և հաշտվողականների այն կատաղի փորձերը, որոնց նպատակն էր վիժեցնել կոնֆերենցիան և խանգարել պարտիայի համախմբմանը բոլշևիկների*

*սկզբունքների հիման վրա։ 1911 թվականի ամռանը Ռուսաստան ուղարկվեցին Գ. Կ. Օրջոնիկիձեն, Շվարցը (Սեմյոն) և այլ աշխատողներ։ Խոշորագույն կոմիտեների խորհրդակցությունում ստեղծվեց Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողով (ՌԿՀ), որը հսկայական կազմակերպչական և պրոպագանդիստական աշխատանք տարավ կոնֆերենցիայի հրավիրման ուղղությամբ։*

*ՌՍԴԲՊ Համառուսաստանյան VI կոնֆերենցիան կայացավ 1912 թվականի հունվարի 5—17-ը, Պրագայում։ Կոնֆերենցիային ներկայացված էին ավելի քան 20 տեղական պարտիական կազմակերպություններ (Պետերբուրգ, Մոսկվա, Կենտրոնական-արդյունաբերական մարզ, Կազան, Սարատով, Թիֆլիս, Բաքու, Նիկոլաև, Կիև, Եկատերինոսլավ, Դվինսկ և Վիլնո)։ Ոստիկանական հետապնդումներն ու մյուս դժվարությունները Ուրալի, Սամարայի, Նիժնի-Նովգորոդի, Սորմովոյի, Լուգանսկի և Ռոստովի ներկայացուցիչներին խանգարեցին ներկայանալու կոնֆերենցիային։*

*Կոնֆերենցիայի վերաբերյալ Կենտկոմի հրատարակած «Ծանուցման» մեջ նշվում էր, որ, չնայած ռեակցիայի ծանր տարիներին, քաղաքական հետապնդումներին, օպորտունիստների դավաճանությանը, ռուսական պրոլետարիատը և նրա պարտիան պատրաստ են դասակարգային նոր մարտերի ընդդեմ ցարիզմի, կալվածատերերի ու կապիտալիստների։*

> *«Անվնաս է մնացել ոչ միայն ռուսաստանյան ս.-դ.-ի դրոշը, նրա ծրագիրը, նրա ռևոլյուցիոն պատգամները, անվնաս է մնացել նրա կազմակերպությունը, որը կարող էր խախտել ու թուլացնել, բայց չէր կարող հիմնովին կործանել և ոչ մի հալածանք»* («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», մաս I, էջ 330)։

*Քանի որ կոնֆերենցիայում ներկայացված էին Ռուսաստանում գործող գրեթե բոլոր կազմակերպությունները, ուստի կոնֆերենցիան հատուկ բանաձևում լիակատար իրավունքով հայտարարեց, որ «հաստատված է որպես ՌՍԴԲՊ համապարտիական կոնֆերենցիա՝ հանդիսանալով գերագույն օրգան»։ Կոնֆերենցիան փաստորեն պարտիայի համագումարի դեր խաղաց։*

*Կոնֆերենցիայի կարևորագույն գործն էր* պարտիան մաքրել օպորտունիստներից: *Հսկայական սկզբունքային և գործնական նշանակություն ունեցան նրա ընդունած բանաձևերը «Լիկվիդատորության և լիկվիդատորների խմբի մասին», «Արտասահմանում գտնվող պարտիական կազմակերպության մասին»։ Լիկվիդատորները խմբավորվել էին երկու լեգալ ժուռնալների՝ «Նաշա զարյա»-ի և «Դելո ժիզնի»-ի շուրջը։ Կոնֆերենցիան հայտարարեց, որ ««Նաշա Զարյա»-ի և «Դելո Ժիզնի»-ի խումբը իր վարքագծով* իրեն վերջնականապես դրել է պարտիայից դուրս»: *Այսպիսով, լիկվիդատորները հեռացվեցին պարտիայից։*

*Բացահայտ լիկվիդատորներից բացի կային նաև քողարկված լիկվիդատորներ և նրանց զանազան պաշտպաններ։ Այդ դերում հանդես էին գալիս արտասահմանյան այն խմբակները, որոնք ոչ մի կապ չունեին բանվորական մասսաների հետ և չէին վայելում Ռուսաստանում եղած և ոչ մի անլեգալ կազմակերպության աջակցությունը։ Դրանց թվին էին պատկանում մենշևիկ-գոլոսականները, տրոցկիստները, վպերյոդականները և ուրիշներ։ Այդ բոլոր խմբերի վերաբերյալ ընդունվեց հետևյալ որոշումը.*

> *«Կոնֆերենցիան գտնում է, որ արտասահմանյան այն խմբերը,*



> *որոնք չեն ենթարկվում ս.-դ. աշխատանքի ռուսական կենտրոնին, այսինքն՝ Կենտկոմին, և կազմալուծում են մտցնում՝ Ռուսաստանի հետ առանձին կապեր հաստատելով Կենտկոմի գլխի վրայով, չեն կարող օգտվել ՌՍԴԲՊ անունից»* («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», մաս I, էջ 355)։

*Այդ բոլոր խմբերը դրսևորեցին իրենց հակապարտիականությունը, հրաժարվելով ենթարկվել կոնֆերենցիայի որոշումներին։*

*Վերջին հաշվով բոլոր օպորտունիստները իրականում պարտիայից դուրս մնացին։ Պարտիայի մաքրումն օպորտունիստներից նպաստեց նրա շարքերի ամրապնդմանը, նրա կարգապահության ու մարտունակության բարձրացմանը, պարտիայի իսկական միասնության ստեղծմանը։ Հզոր կաղնու նման, որն ավելի է ամրանում, երբ ժամանակին կտրում են նրա չորացած ճյուղերը, բանվոր դասակարգի պարտիան մենշևիկների վտարման հետևանքով ավելի ամրացավ և ավելի ուժեղացավ։ Օպորտունիզմի դեմ մղած պայքարը բոլշևիկները հասցրին մինչև վերջ՝ մինչև մենշևիկների վտարումը պարտիայից, որը մեծագույն նշանակություն ունեցավ Ռուսաստանում դեմոկրատական ու սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։*



*Կոնֆերենցիան մեծ ուշադրություն դարձրեց տակտիկայի հարցերի վրա։ Կոնֆերենցիան նշեց մասսաների ռևոլյուցիոն տրամադրությունների աճման նշանների առկայությունը։ Այդ կապակցությամբ կոնֆերենցիան մի շարք որոշումներ ընդունեց նոր տիպի պրոլետարական պարտիա կառուցելու հետագա խնդիրների և երկրում ռևոլյուցիոն վերելքը ղեկավարելու մասին։ Պրոլետարիատը պետք է կատարեր առաջնորդի դերը՝ դեմոկրատական ռևոլյուցիայում գյուղացիությանը տանելով իր հետևից։ Որպես հերթական գլխավոր լոզունգներ առաջ քաշվեցին մինիմում-ծրագրի պահանջները՝ դեմոկրատական ռեսպուբլիկա, ութժամյա աշխատանքային օր, կալվածատիրական բոլոր հողերի բռնագրավում։ Պարտիայի խնդիրն էր այդ այսպես կոչված «երեք հիմնակետերը» դարձնել ամբողջ դեմոկրատիայի պահանջ, ժողովրդական ռևոլյուցիայի լոզունգներ։ Այդ դրոշի ներքո պարտիան ծավալեց IV Պետական դումայի ընտրական կամպանիան։*

*Սովի դեմ մղվող պայքարում պարտիայի խնդիրների վերաբերյալ հատուկ բանաձևում նշվում էր, որ պարտիական կազմակերպությունները պետք է գյուղացիներին պարզաբանեն սովի ու ցարիզմի քաղաքականության առընչությունը և մասսաների՝ սովից առաջացած վրդովմունքն ուղղեն ցարական միապետության դեմ կազմակերպված պայքարի հունը։ Պարտիական կազմակերպություններին կոչ էր արվում է՛լ ավելի ամրապնդել և մեծացնել ամեն տեսակ բանվորական լեգալ ընկերությունների հնարավորին չափ ավելի ճյուղավորված ցանցով շրջապատված անլեգալ բջիջների քանակը։*

*Այդ ժամանակ Ռուսաստանում գործող բոլոր քաղաքական պարտիաներից միայն բոլշևիկների պարտիան ուներ այնպիսի պլատֆորմ, որն ամբողջապես համապատասխանում էր բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի շահերին։*

*Կոնֆերենցիայում դրված էին միջազգային հարցեր։ Հատուկ բանաձևում նշվում էր չին ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի համաշխարհային նշանակությունը, մի պայքար, որը ազատություն էր բերում Ասիային և քայքայում եվրոպական բուրժուազիայի տիրապետությունը։ Կոնֆերենցիան նշավակեց անգլիական իմպերիալիզմի և ռուսական ցարիզմի հափշտակողական քաղաքա-*

*կանությունը Իրանում: Ողջույն ուղարկվեց գերմանական սոցիալ-դեմոկրատիայի՝ ռայխստագի ընտրություններում նրա տարած խոշոր հաղթանակի կապակցությամբ: Կոնֆերենցիայի այդ որոշումներում իրենց արտահայտությունը գտան պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները:*

*Լուրջ նշանակություն ուներ Կենտրոնական Կոմիտեի ընտրությունը կոնֆերենցիայի կողմից: Բանն այն էր, որ ՌՍԴԲՊ V համագումարի ընտրած Կենտրոնական Կոմիտեն մենշևիկների քայքայիչ գործունեության հետևանքով փաստորեն դադարել էր գոյություն ունենալուց: 1910 թվականի հունվարին կայացած պլենումից հետո Կենտկոմն այլևս չգումարվեց: ՌՍԴԲՊ-ն մնացել էր առանց պաշտոնական ղեկավար կենտրոնի:*

*Կոնֆերենցիան, որպես պարտիայի գերագույն օրգան, ընտրեց ՌՍԴԲՊ հեղինակավոր Կենտրոնական Կոմիտե Վ. Ի. Լենինի գլխավորությամբ: Կենտրոնական Կոմիտեում ընտրվեցին տեղական այնպիսի պարտիական աշխատողներ, որոնք կոփվել էին ռեակցիայի ծանր տարիներին և դրսևորել ռևոլյուցիոն արիություն ու կայունություն: Կենտկոմում ընտրվածների թվում էին՝ Ֆ. Ի. Գոլոշչյոկինը, Ս. Ս. Սպանդարյանը և Գ. Կ. Օրջոնիկիձեն: Կենտրոնական Կոմիտեն իր կազմում կոոպտացիայի ենթարկեց Ի. Վ. Ստալինին և ավելի ուշ՝ Յա. Մ. Սվերդլովին: Կենտկոմի անդամության թեկնածուներ հաստատվեցին՝ Ա. Ս. Բուբնովը, Մ. Ի. Կալինինը, Ս. Գ. Շահումյանը, Ե. Դ. Ստասովան:*

*ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերենցիան աչքի ընկնող դեր խաղաց բոլշևիկների պարտիայի՝ նոր տիպի պարտիայի կառուցման գործում: Կոնֆերենցիան* հանրագումարի *բերեց մենշևիկների դեմ բոլշևիկների պայքարի ամբողջ պատմական ժամանակաշրջանը,* ամրապնդեց *բոլշևիկների* հաղթանակը, *բոլշևիկների ձեռքում պահեց ՌՍԴԲՊ դրոշը: ՌՍԴԲՊ-ում և նրա ղեկավարությունում, Կենտրոնական Կոմիտեում վերացվեց ֆրակցիոնությունը, որ բացառիկ նշանակություն ունեցավ պարտիայի զարգացման և ռևոլյուցիոն պայքարում նրա դերի ուժեղացման համար: Գնահատելով Պրագայի կոնֆերենցիայի որոշումները, Լենինը 1914 թվականին գրում էր.*

> *«1912 թվականից սկսած, արդեն երկու տարուց ավելի է, ինչ Ռուսաստանում ֆրակցիոնություն չկա կազմակերպված մարքսիստների մեջ, տակտիկայի մասին վեճեր չկան* միասնական *կազմակերպություններում,* միասնական կոնֆերենցիաներում *և համագումարներում:* Կա լիակատար *անջատվածություն պարտիայի, որը 1912 թվականի հունվարին ձևականորեն հայտարարեց, թե լիկվիդատորներն իր շարքերին չեն պատկանում, և լիկվիդատորների միջև»* (Երկեր, հատ. 20, էջ 407):

*Կոնֆերենցիան խոշոր նշանակություն ունեցավ պարտիայի կյանքում: Նրա որոշումների հիման վրա տեղերում համախմբվեցին պարտիական կազմակերպությունները: Կոնֆերենցիան ամրապնդեց պարտիան որպես համառուսաստանյան կազմակերպություն: Մաքրվելով օպորտունիստական բեռից, պարտիան կարողացավ գլխավորել մասսաների ռևոլյուցիոն պայքարի նոր հզոր վերելքը:*

*Պրագայի կոնֆերենցիայի արդյունքների մասին Լենինը 1912 թվականի սկզբին Գորկուն գրում էր.*

> *«Վերջապես հաջողվեց — հակառակ լիկվիդատորական սրիկաների*



> *վերածնել պարտիան և նրա Կենտրոնական Կոմիտեն: Հուսով եմ, Դուք այս առթիվ կուրախանաք մեզ հետ միասին»* (Երկեր, հատ. 35, էջ 1):

*Պրագայի կոնֆերենցիան կարևոր տեղ է գրավում նաև միջազգային բանվորական շարժման պատմության մեջ: II Ինտերնացիոնալի պարտիաները ավելի ու ավելի ակնհայտորեն էին վերասերվում: Միջազգային բանվորական շարժման մեջ օպորտունիստների դեմ ռևոլյուցիոներների մղած պայքարը սրվեց առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին: Այդ պայքարին եռանդուն կերպով մասնակցում էին ռուսական բոլշևիկները: II Ինտերնացիոնալի Շտուտգարտի (1907 թվական) և Կոպենհագենի (1910 թվական) կոնգրեսներում, Միջազգային սոցիալիստական բյուրոյի նիստերում, մամուլում Լենինը վճռականորեն հանդես էր գալիս օպորտունիստների դեմ: Բոլշևիկները աջակցում էին ձախերին Գերմանիայում, Իտալիայում, Հոլանդիայում և այլ երկրներում, միջոցներ էին ձեռք առնում նրանց համախմբման ու միավորման համար:*

*Սակայն II Ինտերնացիոնալի պարտիաներում ռևոլյուցիոն տարրերը այն ժամանակ դեռևս չէին հասկանում օպորտունիզմի ամբողջ վտանգը, նրանք բավականաչափ հետևողականություն և վճռականություն չունեին բանվորական շարժման մեջ բուրժուազիայի գործակալների դեմ մղած պայքարում: Այդ պատճառով էլ մենշևիկների դեմ բոլշևիկների տարած հաղթանակը միջազգային նշանակություն ունեցավ: Մենշևիկներին վռնդելով պարտիայից, բոլշևիկները մյուս սոցիալ-դեմոկրատական պարտիաների բոլոր ռևոլյուցիոն տարրերին ցույց տվին, թե ինչպես պետք է անհաշտ պայքար մղել օպորտունիզմի դեմ, այդ պայքարը հասցնելով մինչև լիակատար կազմակերպական խզման:*

## 3. ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ «ՊՐԱՎԴԱ» ԹԵՐԹԸ: IV ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՅԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՖՐԱԿՑԻԱՆ

*Ռևոլյուցիոն վերելքի մոտենալու մասին Պրագայի կոնֆերենցիայի հայտարարությունը հաստատվեց արդեն երեք ամիս անց: Ազդակը հանդիսացավ Սիբիրում Լենայի ոսկու հանքերում տեղի ունեցած արյունահեղ դրաման:*

*Այդ ոսկու հանքատերերը անգլիացի կապիտալիստներն էին, նրանց կոմպանիոնները՝ ռուս կապիտալիստները, ցարի ազգականներն ու ցարական աստիճանավորները: Հանքատերերն ամեն տարի ստանում էին հսկայական շահույթ՝ մինչև 7 միլիոն ռուբլի: Կապիտալիստներն ու նրանց սպասավորները սիբիրյան խուլ տայգայում առանձնապես սանձարձակ էին՝ տաժանակիր աշխատանքի համար բանվորներին չնչին վարձ էին տալիս, նրանց կերակրում էին նեխած մթերքներով, ծաղր ու ծանակի էին ենթարկում նրանց կանանց ու աղջիկներին: Չդիմանալով այդ հրեշավոր ճնշումներին, Լենայի հանքերի բանվորները գործադուլ արեցին: Բանվորները իրենց պահում էին համերաշխ և կազմակերպված: Բայց նրանց բոլոր պահանջները լկտիաբար մերժվում էին: Նույնիսկ քաղաքավարի վերաբերմունքի պահանջը հանքատերերը գնահատում էին որպես «քաղաքական հանցագործություն»: 1912 թվականի ապրիլի 4-ին ժանդարմական սպայի հրամանով զորքերը գնդակոծեցին այն բանվորների խաղաղ բազմությունը, որոնք գնում էին ադմինիստրացիայի հետ բանակցելու: Սպանվեց և վիրավորվեց ավելի քան 500 բանվոր:*

*Գնդակահարության լուրը արագ տարածվեց ամբողջ երկրով մեկ, զայ*

*րույթ բորբոքելով բանվորների սրտերում։ Սկսվեցին մասսայական գործադուլներ, ցույցեր, միտինգներ։ Բոլշևիկյան «Զվեզդա» թերթը տալիս էր շարժումը ղեկավարող լոզունգներ։ Թերթը ճշմարտության պայծառ լույսով ցրեց այն պղտոր սափ մշուշը, որով բուրժուական մամուլը փորձում էր քողարկել ցարիզմի արյունոտ հանցագործությունը։ Այդ օրերին ոստիկանությունը բռնագրավում էր «Զվեզդա»-ի յուրաքանչյուր համար, բայց տիրաժի մի մասը բանվորներին էր հասնում։ Դումայում սոցիալ-դեմոկրատական ֆրակցիան ցարական կառավարությանն ուղղած հարցապնդում մտցրեց Լենայի գնդակահարության առթիվ։ Այդ հարցապնդմանը ցարական մինիստր Մակարովի տված լկտի պատասխանը, թե «Այդպես եղե՜լ է և այդպես էլ կլինի՜ այսուհետև» ուժեղացրեց բանվորների զայրույթը։ Լենայի գնդակահարության դեմ ուղղված բողոքի գործադուլներին մասնակցեց մոտ 300 հազար բանվոր։ Դրան անմիջապես հետևած մայիսմեկյան գործադուլներն ընդգրկեցին մոտ 400 հազար բանվոր։ 1912 թվականի ռևոլյուցիոն վերելքը, ինչպես նշում էր Լենինը, գործադուլային շարժման չափերով 1905 թվականի վերելքից պակաս չէր։*

*Լենայի օրերին ամբողջ ուժով երևաց լեգալ թերթի նշանակությունը բանվոր դասակարգի համար։ «Զվեզդա»-ն առաջավոր բանվորների համար նախատեսված շաբաթաթերթ էր։ Պարտիային հարկավոր էր օրաթերթ, բանվորական ամենալայն մասսաների համար։ Եվ բանվորները ջերմորեն արձագանքեցին բոլշևիկների կոչին՝ իրենց աշխատանքային կոպեկներով օգնելու այդպիսի թերթ ստեղծելու գործին։*

*1912 թվականի ապրիլի 22-ին (մայիսի 5-ին) Պետերբուրգում լույս տեսավ բոլշևիկյան «Պրավդա» թերթի առաջին համարը։ Դա ամենօրյա մասսայական մարքսիստական բանվորական թերթ էր Ռուսաստանում։ 1914 թվականից սկսած, այդ թերթի լույսընծայման օրը՝ մայիսի 5-ը, դարձավ բանվորական մամուլի տոն։*

*«Պրավդա»-ն պարտիայի համառուսաստանյան լեգալ օրգանն էր, որը հսկայական դեր խաղաց բանվոր դասակարգի կյանքում։*

*Բանվորական շարժման սկսված վերելքի և «Պրավդա»-ի լույս տեսնելու կապակցությամբ Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն Լենինի գլխավորությամբ տեղափոխվեց Կրակով, Ռուսաստանին ավելի մոտ։ «Պրավդա»-ն նոր տիպի բանվորական լեգալ թերթ էր։ Այդպիսի թերթ ստեղծելը հեշտ գործ չէր։ Լենինը բացառիկ մեծ ուշադրություն էր դարձնում «Պրավդա»-ին։ Նա ձգտում էր, որ թերթը խմբագրվի մարտական, ռևոլյուցիոն ոգով, խիստ քննադատում էր թերթն այն դեպքում, երբ տպագրված հոդվածները բավականաչափ պարզություն և բավականաչափ սկզբունքայնություն չէին ունենում։ Նախառևոլյուցիոն «Պրավդա»-ի գոյության ժամանակամիջոցում Լենինը նրանում հրապարակեց 250-ից ավելի հոդվածներ, որոնք ուղղություն էին տալիս պարտիայի աշխատանքին, նրա քաղաքական գծին։ Տարբեր ժամանակներում թերթի խմբագրության անդամներ և ակտիվ աշխատակիցներ են եղել Ն. Ն. Բատուրինը, Դ. Բեդնին, Կ. Ս. Երեմեևը, Ն. Կ. Կրուպսկայան, Վ. Մ. Մոլոտովը, Ն. Ի. Պոդվոյսկին, Ն. Գ. Պոլետաևը, Կ. Ն. Սամոյլովան, Յա. Մ. Սվերդլովը, Ն. Ա. Սկրիպնիկը, Ի. Վ. Ստալինը, Մ. Ս. Օլմինսկին։ «Պրավդա»-ին մասնակցում էին պարտիայի բոլոր լավագույն ուժերը։*

*Բոլշևիկյան «Պրավդա»-ն պարտիային մշտապես կապում էր բանվորա-*



*կան լայն մասսաների հետ։ Թերթի յուրաքանչյուր համարում զետեղվում էին տասնյակ բանվորական թղթակցություններ։ Դրանցում նկարագրվում էր բանվորի ծանր, մռայլ կյանքը, կոնկրետ փաստեր էին բերվում ոստիկանական կամայականության և ձեռնարկատերերի կողմից գործադրվող ճնշումների վերաբերյալ։ Այդ թղթակցությունները ահեղ մեղադրական ակտեր էին ցարական իրավակարգի և կապիտալիստական կարգերի դեմ։ Ավելի քան երկու տարվա ընթացքում «Պրավդա»-ում զետեղվեցին 17 հազարից ավելի բանվորական թղթակցություններ։ Թերթի շուրջը ստեղծվեց բանվոր թղթակիցների՝ մասսաների մեջ լենինյան գաղափարների ու բոլշևիկյան լոզունգների տոկուն և քաջարի տարածողների բազմահազարանոց մի բանակ։*

*Հատկապես մեծ էր «Պրավդա»-ի դերը բանվոր դասակարգի գործադուլային պայքարը կազմակերպելու գործում։ Թերթի յուրաքանչյուր համարում հաղորդվում էր այս կամ այն ձեռնարկությունում տեղի ունեցող գործադուլի մասին։ «Պրավդա»-ում մոտ 10 հազար թղթակցություններ զետեղվեցին գործադուլների մասին։ Գործադուլների վերաբերյալ ամենօրյա հաշվետվությունները իսկական ամփոփագրեր էին կապիտալի դեմ աշխատանքի մղած պայքարի ռազմաճակատից։ Այդ ամփոփագրերը ավելի ամուր էին համախմբում բանվորներին և ոգևորում նրանց՝ դասակարգային պայքարն ուժեղացնելու համար։ «Պրավդա»-ն ձևակերպում էր բանվորների պահանջները, կազմակերպում էր մյուս ձեռնարկությունների ու քաղաքների բանվորների օժանդակությունը գործադուլավորներին, պայքարի էր ներգրավում բանվորների նորանոր խավեր։ «Պրավդա»-ն բանվորական մասսաների մեջ դաստիարակում էր դասակարգային համերաշխության զգացմունք։ Նա մարտնչող պրոլետարիատի ոգին էր։*

*Հսկայական էր «Պրավդա»-ի հեղինակությունը բանվոր դասակարգի մեջ։ Հանձին նրա բանվորները տեսնում էին իրենց հարազատ թերթը, իրենց շահերի կայուն պաշտպանին։ Ռուսաստանի բոլոր կողմերից «Պրավդա»-ին էին հղվում ջերմ սիրո, սրտագին շնորհակալության և անձնվեր աջակցության խոսքեր։ «Պրավդա»-ն տարածվում էր մոտ 40 հազար օրինակ քանակով։ Մինչդեռ լիկվիդատորական «Լուչ» թերթը հազիվ 16 հազար օրինակի էր հասնում։ Բանվորական մամուլի օգտին կատարվող բոլոր բանվորական խմբային հանգանակությունների չորս հինգերորդը գնում էր բոլշևիկյան թերթին։ Ռուսաստանի 684 բնակավայրերում կային «Պրավդա»-ի բաժանորդներ, մասսաների մեջ նրա գաղափարների պրոպագանդիստներ։*

*«Պրավդա»-ն զգալի ուշադրություն էր հատկացնում գյուղացիությանը։ Թերթն ուներ «Գյուղացիական կյանք» հատուկ բաժին։ Թերթում գյուղացիական թղթակցություններ էին զետեղում եվրոպական գրեթե բոլոր և սիբիրյան չատ նահանգներից։ Այդ թղթակցություններում գյուղացիները պարզ ու անպաճույճ լեզվով գրում էին իրենց անսահման կարիքների մասին, կալվածատիրական ճնշման և կուլակային սարկացման մասին։*

*«Պրավդա»-ում հրապարակվեցին Լենինի մի քանի տասնյակ հոդվածներ գյուղացիական կյանքի ամենատարբեր կողմերի մասին։ Գյուղացիների դրության մոտավոր պատկերը, գրում էր Լենինը, այսպիսին է. 2 հազար դեսյատինից ավելի հող ունեցող մեկ կալվածատիրոջ շուրջը ապրում են մոտ 300 գյուղացիական ընտանիքներ, որոնք իրենց վատ և ուժասպառ հողը մշակում են հին պապենական եղանակներով։ Այդ խոշոր կալվածատիրական հողատի-*

րության մեջ էր գյուղացիների աղքատության և գյուղացիների սովահարությունների արմատը: «Պրավդա»-ն գյուղացիներին ցույց էր տալիս, որ սովորակությունից դուրս գալու միակ ելքը ցարի և ճորտատեր-կալվածատերերի դեմ մղվող պայքարն է բանվոր դասակարգի ղեկավարությամբ:

Պարտիայի կազմակերպական աշխատանքի զգալի մասը կենտրոնացած էր «Պրավդա»-ի խմբագրությունում: Այստեղ կազմակերպվում էին հանդիպումներ տեղական պարտիական բջիջների ներկայացուցիչների հետ, այստեղ էին ստացվում ֆաբրիկաներում ու գործարաններում կատարվող պարտիական աշխատանքի վերաբերյալ տեղեկությունները, այստեղից էին տրվում պարտիայի Պետերբուրգի կոմիտեի և Կենտրոնական Կոմիտեի պարտիական դիրեկտիվները: «Պրավդա»-ն աջակցում էր պարտիական նոր կազմակերպությունների ստեղծմանը ձեռնարկություններում:

Ցարիզմը տեսնում էր, թե ռևոլյուցիոն ինչ ահեղ ուժ է ներկայացնում իրենից «Պրավդա»-ն և ամեն տեսակ միջոցներով փորձում էր վերջ տալ նրա գոյությանը: Բայց բանվորները տոկուն կերպով պաշտպանում էին իրենց թերթը: Երբ թերթը բռնագրավման էր ենթարկվում, սովորաբար ցարական ոստիկանության ձեռքն էր ընկնում տիրաժի մի մասը միայն. թերթը վաղօրոք բաժանվում էր բանվորական շրջաններում: Թերթի վրա դրվում էին հսկայական տուգանքներ, բայց բանվորները կոպեկ առ կոպեկ հավաքում էին անհրաժեշտ գումարները: Այն ժամանակ ցարական իշխանությունները փակում էին «Պրավդա»-ն: Թերթը ութ անգամ փակվեց, բայց այն կրկին լույս էր տեսնում ուրիշ անուններով՝ «Ռաբոչայա պրավդա», «Սևերնայա պրավդա», «Պրավդա տրուդա», «Զա պրավդու», «Պրոլետարսկայա պրավդա», «Պուտ պրավդի», «Ռաբոչի», «Տրուդովայա պրավդա»: Այսպես էր յուրաքանչյուր անգամ վերածնվում բոլշևիկյան «Պրավդա»-ն և բանվորական թաղամասերում կրկին հնչում էր նրա մարտակոչը:

«Պրավդա»-ն իսկական բանվորական թերթ էր: Բոլշևիկները միայն բանվորների աջակցությամբ կարող էին կենսագործել իրենց համարձակ պլանը՝ սևհարյուրյակային ոստիկանական ռեժիմի պայմաններում հրատարակել լեգալ օրաթերթ, որը անլեգալ պարտիայի օրգան էր և որը բանվորական մասսաներին դաստիարակում էր հետևողական ռևոլյուցիոն ոգով:

Բացառիկ մեծ է «Պրավդա»-ի նշանակությունը բոլշևիկների պարտիայի և ռևոլյուցիայի պատմության մեջ: Այն ժամանակ բոլշևիկներին անվանում էին պրավդիստներ: «Պրավդա»-ն վճռական պայքար էր մղում օպորտունիստների, բանվորական շարժման մեջ բուրժուազիայի գործակալների դեմ, մերկացնում էր նրանց դավաճանական դերը, բանվորներին դաստիարակում էր ռևոլյուցիոն մարքսիզմի ոգով: Նա կոփել է ռևոլյուցիոն բանվորների մի ամբողջ սերունդ, ռևոլյուցիայի, բանվոր դասակարգի գործի, ժողովրդի շահերի համար պայքարող հարյուր հազարավոր առաջավոր և անձնուրաց մարտիկներ: «Պրավդա»-ն նպաստում էր պարտիայի զգալի աճմանը, նրա շարքերի համախմբմանը, մասսաների հետ նրա կապերի ամրապնդմանը:

Պարտիայի մյուս համառուսաստանյան լեգալ օրգանը IV Պետական դումայի բոլշևիկյան ֆրակցիան էր:

Դումայի ընտրությունները տեղի ունեցան 1912 թվականի աշնանը, բանվորների համար շատ դժվարին իրադրության մեջ: Ոստիկանությունը կատաղաբար հետապնդում էր առաջավոր բանվորներին, ամենաանամոթ կեղծիք-



ների էր դիմում, որ բանվոր դասակարգին զրկի դումայում ներկայացուցչություն ունենալուց: Սևհարյուրյակայիններն ու լիբերալները հաճախ միավորվում էին սոցիալ-դեմոկրատական թեկնածուի դեմ: Լիկվիդատորները ձգնում էին պառակտել պրոլետարիատի շարքերը:

Ընտրական օրենքը բանվորական կուրիայից դեպուտատի ընտրությունն ապահովում էր միայն վեց արդյունաբերական նահանգներում՝ Պետերբուրգի, Մոսկվայի, Վլադիմիրի, Կոստրոմայի, Եկատերինոսլավի և Խարկովի նահանգներում: Ընտրությունների մեխանիկան հետևյալն էր. բանվորները ժողովներում ընտրում էին լիազորներ, իսկ վերջիններս՝ պատվիրակներ, որոնք նախատեսում էին բանվորական կուրիայի թեկնածուին: Բայց դեպուտատի ընտրությունը կատարվում էր նահանգային ընտրական ժողովի ամբողջ կազմի կողմից, ուր իշխում էին կալվածատերերն ու կապիտալիստները: Պարտիայի ներկայացուցչի ընտրությունը ապահովելու համար անհրաժեշտ էր միայն մեկ թեկնածու առաջադրել բանվորական կուրիայից: Մի փախստակ կարող էր ամեն ինչ ձախողել, որովհետև սևհարյուրյակայինները այն ժամանակ հենց նրան էլ կընտրեին՝ հակառակ բանվոր-պատվիրակների մեծամասնության: Ուստի բանվորներից ընտրված լիազորների ժողովներում բոլշևիկները ձգտում էին անցկացնել այնպիսի որոշում, որը յուրաքանչյուր պատվիրակի պարտադրում էր հանել իր թեկնածությունը հօգուտ պարտիական թեկնածուի:

Ձնայած ոստիկանական արգելքներին, պարտիան մասսաների մեջ քաղաքական աշխատանք ծավալեց ծրագիր-մինիմումի հիմնական պահանջների շուրջը, դրանք կապելով սոցիալիզմի համար մղվող պայքարի խնդիրների հետ: Բոլշևիկների դիրքը շարադրված էր Լենինի գրած ընտրական պլատֆորմում: Լենինյան պլատֆորմի հիման վրա տեղական կոմիտեները կազմում էին բանվորների նակազներ իրենց դեպուտատին: «Պրավդա»-ն բանվորներին կոչ էր անում քվեարկել հետևողական և կայուն բանվոր-դեմոկրատների, այսինքն՝ բոլշևիկների օգտին: «Պրավդա»-ն մերկացնում էր կադետներին, նշավակում լիկվիդատորներին:

Ցարական կառավարությունը տագնապով հետևում էր բոլշևիկների հաջողություններին ընտրական կամպանիայում: Նա փորձում էր բանվորների պայքարի կամքը կոտրել նախ և առաջ կենտրոնում և բեկանեց լիազորների ընտրությունները Պետերբուրգի բազմաթիվ խոշոր գործարաններում: Այդ ժամանակ բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեի կոչով գործադուլ արին 100 հազար բանվորներ, և ցարիզմը հարկադրված եղավ նահանջել՝ ոչ միայն վերացնել իր որոշումը, այլև ընդարձակել ընտրություններին մասնակցող ձեռնարկությունների ցուցակը: Պետերբուրգում տարած հաղթանակը քաջալերեց նաև ուրիշ վայրերի բանվորներին:

Արդյունքը եղավ այն, որ բոլոր վեց նահանգներից դեպուտատներ ընտրվեցին բոլշևիկները: Այդ փայլուն հաղթանակը պերճախոս կերպով ասում էր այն մասին, որ բանվոր դասակարգի մեծամասնությունը ընթանում էր բոլշևիկների պարտիայի հետևից:

Դումայում ընտրվեցին Ա. Ե. Բադաևը, Մ. Կ. Մուրանովը, Ն. Ռ. Շագովը, Գ. Ի. Պետրովսկին, Ֆ. Ն. Սամոյլովը, Ռ. Վ. Մալինովսկին (որը, ինչպես հետագայում պարզվեց, պրովոկատոր էր): Նրանք ընտրվեցին հիմնական արդյունաբերական նահանգներից, որտեղ կենտրոնացած էր պրոլետարիատի

չորս հինգերորդը։ Բացի բոլշևիկներից, դումայում կային յոթ մենշևիկներ, որոնք ընտրվել էին ոչ-արդյունաբերական նահանգներից։

Ցարական դումայում բոլշևիկ-դեպուտատները համարձակորեն պաշտպանում էին պարտիայի տեսակետը ժողովրդական կյանքի ամենացավոտ հարցերի վերաբերյալ։ Նրանք ասում էին ճշմարտությունը բանվորների ծանր դրության, գյուղացիների կարիքների, ազգային ճնշման, ազատ դպրոցի հարցում աշխատավորների հրամայական պահանջմունքի մասին, այն մասին, որ ցարական կառավարությունը ավելի արագ կերպով իմպերիալիստական պատերազմի է նախապատրաստվում։

Հարցապնդումները բոլշևիկների ձեռքում IV դումայում է՛լ ավելի սուր զենք դարձան, քան III դումայում էր։ Ըստ կանոնադրության, հարցապնդման համար պահանջվում էր առնվազն 30 ստորագրություն, և սովորաբար սոցիալ-դեմոկրատներին միանում էին տրուդովիկները և այլ խմբերից առանձին առաջադեմ դեպուտատներ։ Հարցապնդման համար վերցնում էին որևէ կոնկրետ փաստ՝ արհմիության փակում, բանվորական թերթի հետապնդում, աղետ հանքում, պայթյուն գործարանում, գործադուլավորների ձերբակալություն, ստրաժնիկների կողմից գյուղացու սպանություն և այլն։ Այդ ամենը բոլշևիկ-դեպուտատներին հնարավորություն էր տալիս նկարագրել ոստիկանական կամայականության և աշխատավորների հրեշավոր շահագործման պատկերը։ Բանվոր-դեպուտատների ձայնը հասնում էր մասսաներին և նրանց մեջ ատելություն առաջացնում դեպի ցարիզմը, կալվածատերերն ու կապիտալիստները։

Դումայում բանվոր դասակարգի ներկայացուցիչները նախապատրաստեցին երեք օրինագիծ՝ ութժամյա աշխատանքային օրվա մասին, սոցիալական ապահովագրության մասին, ազգային իրավահավասարության մասին։ Այդ օրինագծերը հրապարակվեցին «Պրավդա»-ում։

Բոլշևիկ դեպուտատները չէին սահմանափակվում միայն դումայական գործունեությամբ։ Նրանք մեծ աշխատանք էին տանում դումայից դուրս՝ շրջագայում էին արդյունաբերական շրջաններում, լինում էին ֆաբրիկաներում ու գործարաններում, իրենց աշխատանքի մասին հաշվետվություններով հանդես էին գալիս բանվորական ժողովներում, զրուցում էին բանվորների հետ, աշխատակցում էին «Պրավդա»-ին։ Նրանք կազմակերպում էին մյուս ձեռնարկությունների բանվորների օգնությունը գործադուլավորներին։ Դեպուտատները ակտիվորեն մասնակցում էին իրենց անլեգալ պարտիայի կյանքին, հանդես էին գալիս ընդհատակյա պարտիական ժողովներում, օգնում էին տեղական պարտիական կազմակերպություններին նրանց աշխատանքում, կատարում էին Կենտրոնական Կոմիտեի զանազան հանձնարարությունները։

Բոլշևիկների այդ փոքրիկ խումբը հալածվում էր դումայում։ Նրանց մերկացնող սուր ճառերը շարունակ ընդհատվում էին մոլեգնող սևհարյուրյակայինների կողմից։ Նախագահը հաճախ նրանց զրկում էր խոսքից։ Իր քաջարի վարքագծով ֆրակցիան խոր վստահություն և բարձր հեղինակություն էր նվաճել բանվոր դասակարգի մեջ։ Բոլշևիկյան ֆրակցիան աչքի ընկնող դեր էր խաղում երկրի քաղաքական կյանքում։ Հանձին բանվոր դասակարգի դեպուտատի, իրենց իսկական պաշտպանին էին տեսնում նաև գյուղացիական մասսաներն ու ճնշված ազգությունները։ «Մենք, Կազինո գյուղի մի խումբ գյուղացիներս բանվորական թերթերից ծանոթանալով Պետական դումայում տի-



րող դրությանը, գտնում ենք, որ միայն 6 բանվոր-դեպուտատներն են կանգնած իրենց կոչման բարձրության վրա և միայն նրանք են տոկունությամբ ու հետևողականորեն պաշտպանում բոլոր աշխատավոր մասսաների շահերը. սրտանց հաջողություն ենք ցանկանում ձեր դժվարին աշխատանքում։ Մենք ձեզ հետ ենք»,— գրում էին մի խումբ գյուղացիներ, և դա մասսաների ձայնն էր։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ուղղություն էր տալիս ֆրակցիայի գործունեությանը։ Դեպուտատները հաճախ գնում էին Լենինի մոտ, խորհրդակցում նրա հետ։ Լենինը գրել է շատ ճառերի նախագծեր, որոնք դումայի ամբիոնից արտասանել են բոլշևիկ դեպուտատները։ Պարտիայի ղեկավարությամբ, մասսաների հետ սերտ շփման մեջ, միացնելով լեգալ և անլեգալ աշխատանքը, դաստիարակվում էր պառլամենտական ռևոլյուցիոն գործչի՝ բանվոր դասակարգի իսկական ներկայացուցչի նոր տիպ։

«Պրավդա»-ն, բոլշևիկ դեպուտատները, անլեգալ պարտիական կազմակերպությունները սերտորեն կապված էին միմյանց հետ։ 1912 թվականի դեկտեմբերին ֆրակցիան հարցապնդում մտցրեց արհեստակցական միությունների հալածանքների ենթարկելու վերաբերյալ։ «Պրավդա»-ն և Պետերբուրգի կոմիտեն կազմակերպեցին բանվորների հասարակական կարծիքը պրոլետարիատի դրության վերաբերյալ այդ առաջին հարցապնդման շուրջը։ Թերթում հաղորդագրություններ տպագրվեցին արհմիությունների հալածանքների մասին։ Պետերբուրգի կոմիտեն մի անլեգալ թռուցիկում բանվորներին կոչ էր անում հարցապնդումը պաշտպանել մեկօրյա գործադուլով։ Եվ այն պահին, երբ դումայում Բադաևը մերկացնում էր ցարական իշխանությունների գործողությունները, մի շարք խոշոր գործարանների ու ֆաբրիկաների բանվորներ դադարեցրին աշխատանքը, համերաշխորեն պաշտպանելով իրենց դեպուտատին։

1914 թվականի մարտին բանվորուհիների մասսայական թունավորումներ տեղի ունեցան Ռիգայի «Պրովոդնիկ» ֆաբրիկայում և Պետերբուրգի «Տրեուգոլնիկ» ֆաբրիկայում։ Պետերբուրգի կոմիտեն մասսաների մեջ տարածեց ընդհատակյա պրոկլամացիա, կոչ անելով բողոքի գործադուլ անել։ «Պրավդա»-ն բազմաթիվ նյութեր զետեղեց բանվորուհիների հրեշավոր շահագործման մասին։ Բոլշևիկյան ֆրակցիան հարցապնդում մտցրեց։ Դումայում ելույթ ունեցավ մի բոլշևիկ դեպուտատ։ Բանվորուհիների նկատմամբ գազանային ծաղր ու ծանակի դեմ ուղղված բողոքի գործադուլներին մասնակցեցին մոտ 120 հազար մարդ։

Այսպես բոլշևիկները «Պրավդա»-ի գործունեությունը և դումայի դեպուտատների գործունեությունը հմտորեն միացնում էին պարտիայի անլեգալ աշխատանքի հետ։

## 4. ՊԱՐՏԻԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՊԱՅՔԱՐԻ ՂԵԿԱՎԱՐ

Բանվորական շարժումը շարունակում էր մեծ թափով զարգանալ։ 1912 թվականին գործադուլ արին մեկ միլիոնից ավելի, իսկ 1913 թվականին՝ մեկ միլիոն 272 հազար բանվոր։ Տնտեսական և քաղաքական պայքարի միահյուսումը առաջ բերեց մասսայական ռևոլյուցիոն գործադուլ։ Բանվոր դասակարգը հարձակման անցավ կապիտալիստների և ցարական միապետության դեմ։

Գործադուլները համաժողովրդական նշանակություն ունեին: Նրանք արթնացնում, պայքարի էին հանում լայն մասսաներին: 1910—1914 թվականների ընթացքում տեղի ունեցան 13 հազարից ավելի գյուղացիական ելույթներ: Գյուղացիները ոչնչացնում էին կալվածատերերի կալվածքները և կուլակների խուտորները, վերցնում էին հացը, անասունները, ինվենտարը: Դժգոհության պոռթկումներ սկսվեցին ցարական բանակում: 1912 թվականի հուլիսին Թուրքեստանում տեղի ունեցավ սակրավորների զինված ապստամբություն, իսկ 1913 թվականի հունվարին Կիևում տեղի ունեցան հուզումներ զինվորների մեջ: Ապստամբություն էր հասունանում Բալթիական և Սևծովյան նավատորմում:

Ռուսաստանը թևակոխեց նոր ռևոլյուցիայի աճման ժամանակաշրջանը:

Մասսաների ռևոլյուցիոն պայքարի զարգացումը ամբողջապես հաստատեց Պրագայի կոնֆերենցիայի գիծը: Անհրաժեշտ էր ամփոփել պարտիայի աշխատանքի փորձը նոր պայմաններում և նշել հերթական խնդիրները ռևոլյուցիայի նախապատրաստման գործում: Այդ խնդիրը կատարեցին Կենտրոնական Կոմիտեի՝ պարտիական աշխատողների հետ կայացած երկու խորհրդակցությունները. դրանցից մեկը տեղի ունեցավ Կրակովում, 1912 թվականի դեկտեմբերին, մյուսը՝ Պորոնին բնակավայրում (Կրակովից ոչ հեռու), 1913 թվականի սեպտեմբերին: Խորհրդակցություններին մասնակցում էին Պետական դումայի բոլշևիկ դեպուտատները և Պետերբուրգի, Մոսկվայի, Կենտրոնական-արդյունաբերական շրջանի, Ուկրաինայի, Ուրալի, Կովկասի պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչները: Լենինի ղեկավարությամբ խորհրդակցությունները որոշումներ ընդունեցին պարտիայի գործունեության կարևորագույն հարցերի վերաբերյալ: Խորհրդակցություններն ընդգծեցին, որ պարտիական կազմակերպությունները, զուգակցելով անլեգալ և լեգալ աշխատանքը, պետք է զարգացնեն և կազմակերպեն մասսաների ամեն տեսակ ռևոլյուցիոն ելույթներ, առանձնապես ռևոլյուցիոն մասսայական գործադուլներն ու փողոցային ցույցերը, գյուղացիներին ներգրավեն բանվորների հետ հնարավորին չափ ավելի համերաշխ և միաժամանակյա լայն ռևոլյուցիոն ելույթների մեջ:

Կազմակերպական շինարարության միակ ճիշտ տիպ ճանաչվեց անլեգալ պարտիան, որպես լեգալ և կիսալեգալ բանվորական ընկերությունների ցանցով շրջապատված անլեգալ բջիջների մի ամբողջություն: Նախատեսվում էր բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում ստեղծել պարտիական կոմիտեներ առավել ակտիվ բանվորներից: Բոլոր լեգալ բանվորական ընկերություններում պետք է ստեղծվեին խիստ պարտիական ոգով աշխատող պարտիական խմբեր:

Պորոնինի խորհրդակցության վերաբերյալ ծանուցման մեջ Կենտրոնական Կոմիտեն, դիմելով պարտիական կազմակերպություններին, գրում էր.

«Ուղին նշված է: Պարտիան գրել է աշխատանքի հիմնական ձևերը անցման այժմյան ժամանակաշրջանում: Հին ռևոլյուցիոն դրոշին հավատարիմ մնալը փորձված ու ապացուցված է նոր իրադրության մեջ և աշխատանքի նոր պայմաններում: Ամենադժվար ժամանակը, ընկերներ, արդեն անցել է: Գալիս են նոր ժամանակներ: Մոտենում են մեծագույն կարևորություն ունեցող իրադարձություններ, որոնք կվճռեն մեր հայրենիքի բախտը:



Ուրեմն անցնե՛նք աշխատանքի» («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», մաս I, էջ 383):

Պրոլետարիատի պայքարի հաջողության պայմանը նրա շարքերի մարտական միասնությունն էր: Կենտկոմի Կրակովի խորհրդակցությունը, որպես պարտիայի հիմնական խնդիրներից մեկը, առաջ քաշեց բանվորական շարժման միասնության համար մղվող պայքարը, տալով ներքևից եկող միասնության լոզունգը, միասնություն, որն իրականացնում են իրենք՝ բանվորները, անլեգալ կազմակերպության և ռևոլյուցիոն տակտիկայի ճանաչման հիման վրա:

Ներքևից եկող միասնության լոզունգը համապատասխանում էր բանվորական լայն մասսաների տրամադրություններին: 1905 թվականի ռևոլյուցիայի փորձից բանվորները հասկացել էին պառակտման վնասը և, նոր ռևոլյուցիոն մարտերի ելնելով, ամբողջ սրությամբ դնում էին միասնության հարցը: Բոլշևիկներից լավ ոչ-ոք չէր հասկանում պրոլետարական բանակի միասնության մեծ սկզբունքի նշանակությունը: Այդ մասին Լենինը ամբողջ ուժով ասել է. «Անջատ բանվորները ոչինչ են: Միավորված բանվորները՝ ամեն ինչ» (Երկեր, հատ. 19, էջ 649): Պրոլետարիատի միասնության հիմքը դասակարգային շահերի և նպատակների ընդհանրության մեջ է, դասակարգային կարգապահության մեջ, մեծամասնության կամքը ճանաչելու մեջ: Պարզաբանելով բանվորական շարժման միասնության մարքսիստական ըմբռնումը, Լենինը գրում էր.

«Միասնությունն անհրաժեշտ է բանվոր դասակարգի համար: Միասնությունն իրագործում է միայն միանական կազմակերպությունը, որի որոշումները անցկացնում են բոլոր գիտակից բանվորները ոչ թե երկյուղից, այլ խղճի մտոք: Քննարկել հարցը, արտահայտել և լսել զանազան կարծիքներ, իմանալ կազմակերպված մարքսիստների մեծամասնության տեսակետը, այդ տեսակետն արտահայտել հետևյալ որոշմամբ, բարեխիղճ կատարել այդ որոշումը — ահա թե ինչն է միասնություն կոչվում աշխարհում ամենուրեք՝ բանականության տեր մարդկանց մոտ: Եվ այդպիսի միասնությունն է, որ անսահման թանկ, անսահման կարևոր է բանվոր դասակարգի համար» (Երկեր, հատ. 19, էջ 648—649):

Բանվոր դասակարգի միասնությունը նախ և առաջ նրա գաղափարական-քաղաքական միասնությունն է: Բանվորների միասնությունը անհնարին է առանց բանվորական կազմակերպությունների, առաջին հերթին առանց պրոլետարիատի քաղաքական կազմակերպության՝ պարտիայի միասնության: Այդ միասնությունը քայքայում էին լիկվիդատորներն ու տրոցկիստները, բայց իրենց պառակտիչ գործունեությունը նրանք քողարկում էին «միասնության» կեղծ լոզունգով: Հարկավոր էր մերկացնել նրանց խարդախ խաղը այդ մեծ լոզունգի հետ, անարգանքի սյունին գամել նրանց որպես միասնությունը կործանողների:

Լիկվիդատորները ավելի ու ավելի բացահայտորեն էին հանդես գալիս անլեգալ պարտիայի դեմ: Նրանք վատաբանում էին ռևոլյուցիոն «ընդհատակը» և ագիտացիա մղում «բացահայտ պարտիա» ստեղծելու համար: Նրանք վատաբանում էին բանվորների հերոսական գործադուլային պայքարը, դա անվանելով «գործադուլային ազարտ»: Նրանք ունեին իրենց թերթերը, նրանք

մի շարք վայրերում, մասնավորապես Պետերբուրգում, Մոսկվայում և Եկատերինոսլավում ունեին նաև իրենց կազմակերպությունները, այսպես կոչված՝ «նախաձեռնող խմբերը»։ Ոստիկանության թույլտվությամբ լիկվիդատորները փաստորեն ստեղծեցին իրենց առանձին պարտիան, թեև թույլ ձևավորված։ Նրանք դեռևս մնում էին զանազան լեգալ կազմակերպություններում և ամեն կերպ վնասում էին բանվորների գործողությունների միասնությանը։

Բանվորական շարժման միասնության համար լիկվիդատորների դեմ մղած պայքարում աչքի ընկնող նշանակություն ունեցավ բոլշևիկների կողմից ինքնուրույն ֆրակցիայի ստեղծումը դումայում։ Բանվոր դասակարգը, բնականաբար, գնահատում էր իր պառլամենտական ներկայացուցչության միասնությունը, և անհրաժեշտ էր մասսաներին բացատրել այն քայլի ճշտությունը, որ ձեռնարկել էին բոլշևիկները հանուն պրոլետարիատի շահերի։

Սկզբում բոլշևիկներն ու մենշևիկները դումայում կազմեցին ընդհանուր սոցիալ-դեմոկրատական ֆրակցիա։ Այդ ֆրակցիայում ծայրահեղորեն աննորմալ դրություն էր ստեղծվել։ Վեց բոլշևիկները ընտրվել էին արդյունաբերական նահանգներից, որտեղ մեկ միլիոնից ավելի բանվորներ կային, իսկ յոթ մենշևիկ-լիկվիդատորները՝ ոչ արդյունաբերական նահանգներից, որտեղ կար ընդամենը 136 հազար բանվոր։ Բայց օգտվելով մեկ ձայնի պատահական գերակշռությունից, լիկվիդատորները խախտում էին բոլշևիկյան դեպուտատների տարրական իրավունքները։ Ստացվում էր այնպես, որ բանվորների չնչին փոքրամասնությունը ներկայացնող դեպուտատ-լիկվիդատորները անտեսում էին բանվոր դասակարգի հսկայական մեծամասնության կամքը։ Պարտիան այդ հարցը հանձնեց բանվորների դատին։ Թերթերի էջերում, պարտիական կազմակերպություններում, բանվորական ժողովներում ծավալվեց կատաղի պայքար, որի հետևանքով գիտակից բանվորների երկու երրորդից ավելին արտահայտվեց հօգուտ բոլշևիկյան «վեցյակի»։ Իսկ երբ 1913 թվականի աշնանը կազմակերպվեց ինքնուրույն բոլշևիկյան ֆրակցիա, բանվորների մեծամասնությունը դրանից հետո կապվեց այդ ֆրակցիայի հետ, և ոչ թե լիկվիդատորական «յոթնյակի» հետ։ Դա բոլշևիկների խոշոր հաղթանակն էր։

Բոլշևիկները հաջողությամբ պայքարում էին, որ լեգալ կազմակերպություններում լիկվիդատորները «հանվեն պոստերից»։ Բոլշևիկներն իրենց կողմը գրավեցին արհեստակցական միությունները։ Պետերբուրգում բոլշևիկները ղեկավարում էին համարյա բոլոր արհմիություններին, լիկվիդատորների հետևից գնում էին միայն գրասենյակային ծառայողների, գծագրողների և դեղագործների միությունները։ Մոսկվայում բոլոր արհմիությունները բոլշևիկյան էին կամ հարում էին նրանց։ Խոշոր նշանակություն ունեցավ բոլշևիկների հաղթանակը Պետերբուրգի մետաղագործների միությունում։ Միության վարչությունն ընտրելիս 3 հազար մետաղագործներից հազիվ 150 մարդ քվեարկեց լիկվիդատորների օգտին։

Բոլշևիկները լուրջ հաղթանակ տարան նաև ապահովագրական կամպանիայում, այսինքն՝ հիվանդանոցային դրամարկղների ընտրությունների ժամանակ. դրամարկղներ, որոնք ստեղծվել էին բանվորների պետական ապահովագրության վերաբերյալ այն օրենքի համաձայն, որ ընդունել էր դուման բանվորների ճնշման տակ։ Բոլշևիկների և լիկվիդատորների միջև կատաղի պայքար ծավալվեց Համառուսաստանյան և Պետերբուրգի ապահովագրական



հիմնարկների ընտրություններում։ «Պրավդա»-ն հրապարակեց նակազ և թեկնածուների ցուցակը։ Բանվորների կողմից ընտրված լիազորների 80 տոկոսից ավելին պրավդիստներ էին։

Բանվոր դասակարգը համախմբվում էր բոլշևիկյան դրոշի ներքո։ Ընդհատակյա ռևոլյուցիոն պարտիայի դեմ ելույթները հաջողություն չունեին բանվորների մեջ, և բոլշևիզմի թշնամիները դիմեցին նոր մանևրի։ «Միավորման» դրոշի տակ Տրոցկին սկսեց մի բլոկ կազմակերպել բոլշևիզմի թշնամի զանազան խմբերից։ Քողարկվելով «արտաֆրակցիոնությամբ», տրոցկիստները ամենաանխիղճ կերպով խաբում էին բանվորներին, որով և դժվարացնում էին լիկվիդատորների մերկացումը։ Ուստի և նրանք ավելի վնասակար էին, քան բացահայտ լիկվիդատորները։

1912 թվականի օգոստոսին Տրոցկին հրավիրեց կոնֆերենցիա, որտեղ ձևավորեց հակաբոլշևիկյան բլոկ։ Բլոկի օպորտունիստական բնույթը պարզորոշ ցույց էր տալիս կոնֆերենցիայի ընդունած այն պլատֆորմը, որտեղ բացակայում էին թե՛ դեմոկրատական ռեսպուբլիկայի, թե՛ գյուղացիների օգտին կալվածատիրական հողերի բռնագրավման, թե՛ ազգերի ինքնորոշման իրավունքի պահանջները։ Ռուսաստանում ցենտրիստական, բայց ըստ էության լիկվիդատորական պարտիայի ստեղծման փորձը բանվորները չպաշտպանեցին։ Լեհական սոցիալ-դեմոկրատները և պլեխանովականները հրաժարվեցին մասնակցել այդ հակապարտիական բլոկին։ Վպերյոդականներն իսկույն դուրս եկան բլոկից, նրանց հետևեցին լատիշական սոցիալ-դեմոկրատները, այնուհետև ցրիվ եկան նաև մյուսները։ Բոլշևիկների հարվածների տակ օգոստոսյան բլոկը մեկից մեկ ու կես տարի անց փաստորեն արդեն քայքայվեց։

Լիկվիդատորական ստոլիպինյան «բանվորական պարտիան» քարշ էր տալիս իր խղճուկ գոյությունը, իսկ հակաբոլշևիկյան բլոկի տրոցկիստական հնարանքը վերջացավ լիակատար ձախողմամբ։ Դա բացատրվում էր նախ և առաջ նրանով, որ բոլշևիկները Լենինի գլխավորությամբ միշտ անխնա պայքար էին մղում օպորտունիզմի դեմ, բանվոր դասակարգին ցույց էին տալիս, թե նրա շահերին ինչպիսի վնաս են հասցնում օպորտունիստները, բանվոր դասակարգի մեջ թշնամանք էին դաստիարակում ամեն տեսակ օպորտունիստական աղտեղության նկատմամբ։ Ցարիզմի ոստիկանական կամայականության և կապիտալիստական կեղեքման դեմ համառ պայքարի երկար տարիները կոփեցին Ռուսաստանի պրոլետարիատին, նրա մեջ մշակեցին մարտական, ռևոլյուցիոն հիանալի հատկություններ։ Եվ երբ երկրում հասունացավ ռևոլյուցիոն ճգնաժամը, բանվորները նոր ռևոլյուցիայի ելան և վրդովմունքով երես թեքեցին լիկվիդատորներից ու նրանց տրոցկիստական ձայնակիցներից, որոնք կոչ էին անում հրաժարվել ռևոլյուցիոն պայքարից։ Դրա հետևանքով պրոլետարիատի ճնշող մեծամասնությունը, գիտակից բանվորների չորս հինգերորդը բոլշևիկները իրենց կողմը գրավեցին։ Բոլշևիկները բանվոր դասակարգի միասնության հասան նախ և առաջ այն պատճառով, որ պաշտպանեցին օպորտունիստներից մաքրված պարտիայի միասնությունը։

Վերելքի տարիներին սուր կերպով ծառացավ բանվորների շարժման ինտերնացիոնալ միասնության հարցը։ Բուրժուազիան ձգտում էր բանվոր դասակարգը պառակտել նաև ազգային տեսակետից։ Ճնշող ազգի բանվորների և ճնշված ազգերի բանվորների դասակարգային պայքարի միաձուլման խըն-

դիրը բազմազգ Ռուսաստանում ծայր աստիճան կարևոր նշանակություն ուներ։ Հետռևոլյուցիոն տարիների համար բնորոշ էին սևհարյուրյակային շովինիզմի մոլեգնումը և բոլոր ազգերի բուրժուազիայի մեջ նացիոնալիզմի աճումը։ Բանվորական շարժման մեջ ուժեղացան նացիոնալիստական տենդենցներ։ Լիկվիդատորներն ու տրոցկիստները խիստ հարձակումներ գործեցին պարտիայի ազգային ծրագրի վրա։ Այդ ամենը սպառնալիք էր ստեղծում բանվորական շարժման հետևողական դասակարգային բնույթի և մարտական միասնության համար։

Բնական է, որ ազգային հարցը աչքի ընկնող տեղ էր գրավում պարտիայի աշխատանքում։ Այդ հարցի մասին հատուկ որոշումներ ընդունեցին Կենտկոմի Կրակովի և Պորոնինի խորհրդակցությունները։ Լենինը «Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին» և «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին» հոդվածներում զարգացրեց և հիմնավորեց ազգային հարցի մարքսիստական ծրագիրը և պարտիայի ազգային քաղաքականությունը։ Մարքսիստական գրականության մեջ աչքի ընկնող տեղ գրավեց Ստալինի «Մարքսիզմը և ազգային հարցը» աշխատությունը։

Լենինը պարզաբանում էր, որ բուրժուական նացիոնալիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը երկու անհաշտելի թշնամական աշխարհայացքներ են։ Նացիոնալիստի համար ամենից բարձրը նեղ ազգային շահերն են, ինտերնացիոնալիստի համար՝ բանվորների միջազգային դասակարգային համերաշխությունը։

Ազգային հարցը լուծելիս պարտիան պետք է ելնի այն բանից, որ այդ հարցը ռևոլյուցիայի ընդհանուր հարցի մի մասն է։ Կապիտալիզմի դեմ մղվող պայքարում պրոլետարիատի շահերը պահանջում են բոլոր ազգերի բանվորների ամենասերտ միասնություն, նրանց միաձուլում միասնական պրոլետարական կազմակերպություններում։ Ամենաչնչին ազգային անհավասարության վերացման համար բանվոր դասակարգը պետք է հասնի ազգերի լիակատար իրավահավասարության, որովհետև միայն այդ հիման վրա է կոփվում ընկերական միասնությունը պրոլետարիատի դասակարգային պայքարում։ Ազգերի ինքնորոշման իրավունքի՝ որպես անջատման և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքի, ծրագրային լոզունգը հանդիսանում է հզոր զենք բանվորների ինտերնացիոնալ դաստիարակության և ճնշված ազգությունների աշխատավոր մասսաներին պրոլետարիատի շուրջը համախմբելու գործում։ Պարտիայի ազգային ծրագրի էությունը, գրում էր Լենինը, հանգում է հետևյալին. ազգերի լիակատար իրավահավասարություն, ազգերի ինքնորոշման իրավունք ընդհուպ մինչև անջատումը, բոլոր ազգերի բանվորների միաձուլում միասնական դասակարգային կազմակերպություններում։ «...ազգային այս ծրագիրն է ուսուցանում բանվորներին մարքսիզմը, ուսուցանում ամբողջ աշխարհի փորձը և Ռուսաստանի փորձը» (Երկեր, հատ. 20, էջ 569)։

Բոլշևիկների կողմից ազգային հարցի տեսության մշակումը ուժգին հարված հասցրեց նացիոնալիզմին։

Ազգային հարցի լենինյան ծրագիրն ուներ միջազգային նշանակություն։ Այն ուղղված էր II Ինտերնացիոնալի պարտիաների արատավոր տեսության և պրակտիկայի դեմ, որոնք քամահրում էին ճնշված ժողովուրդներին և ավելի ու ավելի էին սողում խոշոր իմպերիալիստական գիշատիչ տերությունների գաղութային քաղաքականության առաջ։



Ազգային ճնշման ամենաչնչին արտահայտությունների և նացիոնալիզմի բոլոր տեսակների դեմ անողոք պայքարում բոլշևիկները հասան Ռուսաստանի բոլոր ժողովուրդների բանվորների միասնության, նրանց համախմբեցին բանվորական շարժման հիմնական միջուկի և ղեկավար ուժի՝ ռուս բանվորների շուրջը։ Պարտիան իր շարքերն էր ներառնում բոլոր ազգությունների լավագույն զավակներին։ Բոլշևիկյան կազմակերպությունները երկրի տարբեր շրջաններում ռևոլյուցիոն աշխատանք էին տանում շատ ազգությունների աշխատավորների մեջ։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի օրինակ էր Անդրկովկասի պարտիական կազմակերպությունը։ Այստեղ միասնական կազմակերպություններում միավորվել էին տարբեր ազգերի բանվորներ՝ ռուսներ վրացիներ, հայեր, ադրբեջանցիներ։

Բոլշևիկները նկատելի հաջողություններ ունեին ազգային սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններում։ Լեհ մարքսիստները մասնակցեցին Պորոնինի խորհրդակցությանը, պաշտպանեցին բոլշևիկներին։ Լատիշական սոցիալ-դեմոկրատների համագումարը դատապարտեց լիկվիդատորներին։ Էստոնական և լիտվական մարքսիստները հրատարակում էին պրավդիստական ուղղության լեգալ թերթեր։

Բանվորական շարժման վերելքի հետ միասին աճում և ամրանում էր բանվոր դասակարգի պարտիան, բոլշևիկների պարտիան։ Անլեգալ գոյության դժվարին պայմաններում ռեակցիայի ծանր տարիներից հետո բոլշևիկները վերստեղծեցին մասսայական պարտիան, որն ուներ ամուր ղեկավարություն՝ հանձին Կենտրոնական Կոմիտեի, Կենտկոմի Ռուսական ու Արտասահմանյան բյուրոների, ուներ մեծ օրաթերթ և պառլամենտական ֆրակցիա, մի քանի մարզային և մի շարք քաղաքային կոմիտեներ, բջիջներ շատ ֆաբրիկաներում ու գործարաններում, պարտիական խմբեր բանվոր դասակարգի լեգալ կազմակերպություններում։ Կենտրոնական Կոմիտեն կապ էր պահպանում ավելի քան 80 կազմակերպությունների ու խմբերի հետ՝ Վլադիվոստոկից մինչև Վարշավա, Վոլոգդայից մինչև Տաշքենդ։ Կենտկոմը և տեղական պարտիական կազմակերպությունները երկրի կյանքում տեղի ունեցող բոլոր հիմնական իրադարձություններին արձագանքում էին թռուցիկներով։ Դրա հետ մեկտեղ պարտիան կարողացավ անընդհատ հետապնդումների պայմաններում «Պրավդա»-ին զուգընթաց հրատարակել «Պրոսվեշչենիե», «Վոպրոսի ստրախովանիա», «Ռաբոտնիցա» լեգալ ժուռնալները, բոլշևիկյան ոգով ղեկավարել մամուլի արհմիութենական մի շարք օրգաններ։

Բոլշևիկների պարտիան ղեկավարում էր պրոլետարիատի պայքարի բոլոր ձևերը։ Պարտիան պայքար կազմակերպեց բանվորների «մասնակի պահանջների» համար, պրոլետարիատի տնտեսական կարիքներն ու քաղաքական շահերը կապակցելով մի անբաժանելի ամբողջության մեջ։ Պարտիան բանվորներին սովորեցնում էր պատասխան տալ ցարիզմի կամայականության և հանցագործության ամեն մի խոշոր ակտի։

Պրոլետարիատի ռևոլյուցիոն-դասակարգային դաստիարակության գործում հատուկ տեղ էին գրավում մայովկաները, Հունվարի 9-ի և Լենայի գնդակահարության տարեդարձերը։ Նշելով պայքարի այդ հիշարժան տարեթվերը, պարտիան նախօրոք կազմակերպական-քաղաքական աշխատանք էր ծավալում մասսաների մեջ, բանվորներին կոչ անելով գործադուլներ ու ցույցեր անել այդ օրերին։ Իր հերթին ցարական կառավարությունը ձգտում էր

*խափանել բանվորների մասսայական ելույթների հնարավորությունը և ուժեղացնում էր ոստիկանական ռեպրեսիանները պարտիական կազմակերպությունների դեմ։ Բայց ցարական ոստիկանությունն անզոր էր խանգարելու բանվորական մասսաների համախմբմանը բոլշևիկյան կոչերի շուրջը։ 1913 թվականի հունվարի 9-ին գործադուլ արին մոտ 200 հազար բանվոր, իսկ 1914 թվականի հունվարի 9-ին՝ քառորդ միլիոն բանվորներ, մայովկաներին մասնակցեցին 1913 թվականին 420 հազար բանվոր, իսկ 1914 թվականին՝ կես միլիոնից ավելի բանվոր։*

*Ամենուրեք մասսայական գործադուլներում, փողոցային ցույցերում, գործարանների դարբասների մոտ կայացած միտինգներում բոլշևիկները խոսում էին ռևոլյուցիայի, որպես դրությունից դուրս գալու միակ ելքի մասին և առաջադրում էին ժողովրդի նվիրական իղձերն արտահայտող լոզունգներ՝ դեմոկրատական ռեսպուբլիկա, ութժամյա աշխատանքային օր, կալվածատիրական հողերի բռնագրավում գյուղացիների օգտին։ Բանվորների ռևոլյուցիոն գործադուլների և ռևոլյուցիոն պահանջների լուրը թափանցում էր և՛ գյուղացիական խրճիթը, և՛ զինվորների կազարման։ Բանվորների ռևոլյուցիոն պայքարից օրինակ էին վերցնում կալվածատիրական ստրկությունից հուսահատության հասած գյուղացիները և իրենց իրավազրկությունից վրդովված զինվորները։ Բանվոր դասակարգը հանդես էր գալիս որպես հեգեմոն, որը բարձրացրել էր ռևոլյուցիայի դրոշը, ժողովրդական մասսաներին լուսավորում և կազմակերպում էր ռևոլյուցիայի համար։*

*Բանվորական շարժման ալիքը ավելի ու ավելի էր բարձրանում։ 1914 թվականի առաջին կիսամյակում գործադուլ արին մոտ մեկ ու կես միլիոն բանվորներ։ Գործադուլները դարձան անընդհատ։ Հունվարի 9-ի տարեդարձի կապակցությամբ տեղի ունեցած գործադուլներից հետո գործադուլներ եղան Պետերբուրգի մի շարք ձեռնարկություններում՝ տեղի ունեցած մասսայական թունավորումների առթիվ։ Բաքվում մայովկայից հետո սկսվեց բանվորների ընդհանուր գործադուլ։ Նրանց քաջարի պայքարին աջակցելու ելան Պետերբուրգի, Մոսկվայի և այլ քաղաքների բանվորները։ Հուլիսի 3-ին ոստիկանությունը կրակ բացեց Պուտիլովի գործարանի բանվորների միտինգի վրա։ Արյունոտ դատաստանը ցասումնալի զայրույթ առաջացրեց ամբողջ երկրում։ Պետերբուրգի կոմիտեն մայրաքաղաքի պրոլետարներին գործադուլի կոչ արեց. հուլիսի 4-ին գործադուլ արին 90 հազար, 7-ին՝ 130 հազար, 11-ին՝ 200 հազար բանվորներ։ Սկսվեցին ցույցեր։ Բանվորները բողոքում էին ցարական իշխանությունների գործողությունների և վերահաս պատերազմի դեմ։ Գործադուլ արին Մոսկվայի բանվորները։ Բարիկադներ երևացին Պետերբուրգում, Բաքվում, Լոձում։*

*Ռուսաստանում առկա էր ռևոլյուցիոն ճգնաժամը։ Կալվածատերերն ու բուրժուազիան փոխադարձաբար կշտամբում էին միմյանց ռևոլյուցիոն հրդեհը մարելու անկարողության մեջ։ Սևհարյուրյակային թերթը «Բադաևին կախաղան հանել» պերճախոս վերնագիրը կրող մի ջարդարարական հոդվածում կոչ էր անում ֆիզիկական դատաստան տեսնել բանվորական շարժման գործիչների հետ։ Ցարական կառավարությունը «արտակարգ միջոցներ» ձեռք առավ։ Պետերբուրգը հիշեցնում էր ռազմական ճամբար։ Հուլիսի 8-ին «Պրավդա»-ն փակվեց։ Սկսվեցին բոլշևիկների մասսայական ձերբակալությունները։*

*Սկսված համաշխարհային պատերազմն ընդհատեց ռևոլյուցիայի վերելքը։*



## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին (1910—1914) բոլշևիկների պարտիան հանդես էր գալիս որպես խոշորագույն քաղաքական ուժ երկրի կյանքում։*

*Բանվորական շարժման բոլոր արմատական հարցերի շուրջը մենշևիկների դեմ բոլշևիկների անհաշտ պայքարը ավարտվեց Պրագայի կոնֆերենցիայում, որտեղ մենշևիկները՝ բանվորական գործի այդ դավաճանները, վռնդվեցին պարտիայից։ Պարտիայի կապերի լիակատար խզումը օպորտունիստներից մեծագույն նշանակություն ունեցավ Ռուսաստանում ինքնակալության ու կապիտալիզմի տապալման և միջազգային բանվորական շարժման հետագա բախտի համար։ Կոնֆերենցիան որոշեց պարտիայի քաղաքական գիծն ու տակտիկան ռևոլյուցիոն վերելքի նոր պայմաններում։*

*Ջախջախելով ամեն գույնի օպորտունիստներին՝ լիկվիդատորներին, տրոցկիստներին, նացիոնալ-ուկլոնիստներին, հմտորեն զուգակցելով անլեգալ և լեգալ աշխատանքը, բոլշևիկները նվաճեցին բանվոր դասակարգի մեծամասնությունը։ Դա պարտիայի պատմական հաղթանակն էր, պարտիա, որը հասել էր բանվորական շարժման միասնության։ Հաղթանակը ձեռք բերվեց բանվորական շարժումը բուրժուական ազդեցություններից մաքրելու վճռական պայքարի և պրոլետարիատի բոլոր ռևոլյուցիոն ուժերը հավաքելու ճիշտ քաղաքականության շնորհիվ։*

*Բոլշևիկյան «Պրավդա» թերթը բազմապատկեց ու ամրապնդեց պարտիայի կապերը բանվոր դասակարգի հետ։ Պարտիայի կողմից դաստիարակված առաջավոր բանվոր-պրավդիստների մի ամբողջ սերունդ հետագայում աչքի ընկնող դեր խաղաց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայում և սոցիալիզմի կառուցման գործում։ Վերելքի տարիներին բոլշևիկների պարտիան մասսաների ռևոլյուցիոն դաստիարակման համար վարպետորեն օգտագործեց լեգալ մամուլը և պառլամենտական տրիբունան։*

*Վերելքի տարիներին պարտիայի տեսական ու գործնական աշխատանքում աչքի ընկնող տեղ գրավեց ազգային հարցը։ Բանվորական շարժման մեջ նացիոնալիզմի պրոպագանդայի ուժեղացման պայմաններում բոլշևիկների պարտիան պրոլետարական ինտերնացիոնալիզմի օրինակ էր։ Ռուսաստանի ազգային շրջանների բոլշևիկյան կազմակերպությունները, ղեկավարվելով լենինյան ազգային ծրագրով, պայքար էին մղում նացիոնալիստական պարտիաների ու հոսանքների դեմ, մասսաներին դաստիարակում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Ազգային հարցի լենինյան ծրագիրը և պարտիայի ազգային քաղաքականությունը ճնշված ազգություններին համոզում էին, որ միայն բոլշևիկներն են նրանց շահերի և իրավունքների իսկական պաշտպանները։*

*Բոլշևիկների պարտիան տիրապետում և հմտորեն օգտագործում էր բանվորական շարժման պայքարի ու կազմակերպման բոլոր ձևերը։ Երկրում ռևոլյուցիոն ճգնաժամի հասունացման պայմաններում պարտիան ղեկավարում էր պրոլետարիատի մարտերը։ Բանվոր դասակարգը, բոլշևիկների գլխավորությամբ հանդես եկավ որպես համաժողովրդական ազատագրության համար մղվող ռևոլյուցիոն պայքարի ղեկավար։*

*Իր ամբողջ ռևոլյուցիոն, իսկական ինտերնացիոնալիստական քաղաքա-*

*կանությամբ բոլշևիկների պարտիան նախապատրաստված էր առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի մեծագույն փորձություններին։*

## ԳԼՈՒԽ VI

# ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

# ԵՐԿՐՈՐԴ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ

## (1914 թվական—1917 թվականի փետրվար)

### 1. ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ։ II ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ԿՐԱԽԸ։

*Համաշխարհային իմպերիալիստական պատերազմն սկսվեց 1914 թվականի հուլիսի 19-ին (օգոստոսի 1-ին)։ Պատերազմը իմպերիալիզմի զարգացման ամբողջ ընթացքի ծնունդն էր։*

*Իմպերիալիզմը, որպես կապիտալիզմի բարձրագույն և վերջինստադիա, բնութագրվում է մոնոպոլիաների՝ սինդիկատների, տրեստների, կապիտալիստ-միլիոնատերերի միությունների տիրապետությամբ։ Մի բուռ մոնոպոլիստների ձեռքում կուտակվել էին վիթխարի կապիտալներ։ Չբավականանալով ներքին շուկայի շահագործումով, կապիտալը ձգտում էր դեպի գաղութները, դեպի տնտեսապես թույլ զարգացած երկրները։ XX դարի սկզբներին ամբողջ երկրագունդը արդեն բաժանված էր մի քանի կապիտալիստական պետությունների միջև։*

*Բայց կապիտալիզմի ժամանակ չի եղել և չի կարող համաչափ զարգացում լինել։ Առանձին ձեռնարկություններ կամ արդյունաբերության ճյուղեր և ամբողջ երկրներ մերթ արագ առաջ են ընթանում, անցնելով ետ մնացողներից, մերթ իրենց տեղը զիջում են ավելի առաջադիմողներին։ Իմպերիալիզմի ժամանակ, երբ տիրապետում են վիթխարի մոնոպոլիաները, սրվում է ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական կյանքի զարգացման անհամաչափությունը։ Զարգացումն ավելի թռիչքաձև բնույթ է ընդունում։ Զարգացման անհամաչափությունը շարունակ խախտում է հավասարակշռությունը պետությունների միջև։ Փոփոխվում է տնտեսական և ռազմական ուժերի հարաբերակցությունը։ Առաջ նետված երկիրը ավելի շատ շուկաներ, ավելի շատ գաղութներ է պահանջում իր համար, որովհետև այն հասարակության մեջ, որի հիմքում ընկած է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, ամեն մի բաժանում տեղի է ունենում ըստ ուժի, ըստ կապիտալի։ Այն բանից հետո, երբ ամբողջ աշխարհը արդեն բաժանված է խոշորագույն պետությունների միջև, աշխարհի նոր վերաբաժանում տեղի ունենալ կարող է միայն ի հաշիվ այս կամ այն պետության, այսինքն՝ պատերազմի միջոցով։*

*Աշխարհի վերաբաժանման համար վաղուց պատերազմի էին պատրաստվում բոլոր իմպերիալիստները։ Բայց առանձնապես ռազմատենչորեն էին տրամադրված գերմանական միլիտարիստները, որոնք իրենց զրկված էին համարում գաղութների բաժանման հարցում։ Իր արդյունաբերության զարգացման տեսակետից Գերմանիան անցյալ դարի վերջին առաջ անցավ Անգլիայից և սկսեց իր ախոյանին դուրս մղել նրա հին շուկաներից։ Գերմանիան ձգտում էր աշխարհը արմատապես վերաբաժանել հօգուտ իրեն։ Անգլիական և գերմանական իմպերիալիստների միջև եղած այդ հակասությունն էլ հենց պատերազմի հիմնական պատճառն էր։ Պատերազմի սանձազերծման գործում մեծ դեր էին խաղում նաև մյուս կապիտալիստական տերությունների՝ Գերմանիայի և Ֆրանսիայի, Ռուսաստանի և Գերմանիայի և այլ տերությունների միջև եղած հակասությունները։ Դեռևս 1879—1882 թվականներին Գերմանիան Ավստրո-Հունգարիայի և Իտալիայի հետ դաշինք կնքեց, որն ուղղված էր Ռուսաստանի և Ֆրանսիայի դեմ։ Ի պատասխան դրա՝ այդ երկու տերություններն իրենց հերթին դաշինք կնքեցին։ Երկյուղ կրելով, թե Գերմանիան համաշխարհային տիրապետության կհասնի, անգլիական իմպերիալիստները Ֆրանսիայի հետ կնքեցին համաձայնություն (ֆրանսերեն՝ անտանտ) Գերմանիայի դեմ համատեղ պայքարելու մասին։ Անգլիայի և Ֆրանսիայի դաշինքն ստացավ «Անտանտ» անունը։ 1907 թվականին Անգլիայի և Ռուսաստանի միջև համաձայնություն կնքվեց, որի հետևանքով Ռուսաստանը հարեց Անտանտին։ Այսպես վերջնականապես ստեղծվեց երկու թշնամական լագեր Եվրոպայում։*



*Ռուսաստանը, որը տնտեսապես ավելի շատ կախված էր ֆրանսիական և անգլիական կապիտալից, պատերազմի մեջ ներգրավվեց Անտանտի կողմում։ Սակայն իմպերիալիստական պատերազմին մասնակցելու համար ցարական Ռուսաստանն ուներ նաև իր պատճառները։ Ռուս կապիտալիստներին ծայր աստիճան դուր չէր գալիս գերմանական ապրանքների մրցակցությունը Ռուսաստանի շուկայում։ Ռուսաստանի տիրապետող դասակարգերին հարկավոր էին բոլոր մրցակիցներից ազատ նոր շուկաներ։ Ռուս իմպերիալիստները ուզում էին հափշտակել Կոստանդնուպոլիսը, Սև ծովից Միջերկրական ծովը տանող նեղուցները և գրավել ամբողջ Հայաստանը, այսինքն՝ զավթել Հայաստանի նաև այն մասը, որը գտնվում էր Թուրքիայի տիրապետության տակ։ Բայց գերմանական իմպերիալիստները իրենք էին աչք դրել Մերձավոր Արևելքի վրա։ Գերմանիան թափանցել էր Թուրքիա, Իրան և ստացել էր Բեռլինից Բաղդադ երկաթուղու կառուցման կոնցեսիան։ Ռուսաստանի և Գերմանիայի միջև XX դարում խիստ ուժեղացան հակասությունները Մերձավոր Արևելքում։*

*Պատերազմը համաշխարհային բնույթ ընդունեց։ Աստիճանաբար պատերազմի մեջ ներգրավվեցին 28 երկրներ՝ մեկ ու կես միլիարդ մարդուց ավելի բնակչությամբ։ Պատերազմի համար մոբիլիզացվեց մինչև 74 միլիոն մարդ։*

*Պատերազմի լուրջ պատճառ էր նաև իմպերիալիստների ձգտումը՝ սանձահարելու վերջին տասնամյակի ընթացքում բոլոր երկրներում աճած հզոր ռևոլյուցիոն շարժումը։ 1905—1907 թվականների ռուսական ռևոլյուցիան ուժեղացրեց բանվոր դասակարգի պայքարը Եվրոպայում ու Ամերիկայում և արթնացրեց Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։ Երկյուղ կրելով աճող ռևոլյուցիայից, խոշորագույն տերությունների կառավարությունները, առաջին հերթին ցարական կառավարությունը, կարծում էին, թե պատերազմը ժողովրդական մասսաների ուշադրությունը կշեղի ռևոլյուցիոն պայքարից։ Իմպերիալիստները հույս ունեին տարբեր երկրների բանվորներին միմյանց դեմ հրահրելու միջոցով պառակտել միջազգային պրոլե-*

տարիատի միասնությունը, նրան թունավորել շովինիզմի թույնով, կոտրել առաջավոր բանվորների զգալի մասին և դրանով իսկ ճնշել կամ, համենայն դեպս, թուլացնել ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն գրոհը։

Բոլոր երկրների բոլոր բուրժուական պարտիաները ժողովրդին կոչ էին անում աջակցել պատերազմին։ Գերմանիայում գրում էին, թե ռուսական ցարիզմը սպառնում է ոչնչացնել գերմանական ժողովրդի դեմոկրատական նվաճումները։ Ֆրանսիայում հավատացնում էին, թե պրուսական միլիտարիզմը ոտնատակ կտա ֆրանսիական դեմոկրատիան։ Ռուսաստանում պնդում էին, թե գերմանացիներն առաջինն են հարձակվել երկրի վրա և ցանկանում են այն ստրկացնել։ Մի խոսքով, բուրժուական պարտիաները փորձում էին ժողովրդին հավատացնել, թե իրր պատերազմը մղվում է հանուն ազգի փրկության, և կոչ էին անում պաշտպանել բուրժուական հայրենիքը։ Ժողովրդին հանգստացնում էին հեքիաթներով այն մասին, թե սա վերջին պատերազմն է։ Մանրբուրժուական պարտիաները իրենց հերթին պաշտպանում էին բուրժուազիային և արդարացնում պատերազմը։

Բուրժուական պարտիաներից անմիջապես հետո II Ինտերնացիոնալի համարյա բոլոր պարտիաները, որոնք իրենց համարում էին պրոլետարիատի ներկայացուցիչներ, հակառակ բանվորների դասակարգային շահերի, հանդես եկան ի պաշտպանություն պատերազմի։ Գերմանական սոցիալիստները, որոնք երկար տարիներ Ինտերնացիոնալի առաջավոր պարտիան էին, պառլամենտում քվեարկեցին կառավարությանը ռազմական վարկեր տալու օգտին։ Ֆրանսիական սոցիալիստական պարտիայի ներկայացուցիչները, ինչպես նաև Անգլիայի և Բելգիայի սոցիալիստները, ոչ միայն քվեարկեցին ռազմական վարկեր տալու օգտին, այլև մտան ռեակցիոն բուրժուական կառավարության մեջ, որպեսզի պատերազմում աջակցեն նրան։

Ռուսաստանում այնքան ուժեղ էին ռուսական պրոլետարիատի հակապատերազմական տրամադրությունները, որ Պետական դումայի դեպուտատների մենշևիկյան ֆրակցիան քիչ էր մնում քվեարկեր ռազմական վարկերի դեմ։ Բայց մենշևիկների քայլը մի մանևր էր, որը բխում էր բանվոր դասակարգի մեջ իրենց այս կամ այն չափով ունեցած ազդեցությունը կորցնելու վախից։ Հետագայում մենշևիկները պաշտպանեցին հայրենիքի պաշտպանության բուրժուական լոզունգը։ Էսեռների պարտիան պատերազմի հարցում պառակտվեց։ Այդ պարտիայի մեծ մասը աջակցում էր ցարիզմին։ Պարտիայի ձախ թևը սկզբում հանդես եկավ պատերազմի դեմ և նույնիսկ մասնակցեց միջազգային սոցիալիստական հակապատերազմական կոնֆերենցիաներին, բայց կտրականապես հրաժարվեց խզել կապերը էսեռ-պաշտպանողականներից։

II Ինտերնացիոնալը կրախի ենթարկվեց և քայքայվեց։ Անտանտի երկրների սոցիալիստները, այդ թվում ռուսական մենշևիկներն ու էսեռները, 1915 թվականին Լոնդոնի իրենց կոնֆերենցիայում, իսկ գերմանական բլոկի սոցիալիստները Վիեննայի կոնֆերենցիայում հավանություն տվեցին իրենց բուրժուական հայրենիքի պաշտպանությանը։

Դա ուղղակի դավաճանություն էր բանվոր դասակարգի շահերին, ուղղակի դավաճանություն սոցիալիզմի գործին, մանավանդ, որ մինչև այդ սոցիալ-դեմոկրատիայի լիդերները մեկ անգամ չէ, որ բանաձևեր էին ընդունել պատերազմի դեմ և իրենց երկրների բանվորների ու միջազգային բանվորական



շարժման առաջ պարտավորվել էին պայքարի դուրս գալ իմպերիալիստական պատերազմի դեմ։ Ավելին, Շտուտգարտի (1907 թվական) և Բազելի (1912 թվական) կոնգրեսներում II Ինտերնացիոնալը բոլոր սոցիալիստական պարտիաների անունից հանդիսավոր կերպով բանվորներին կոչ արեց պայքարել ոչ միայն պատերազմի ծագման դեմ կամ արդեն ծագած պատերազմը դադարեցնելու համար, այլև այն բանի համար, որ պատերազմի ստեղծած ճգնաժամն օգտագործվի բուրժուազիայի տապալումն արագացնելու նպատակով։ II Ինտերնացիոնալի պարտիաները, դավաճանելով պրոլետարիատի գործին և պաշտպանելով իրենց բուրժուազիային, քաղաքական պատասխանատվություն էին կրում այն բանի համար, որ իմպերիալիստները մարդկությունը նետեցին այնքան կործանիչ և երկարատև արյունահեղ պատերազմի մեջ։

Իսկ ինչո՞վ բացատրել, որ Բազելի մանիֆեստն ընդունած սոցիալիստական պարտիաները հրաժարվեցին դրա կենսագործումից, կանգնեցին սոցիալիզմի գործի դավաճանության ուղու վրա։

Գաղութների կողոպուտը իմպերիալիստներին հնարավորություն էր տալիս իրենց շահույթների մի մասը բաժին հանել բնակչության մյուս խավերին։ Տասնամյակների ընթացքում կապիտալիստական երկրներում առանձնացան բանվորական արիստոկրատիա, լեգալ արհմիությունների չինովնիկներ, պառլամենտի սոցիալ-դեմոկրատ անդամներ և նրանց սպասարկող ապարատ, առանձնացավ մանրբուրժուական օպորտունիստների մի ամբողջ խավ կամ հոսանք II Ինտերնացիոնալում։ Օպորտունիստների միջոցով բուրժուազիան իր ազդեցությունը տարածում էր բանվոր դասակարգի մեջ։ Իզուր չէր Լենինը օպորտունիստներին անվանում բուրժուազիայի գործակալներ բանվորական շարժման մեջ։ Դասակարգերի պայքարի փոխարեն օպորտունիստները պնդում էին դասակարգերի համագործակցության վրա։ Նրանք հրաժարվեցին պայքարի ռևոլյուցիոն միջոցներից և օգնում էին իրենց բուրժուազիային, իրենց կառավարությանը։ Բոլշևիկները օպորտունիստների դեմ վճռական պայքար էին մղում ինտերնացիոնալի միջազգային կոնգրեսներում, այդ պայքարում համախմբելով ձախ տարրերին։ Լենինը բազմիցս նախազգուշացնում էր, որ սոցիալ-դեմոկրատիայի լիդերները միայն խոսքով են ընդունում պայքարը օպորտունիստների դեմ, որ գործով նրանք կանգնեն բուրժուազիայի կողմը։

Շնորհիվ այն բանի, որ օպորտունիստներին հաջողվեց հաղթել սոցիալիստական պարտիաների մեծ մասում, բուրժուազիայի հետ օպորտունիստների գաղտնի բլոկը պատերազմի ժամանակ վերածվեց բացահայտ դաշինքի։ Սոցիալ-դեմոկրատների կողմից բուրժուական պառլամենտներում ռազմական վարկերի օգտին քվեարկելը և մի շարք երկրների սոցիալիստների մտնելը բուրժուական կառավարությունների մեջ նշանակում էր նրանց բացահայտ համագործակցություն իրենց երկրների իմպերիալիստական բուրժուազիայի հետ, իրականում քաղաքացիական հաշտության և պատերազմի ժամանակ բուրժուազիայի հետ դասակարգային համագործակցության քաղաքականության կիրառում, իրենց իմպերիալիստական կառավարությունների պաշտպանություն կողոպտչական պատերազմում։ Ռուսաստանում այդպիսի քաղաքականություն էին կիրառում մենշևիկները (Պլեխանով, Պոտրեսով, Ջխեիձե և ուրիշներ) և էսեռները։ Օպորտունիզմը վերաճեց շովինիզմի, ինտերնացիոնալ սկզբունքների ուղղակի դավաճանության, բուրժուազիայի բա-

ցահայտ պաշտպանության։ Սոցիալ-շովինիստները, կատարելով բուրժուազիայի կամքը, բանվորներին կոչ էին անում պաշտպանել բուրժուական հայրենիքը, իրենց երկրների բանվորներին գրգռում էին մի ուրիշ երկրի բանվորների դեմ, աշխատավորներին կոչ էին անում բնաջնջել միմյանց։

Բացի աջ թևից, որը բացահայտորեն պաշտպանում էր բուրժուազիային, II Ինտերնացիոնալի բոլոր պարտիաներում գոյություն ուներ օպորտունիզմի մի ուրիշ ձև ևս՝ ցենտրիստական հոսանքը, որն իրեն դրսևորել էր դեռևս մինչև պատերազմը։ Ցենտրիստները խոսքով ընդունում էին մարքսիզմը և նույնիսկ խոսում էին օպորտունիզմի դեմ պայքար մղելու անհրաժեշտության մասին, բայց իրականում կապ էին պահպանում նրա հետ։ Հանդես գալով բացահայտ օպորտունիստներին պարտիայում թողնելու օգտին, ցենտրիստները դրանով իսկ նրանց միջոցով նաև դաշինք էին պահպանում բուրժուազիայի հետ։ Կաուցկին, Ռուսաստանում Տրոցկին և Մարտովը ցենտրիստական շարժման ներկայացուցիչներն էին։ Լենինը ցենտրիզմը համարում էր օպորտունիզմի առավել վնասակար և վտանգավոր տարատեսակը, որովհետև ցենտրիստները քողարկված օպորտունիստներ են։ Նրանք «բանվորական շարժման համար հարյուր անգամ ավելի վնասակար են ու վտանգավոր», քան բացահայտ օպորտունիստները, որովհետև ցենտրիստները ձախ ֆրազներով քողարկում են իրենց դավաճանությունը բանվորներին, իրենց դաշինքը բուրժուազիայի հետ։ Տրոցկիստները առաջ էին քաշում «Ո՛չ հաղթություններ, ո՛չ պարտություններ» լոզունգը, իսկ դա նշանակում էր, որ ամեն ինչ մնում է հին ձևով, հետևապես մնում է նաև ցարիզմը։ Դա բացահայտ շովինիստական լոզունգ էր, քանի որ իրականում այն նշանակում էր ցարական կառավարության պաշտպանություն, ցարիզմի պաշտպանություն։

«Ով որ կողմնակից է «ոչ հաղթություններ, ոչ պարտություններ» լոզունգին, նա գիտակից կամ անգիտակից շովինիստ է, նա լավագույն դեպքում հաշտարար մանր բուրժուա է, բայց համենայն դեպս պրոլետարական քաղաքականության թշնամի, այժմյան կառավարությունների, այժմյան տիրապետող դասակարգերի կողմնակից» (Երկեր, հատ. 21, էջ 352):

Ամբողջ II Ինտերնացիոնալում միայն մեկ պարտիա մշակեց ռևոլյուցիոն պլատֆորմ պատերազմի ու խաղաղության հարցերով և լիովին ու մինչև վերջ հավատարիմ մնաց սոցիալիզմին ու միջազգային պրոլետարական համերաշխության,— դա բոլշևիկների պարտիան էր։ Պատերազմի դեմ հանդես եկան Բուլղարական սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիան («տեսնյակները») Դ. Բլագոևի, Գ. Դիմիտրովի, Վ. Կոլարովի գլխավորությամբ և Սերբական սոցիալ-դեմոկրատական պարտիան։ Պատերազմի սկզբին ինտերնացիոնալիստական դիրք գրավեց Իտալական սոցիալիստական պարտիան։ Բայց նա այդ դիրքերի վրա չմնաց և, մյուս սոցիալ-դեմոկրատական պարտիաների նման, անցավ պաշտպանողական դիրքերը։ Գերմանիայում իմպերիալիստական պատերազմի դեմ հանդես եկան Կ. Լիբկնեխտը, Ռ. Լյուքսեմբուրգը, Կ. Ցետկինը, Ֆ. Մերինգը։ Սակայն ձախ սոցիալ-դեմոկրատները չէին պաշտպանում իրենց կառավարության պարտության և իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու մասին Լենինի, բոլշևիկների առաջ քաշած լոզունգները։

Հանուն պատերազմի՞, և դրանով իսկ՝ հանուն իմպերիալիզմի՞, թե՞



ընդդեմ պատերազմի և դրանով իսկ՝ հանուն ռևոլյուցիայի,— այդպիսին էր պարտիաների մեջ եղած սահմանագծումը այն ժամանակաշրջանում։ II Ինտերնացիոնալի պարտիաների ճնշող մեծամասնությունը հիմնականում պատերազմի կողմն էր, իր բուրժուազիային, իր կառավարությանը աջակցելու, ուրիշ ժողովուրդների դեմ հաղթանակ տանելու կողմը։

Լենինը, բոլշևիկները «հոսանքին հակառակ» գնացին։ Բոլշևիկների պարտիան Լենինի գլխավորությամբ կոչ արեց պայքարել պատերազմի դեմ, պայքարել իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի, սեփական կառավարության, սեփական բուրժուազիայի և կալվածատերերի դեմ պատերազմի վերածելու համար։ Պատերազմը փառաբանող իմպերիալիզմի սպասարկուների ընդհանուր խմբերգում հնչեց սոցիալիզմի, ժողովրդի շահերի համար պայքարող մարտիկների քաջարի ձայնը։ Օպորտունիզմի ծովի մեջ, որը, թվում էր, թե երկար ժամանակով ծածկել էր ամբողջ միջազգային բանվորական շարժումը, Լենինը բարձր պարզեց մարքսիզմի դրոշը, ինտերնացիոնալիզմի դրոշը։

## 2. ՊԱՐՏԻԱՅԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՄԵՋ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ։

Պատերազմը սկսվելու պահին Լենինը գտնվում էր Ավստրո-Հունգարիայում, Պորոնին բնակավայրում, որտեղ նրան ձերբակալեցին ժանդարմները։ Բանտից ազատվելուց հետո Լենինը հնարավորություն ստացավ մեկնելու Շվեյցարիա, Բեռն քաղաքը։ Օգոստոսի վերջին Լենինը բոլշևիկների տեղական խմբին ծանոթացրեց պատերազմի վերաբերյալ իր թեզիսներին։ Լենինի թեզիսները Ռուսաստան ուղարկվեցին Պետական դումայի անդամ Ֆ. Ն. Սամոյլովի միջոցով։ Այդ թեզիսները քննարկվեցին Ռուսաստանի մի շարք խոշորագույն պարտիական կազմակերպություններում՝ Պետրոգրադի, Մոսկվայի, Խարկովի, Կիևի և այլ կազմակերպություններում։ Բոլոր կազմակերպությունները միացան թեզիսներին, նրանց մեջ որոշ ուղղումներ մտցնելով։ 1914 թվականի հոկտեմբերին պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ»-ում հրապարակվեց բոլշևիկների պարտիայի Կենտկոմի մանիֆեստը՝ «Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան»։

Տարբեր պարտիաներ տարբեր կերպ էին բնորոշում պատերազմի բնույթը։ Պարտիաների մեծ մասը պատերազմի բնույթը որոշում էր ըստ այն բանի, թե ով էր առաջինը հարձակվել, և այդ տեսակետից էլ պատերազմները բաժանում էր հարձակողական և պաշտպանողական պատերազմների։ Ուրիշ պարտիաներ էլ փորձում էին պատերազմի բնույթը որոշել ըստ այն բանի, թե ում տերիտորիայում է մղվում պատերազմը։ Բուրժուական պացիֆիստները կոչ էին անում պայքարել ամեն տեսակ պատերազմի դեմ, որովհետև, նրանց կարծիքով, ամեն մի պատերազմ իր հետ բերում է միայն բռնություն, կողոպուտ և ուրիշների տերիտորիաների զավթում։ Նրանք երազում էին հավիտենական խաղաղության մասին, առանց կապիտալիզմի տապալման։

Բոլշևիկների պարտիան գտնում էր, որ պետք է ուսումնասիրել յուրաքանչյուր առանձին պատերազմի կոնկրետ պատմական պատճառներն ու բնույթը։ Բոլշևիկները սխալ էին համարում և մերժեցին պատերազմները հարձակողական և պաշտպանողական պատերազմների բաժանելը։ Ամեն մի

*պատերազմում էլ լինում է թե՛ պաշտպանություն, թե՛ հարձակում։ Ագրեսորները հարկադրված են լինում անցնել պաշտպանության, ճիշտ այդպես էլ ազատագրական պատերազմում լայնորեն կիրառվում է հարձակումը։ Պատերազմի բնույթը որոշելիս դեր չի խաղում նաև այն, թե ով է առաջինն սկսել պատերազմը, ով ում վրա է հարձակվել։ Առաջին համաշխարհային պատերազմը նախապատրաստում էին բոլոր իմպերիալիստները, իսկ Գերմանիան պատերազմն սկսեց իր համար նպատակահարմար պահին։*

*Ամբողջ բանն այն է, թե* որ դասակարգն *է մղում պատերազմը,* ինչպիսի քաղաքականություն *է շարունակում տվյալ պատերազմը,* ինչպիսի քաղաքական *նպատակ է հետապնդում իշխող դասակարգը տվյալ պատերազմում։ Այդ տեսակետից ռևոլյուցիոն մարքսիստները տարբերում են արդարացի և անարդարացի պատերազմներ։ Ճնշված դասակարգի պատերազմներն ընդդեմ ճնշող դասակարգի, ստրուկների պատերազմներն ընդդեմ ստրկատերերի, ճորտ գյուղացիներինը՝ ընդդեմ կալվածատերերի, վարձու բանվորների պատերազմներն ընդդեմ բուրժուազիայի, ազգային-ազատագրական պատերազմները, հաղթանակած պրոլետարիատի պատերազմներն ի պաշտպանություն սոցիալիզմի, ընդդեմ իմպերիալիստական պետությունների,— այդպիսի պատերազմները մարքսիստները համարում են արդարացի։*

*Համաշխարհային իմպերիալիստական պատերազմը, ինչպես և ամեն մի պատերազմ, տիրապետող դասակարգերի այն քաղաքականության շարունակությունն էր, որպիսին վարում էին նրանք մինչև պատերազմը։ Երկրի ներսում իմպերիալիստների քաղաքականությունը հանգում էր իրենց դրության ամրապնդմանը, աշխատավորների շահագործման ուժեղացմանը։ Միջազգային թատերաբեմում այդ քաղաքականության շարունակությունը պայքարն էր համաշխարհային տիրապետության համար, ուժեղագույն պետությունների օգտին աշխարհը վերաբաժանելու համար, նոր շուկաներ գրավելու, նոր գաղութներ զավթելու, կախյալ երկրների կողոպուտն ուժեղացնելու համար։ Ուստի համաշխարհային պատերազմը երկու կողմից էլ իմպերիալիստական էր։*

*Պատերազմի իմպերիալիստական բնույթից էլ հենց բխում էր բոլշևիկյան պարտիայի վերաբերմունքը պատերազմի նկատմամբ։ Հավատարիմ լինելով բանվոր դասակարգի շահերին և սոցիալիզմի գաղափարներին, բոլշևիկների պարտիան կոչ էր անում ոչ միայն պայքարել պատերազմի դեմ, անհապաղ դադարեցնել այն, այլև պատերազմի հետևանքով առաջացած բոլոր դժվարությունները օգտագործել ցարիզմը տապալելու համար։ Ի հակակշիռ մենշևիկների և մյուս սոցիալ-շովինիստների պաշտպանած քաղաքացիական հաշտության, դասակարգային համագործակցության լոզունգի, պարտիայի* հիմնական լոզունգն էր՝ իմպերիալիստական պատերազմը վերածել քաղաքացիական պատերազմի, *վերածել ռևոլյուցիայի՝ ընդդեմ տիրապետող դասակարգերի։ Այդ նպատակին հասնելու համար պարտիան հանձնարարեց մի շարք կոնկրետ քայլեր՝ 1) անպայման հրաժարվել ռազմական վարկերի օգտին քվեարկելուց և ապահովել սոցիալիստական պարտիաների ներկայացուցիչների անպայման դուրս գալը բուրժուական կառավարություններից, 2) լիովին հրաժարվել բուրժուազիայի հետ համաձայնության գալուց, քաղաքացիական հաշտությունից, 3) անլեգալ կազմակերպություններ ստեղծել այն երկրներում, որտեղ դրանք չկան, և որտեղ աշխատանքը դժվարացել է*



*լեգալ կազմակերպություններում, 4) աջակցել զինվորների եղբայրացմանը ռազմաճակատում, 5) աջակցել պրոլետարիատի ամեն տեսակ ռևոլյուցիոն մասսայական ելույթներին։*

*Ռազմաճակատում ցարիզմի կրած պարտությունները հեշտացրին ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն պայքարը։ Ուստի բոլշևիկների պարտիան, ի հակակշիռ բուրժուա-կալվածատիրական հայրենիքի պաշտպանության էսեռա-մենշևիկյան լոզունգի, առաջադրեց* պատերազմում ցարական կառավարության պարտության *լոզունգը։ Պարտության լոզունգը ամենևին էլ չէր նշանակում, թե պարտիան ժողովրդին կոչ էր անում դիվերսիոն աշխատանք կատարել, պահեստներ պայթեցնել և նմանօրինակ գործողություններ կատարել։ Այդ լոզունգը նշանակում էր, որ պրոլետարիատի պարտիան ոչ մի դեպքում չպետք է պաշտպանի կառավարության այն միջոցառումները, որոնք ամրապնդում են նրան։ Իմպերիալիստական պատերազմում սեփական կառավարության պարտության քաղաքականությունը նշանակում էր շարունակել ռևոլյուցիոն պայքարը։ Պատերազմում կրած պարտությունները թուլացնում էին ցարիզմը, դժվարացնում նրա դրությունը և այդպիսով նպաստում ռևոլյուցիոն պայքարի ընդարձակմանը, ցարիզմի տապալման և ռևոլյուցիայի հաղթանակի խնդրի լուծմանը։ Բոլշևիկյան տակտիկայի հակառակորդները փորձում էին այնպիսի հետևություն վերագրել Լենինին, թե իբր ցարիզմի պարտության քաղաքականությունը նշանակում է Գերմանիայի հաղթանակը։ Բայց նրանք լռության էին մատնում, որ պատերազմում սեփական կառավարության պարտության լոզունգը Լենինն առաջ էր քաշում ոչ միայն Ռուսաստանի համար, այլև պատերազմին մասնակցած բոլոր երկրների համար, և հենց դրանում արտահայտվեց բոլշևիկյան տակտիկայի ինտերնացիոնալիզմը։*

*Վերջապես, երրորդ լոզունգը, որով հանդես եկավ պարտիան պատերազմի ժամանակաշրջանում,* լիակատար խզումն էր կրախի ենթարկված II Ինտերնացիոնալի հետ, *որովհետև օպորտունիստների հետ միասնություն պահպանելը իրականում նշանակում էր դաշինքի պահպանում բուրժուազիայի հետ։ Լենինն առաջ քաշեց նոր, III Ինտերնացիոնալ ստեղծելու խնդիրը։*

*Բոլշևիկներին, որոնք հանդես էին գալիս իմպերիալիստական պատերազմում հայրենիքի պաշտպանության բուրժուական լոզունգի դեմ, բուրժուական և մանրբուրժուական պարտիաները մեղադրում էին հայրենիքի շահերի նկատմամբ անտարբերության, դավաճանության, հայրենասիրություն չունենալու մեջ։ Նրանք, ովքեր իրենց հակաժողովրդական քաղաքականությամբ մեծ երկիրը խաղալիք էին դարձրել իմպերիալիստական պետությունների՝ Անգլիայի և Ֆրանսիայի ձեռքում, զրպարտում էին, թե, իբր, բոլշևիկները ազգային հպարտության զգացմունք չունեն։ Լենինը զայրույթով հերքեց այդ զրպարտանքը։ «Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» հոդվածում նա գրում էր՝*

> *«Խո՞րթ է արդյոք մեզ համար, վելիկոռուսական գիտակից պրոլետարներիս համար, ազգային հպարտության զգացումը։ Իհարկե, ո՛չ։ Մենք սիրում ենք մեր լեզուն ու մեր հայրենիքը, մենք ամենից ավելի աշխատում ենք այն բանի վրա, որ* նրա *աշխատավոր մասսաներին (այսինքն՝* նրա *բնակչության 9/10) բարձրացնենք մինչև դեմոկրատների ու սոցիալիստների գիտակից կյանքը։ Մեզ համար ամենից ավելի*

*ցավալի է տեսնել ու զգալ, թե ցարական դահիճները, ազնվականներն ու կապիտալիստները մեր գեղեցիկ հայրենիքն ինչպիսի բռնությունների, ճնշման և ծաղր ու ծանակի են ենթարկում։ Մենք հպարտանում ենք նրանով, որ այդ բռնությունները մեր միջավայրից, վելիկոռուսների միջավայրից հակահարված են առաջ բերել, որ այդ միջավայրն առաջ է քաշել Ռադիշչևին, դեկաբրիստներին, 70-ական թվականների ռազնոչին-ռևոլյուցիոներներին, որ վելիկոռուսական բանվոր դասակարգը 1905 թվականին ստեղծեց մասսաների հզոր ռևոլյուցիոն պարտիա, որ վելիկոռուսական մուժիկը սկսեց միաժամանակ դեմոկրատ դառնալ, սկսեց տապալել տերտերին ու կալվածատիրոջը»* (Երկեր, հատ. 21, էջ 118—119):

*Բոլշևիկները հանդես էին գալիս ոչ թե ընդհանրապես հայրենիքի դեմ, այլ կալվածատիրական բուրժուական հայրենիքի դեմ, ցարական Ռուսաստանը, որտեղ կալվածատերերն ու կապիտալիստները կեղեքում ու շահագործում էին աշխատավորներին, որպես հայրենիք ներկայացնելու ձգտումների դեմ։ Պարտիան մասսաներին պարզաբանում էր հայրենիքի բուրժուական մեկնաբանության ամբողջ կեղծությունը։*

*Հենց այն պատճառով, որ բոլշևիկները հանդես էին գալիս իմպերիալիստական պատերազմում իրենց կառավարության պարտության քաղաքականության օգտին, հակաժողովրդական կառավարության տապալման օգտին, նրանք հանդիսանում էին երկրի իսկական հայրենասիրական ուժը, մի բան, որը լիովին համապատասխանում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքին։ Լենինը ցույց տվեց, թե մարքսիստներն ինչպես են հասկանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության հարաբերակցությունը։ Հայրենասերը նա չէ, ով կողմնակից է կողոպտչական պատերազմին հանուն կալվածատերերի ու բուրժուազիայի շահերի, կողմնակից է իշխող դասակարգերի արտոնությունների պահպանմանը, այլ նա, ով պայքարում է ժողովրդի շահերի համար, ով ուզում է «...ազատ ու անկախ, ինքնուրույն, դեմոկրատական, ռեսպուբլիկական, հպարտ Վելիկոռուսիա, որը հարևանների նկատմամբ իր հարաբերությունները կառուցի հավասարության մարդկային սկզբունքի վրա, և ոչ թե մեծ ազգը ստորացնող արտոնությունների ճորտատիրական սկզբունքի վրա»* (Երկեր, հատ. 21, էջ 120): *Ցարիզմը տապալելու համար ժողովրդին ոտքի հանելով, պայքարելով հանուն սոցիալիզմի, ռուսական պրոլետարիատը՝ «կոմունիստական ռևոլյուցիայի գլխավոր շարժիչը», պայքարում էր ազատ, անկախ դեմոկրատական հայրենիքի համար։*

> *«Վելիկոռուսների,— գրում էր Լենինը,— ազգային հպարտության շահը (ծառայամտորեն չհասկացված) զուգադիպում է վելիկոռուս (և բոլոր այլ) պրոլետարների* սոցիալիստական *շահին»* (Նույն տեղը, էջ 122):

*1915 թվականի փետրվարին Բեռնում տեղի ունեցավ բոլշևիկների արտասահմանյան սեկցիաների կոնֆերենցիա, որը քննարկեց պարտիայի տակտիկան և հաստատեց պատերազմի հարցի վերաբերյալ լոզունգները։*

*Լենինյան դրույթների հիման վրա բոլշևիկները ռևոլյուցիոն աշխատանք ծավալեցին մասսաների մեջ։*

*Ցարական իշխանությունները չլսված ռեպրեսիաներ գործադրեցին բոլ-*



*շևիկների պարտիայի դեմ։ Ոստիկանությունը ձերբակալում էր բոլշևիկներին։ Չկար ոչ մի պարտիական կոմիտե, որ ավերված չլիներ։ Պետերբուրգի կոմիտեից պատերազմի ընթացքում ավելի քան 30 հոգի ձերբակալվեց։ Մոսկվայի կազմակերպությունը անընդհատ ոստիկանության հարվածների տակ էր, մի քանի անգամ ձախողվեց Մոսկվայի կոմիտեն վերստեղծելու փորձը։ Սամարայի կոմիտեն պատերազմի մեկ տարվա ընթացքում վեց անգամ ջախջախվեց։*

*Փակվեցին բոլշևիկների տպագիր բոլոր հրատարակությունները, այդ թվում «Վոպրոսի ստրախովանիա» լեգալ ժուռնալը։ Դեռևս մնացած արհեստակցական միությունները մեծ մասամբ ցրվեցին։ Նույնիսկ այնպիսի կուլտուր-լուսավորական ընկերություններ, ինչպիսին էր «Ռազումնոյե ռազվլեչենիե»-ն՝ Սամարայում, «Օբրազովանիե» ակումբը՝ Մոսկվայում, «Օբշչեստվո սամոօբրազովանիա»-ն՝ Պետրոգրադում փակվեցին այն երկյուղի պատճառով, թե դրանք կդառնան ռևոլյուցիոն պրոպագանդայի օջախներ և պարտիական աշխատողների հանդիպման վայր։*

*Ոչ մի ռևոլյուցիոն պարտիա այդպիսի ծանր պայմաններում չէր աշխատել։ Բավական էր, որ ձեռնարկատերը ոստիկանությանը հանձներ անցանկալի բանվորների ցուցակը, որպեսզի նրանց անհապաղ ձերբակալեին։*

*Բայց ո՛չ ոստիկանության տեռորը, ո՛չ էլ կապիտալիստների պրովոկացիաները չկարողացան կոտրել պարտիայի կամքը, չդադարեցրին նրա աշխատանքը։ Պատերազմի առաջին իսկ շաբաթում Պետրոգրադի, Եկատերինոսլավի, Խարկովի, Կիևի, Մոսկվայի, Ուֆայի, Տուլայի, Սամարայի բոլշևիկյան կազմակերպությունները լույս ընծայեցին հակապատերազմական թռուցիկներ։*

*Պետական դումայի բոլշևիկ դեպուտատները լինում էին մի շարք արդյունաբերական կենտրոններում, վերականգնում և կազմակերպում էին պարտիական կոմիտեները, կազմակերպում էին բազմաթիվ բանվորական ժողովներ, որտեղ բանաձևեր էին ընդունվում ընդդեմ պատերազմի։ 1914 թվականի նոյեմբերի 2—4-ը Պետրոգրադի մոտ գտնվող Օզյորկի գյուղում բոլշևիկ-դեպուտատների կողմից հրավիրվեց կոնֆերենցիա Պետրոգրադի, Իվանովո-Վոզնեսենսկի, Խարկովի և Ռիգայի բոլշևիկյան կազմակերպությունների ներկայացուցիչների մասնակցությամբ։ Կոնֆերենցիան քննարկեց պատերազմի վերաբերյալ Լենինի թեզիսները և լիովին պաշտպանեց դրանք։*

*Պրովոկատորները կոնֆերենցիայի տեղը մատնեցին։ Նոյեմբերի 4-ին ոստիկանությունը կոնֆերենցիայի բոլոր մասնակիցներին ձերբակալեց։ Պետական դումայի անդամները խուզարկվեցին և ազատ արձակվեցին, բայց նոյեմբերի լույս 6-ի գիշերը նրանք ձերբակալվեցին։ Ցարական իշխանությունները բոլշևիկ դեպուտատներին դատի տվեցին։ Դատը կայացավ 1915 թվականի նոյեմբերի 10—13-ը։ Բոլշևիկ-դեպուտատները դատարանի տրիբունան օգտագործեցին, որպեսզի բացահայտորեն հայտարարեն պարտիայի լոզունգները պատերազմի դեմ։ Ցարական դատարանը բոլշևիկներին դատապարտեց մշտական բնակության Տուրուխանյան երկրամասում, Արևելքի Սիբիրում։*

*Անվեհեր դեպուտատների հետ միասին դատի էր հանձնվել խորհրդակցությանը մասնակցած Կամենևը։ Կամենևը հրաժարվեց պատերազմում սեփական կառավարության պարտության վերաբերյալ պարտիայի լոզունգներից։ Որպես ապացույց այն բանի, որ ինքը համաձայն չէ Լենինի, պարտիայի*

հետ, Կամենևը վկայակոչում էր մի մենշևիկ-պաշտպանողականի, որը կա-
րող էր հաստատել նրա տարաձայնությունները պարտիայի քաղաքականու-
թյան հետ։

Դատարանում Կամենևի վարքագիծը պարտիան դատապարտեց որպես
դավաճանական։

Բոլշևիկյան դեպուտատների դատավարությունը հսկայական քաղաքական
նշանակություն ուներ։ Նա ամբողջ համաշխարհային պրոլետարիատին ցույց
տվեց, թե ինչպես պետք է պահի իրեն իսկական ինտերնացիոնալիստական
պայմաններում։ II Ինտերնա-
պարտիան իմպերիալիստական պատերազմի
ցիոնալի օպորտունիստները, մտնելով բուրժուական կառավարությունների
մեջ, խայտառակեցին իրենց, իսկ բոլշևիկյան դեպուտատները գերադասեցին
գնալ տաժանակրության, բայց պահպանեցին հավատարմությունը սոցիա-
լիզմի դրոշին։

Բոլշևիկ-դեպուտատների ձերբակալությունը թուլացրեց պարտիայի կող-
մից ռևոլյուցիոն պայքարի լեգալ ղեկավարության հնարավորությունը։ Դա
դժվարացրեց պարտիայի աշխատանքը, բայց չկարողացավ կասեցնել այն։
Պետերբուրգի կոմիտեն պատերազմի ժամանակ լույս ընծայեց 90-ից ավելի
թռուցիկ, միջին հաշվով ամսական 3 թռուցիկ, ընդամենը ավելի քան 300
հազար օրինակ։ Պետերբուրգի Կոմիտեի թռուցիկները տարածվում էին ամ-
բողջ Ռուսաստանում։ Պատերազմի ընթացքում 40-ից ավելի պարտիական
կազմակերպություններ (ամենևին էլ ոչ լրիվ տվյալներով) լույս էին ընծա-
յում թռուցիկներ։ Դրանց մեջ, բացի հիշատակված պարտիական կազմակեր-
պություններից, գտնվում էին Եկատերինբուրգի, Զլատոուստի, Իվանովո-
Վոզնեսենսկի, Կրասնոյարսկի կազմակերպությունները, Դոնբասի, Կրոն-
շտադտի, Նիժնի Նովգորոդի, Դոնի Ռոստովի, Ռիգայի, Բաքվի, Թիֆլիսի և
ուրիշ կոմիտեներ։ Ընդամենը լույս տեսան ավելի քան 400 զանազան թռու-
ցիկներ։

Բոլշևիկյան պարտիան աշխատում էր բոլոր հնարավորություններն օգ-
տագործել ռևոլյուցիոն պրոպագանդայի համար։ Բոլշևիկները աշխատում էին
բանվորական կոոպերացիաներում, հի-
վանդանոցային դրամարկղներում, կուլտուր-լուսավորական ընկերություննե-
րում, որոնք ոստիկանությունը դեռևս չէր փակել։ Այդ բոլոր կազմակերպու-
թյուններում պայքար էր գնում սոցիալ-շովինիստների դեմ՝ մասսաներին
նրանց ազդեցությունից ազատագրելու համար։ Ոստիկանությունն օգնում էր
մենշևիկ-պաշտպանողականներին։ Հաճախակի էին այն դեպքերը, երբ այս
կամ այն ժողովի մասնակիցներին ձերբակալելուց հետո պաշտպանողական-
ներին ազատ էին արձակում, իսկ բոլշևիկներին տաժանակրության քշում։
Պատերազմի ընթացքում անդադար հետապնդումների պայմաններում բոլշե-
վիկներին հաջողվեց գերակշռության հասնել արհմիություններում և այլ
բանվորական կազմակերպություններում։

Ամենացայտուն հաստատումն այն բանի, որ բոլշևիկները բանվորների
ճանաչված ղեկավարներն էին, գործադուլային պայքարի ընթացքն էր։ Պա-
տերազմն աշխատավորներին բերեց սով, ցուրտ, անհաշիվ զոհաբերություն-
ներ։ Պատերազմը քայքայեց ժողովրդական տնտեսությունը։ Բնակչության
կարիքները չէին բավարարվում։ Տրանսպորտը չէր հասցնում մթերքների փո-
խադրումները։ Հացը չէր բավականացնում։ Բոլոր ապրանքների գները սաս-



տիկ բարձրանում էին, իսկ աշխատավարձը մնում էր նախկին մակարդակի
վրա կամ բարձրանում էր ծայրահեղ անբավարար չափերով։ Բուրժուազիան
չտեսնված շահույթներ էր ստանում, իսկ ժողովրդական լայն մասսաները
իրենց վրա կրում էին պատերազմի ամբողջ բեռը։

Ռազմաճակատում ցարական բանակը առաջին հաջողություններից հետո
սկսեց պարտություններ կրել։ Գերմանացիները գրավեցին Լեհաստանը, Մերձ-
բալթիկայի, Բելոռուսիայի մի մասը։ Միլիոնավոր մարդիկ թողին իրենց
բնակավայրերը և շարժվեցին դեպի Ռուսաստանի խորքերը։ Գաղթողների
դրությունն ավելի ծանր էր, քան մյուս բնակչության դրությունը։

Ժողովրդական մասսաների մեջ գնալով ավելի ու ավելի էր հասունանում
դժգոհությունը պատերազմից և ցարական ինքնակալության քաղաքականու-
թյունից։ Առաջինը շարժվեցին բանվորները, իրենց պայքարով օրինակ ցույց
տալով բոլոր աշխատավորներին։ Գործադուլների թիվը անընդհատ աճում էր։
Եթե 1914 թվականին (պատերազմի սկզբից) տեղի էր ունեցել մոտ 70 գոր-
ծադուլ, որոնց մասնակցել էին գրեթե 35 հազար բանվորներ, ապա 1915
թվականին, նույնիսկ նվազեցված պաշտոնական տվյալներով, եղավ 1000-ից
ավելի գործադուլ, որոնց մասնակցեց ավելի քան 50 հազար բանվոր։ Ցարա-
կան իշխանությունները դաժանորեն ճնշում էին գործադուլները։ 1915 թվա-
կանի հունիսին ոստիկանությունը Կոստրոմայում գնդակոծեց գործադուլավոր
բանվորների ցույցը։ Սպանվեց և վիրավորվեց ավելի քան 50 մարդ։ Օգոս-
տոսի սկզբին ոստիկանությունն Իվանովո-Վոզնեսենսկում գնդակոծեց գոր-
ծադուլավոր բանվորների միտինգը։ Սպանվեց և վիրավորվեց ավելի քան 100
բանվոր։ Պետերբուրգի կոմիտեն բողոքի գործադուլ կազմակերպեց Իվանովո-
Վոզնեսենսկում և Կոստրոմայում բանվորների գնդակահարությունների դեմ։

Գործադուլային շարժման աճումից և այդ շարժումը ճնշելու ցարիզմի
անընդունակությունից ահաբեկված կապիտալիստները ձեռնարկեցին մի ճար-
պիկ մանևր, որպեսզի խաղաղեցնեն բանվորներին և նրանց ենթարկեն իրենց
ազդեցությանը։ Իշխանությունների թույլտվությամբ 1915 թվականին կազմա-
կերպվեցին ռազմա-արդյունաբերական կոմիտեներ։ Դրանք ստեղծվեցին բուր-
ժուազիայի կողմից ցարական կառավարությանը պաշտպանելու և պատե-
րազմի համար արդյունաբերության աշխատանքն ուժեղացնելու նպատակով,
բանվորների շահագործումն ուժեղացնելու, ինչպես և նրա համար, որպեսզի
կապիտալիստները կարողանան ազդեցություն ունենալ ռազմական պատվեր-
ների բաշխման վրա, որոնք հսկայական շահույթներ էին բերում։ Բուրժուա-
զիան որոշեց կոմիտեներին կից կազմակերպել «բանվորական խմբեր»,
դրանց մեջ քաշել բանվորների ներկայացուցիչներ և դրանով իսկ ցույց տալ,
թե Ռուսաստանում «դասակարգային խաղաղություն» է հաստատված բուր-
ժուազիայի և պրոլետարիատի միջև։ Այդ գործում որպես բուրժուազիայի
աջակիցներ հանդես եկան մենշևիկները․ Նրանք արտահայտվում էին «բան-
վորական խմբերում» բանվորների մասնակցության օգտին։ Ըստ էության
նրանց դիրքը ոչնչով չէր տարբերվում կառավարության մեջ մտած արևմտա-
եվրոպական սոցիալիստների դիրքից, քանի որ ռազմաարդյունաբերական
կոմիտեները կիսակառավարական հիմնարկություններ էին։

Բոլշևիկները ամենավճռական կերպով հանդես էին գալիս ռազմա-ար-
դյունաբերական կոմիտեներում բանվորների մասնակցության դեմ։ Գործա-
րաններում բացատրական աշխատանք էր տարվում։ Բոլշևիկների դեմ միաս-

նական ճակատով հանդես էին գալիս ցարական ադմինիստրացիան, բուրժուազիան, էսեռները և մենշևիկները: Բայց և այնպես բոլշևիկներին հաջողվեց տապալել պրոլետարիատի հետ «դասակարգային հաշտություն» հաստատելու բուրժուազիայի փորձը: Բանվոր դասակարգը գերակշռող մեծամասնությամբ արտահայտվեց ռազմա-արդյունաբերական կոմիտեներին մասնակցելու դեմ: 239 մարզային և տեղական ռազմա-արդյունաբերական կոմիտեներից բանվորական ներկայացուցիչների ընտրություններ անցկացվեցին միայն 70 կոմիտեներում, բայց ներկայացուցիչներ ընտրվեցին միայն 36 կոմիտեներում. այսինքն՝ բոլոր կոմիտեների ընդամենը 15 տոկոսում: Ռուսաստանի պրոլետարիատը կայուն գտնվեց ռազմական մոլուցքի դեմ:

Բոլշևիկները հսկայական աշխատանք տարան զինվորների մեջ: Բանակում մոբիլիզացվել էին արդյունաբերական բանվորներ և նրանց թվում՝ ռևոլյուցիոն պայքարի տասնյակ հազարավոր ակտիվ մասնակիցներ: Հենց այդ խավն էլ պարտիայի գլխավոր հենարանն էր բանակում:

Պարտիայի ռազմական աշխատանքը հսկայական նշանակություն ստացավ շնորհիվ այն հանգամանքի, որ բանակում կենտրոնացած էին գյուղացիության, գլխավորապես գյուղացիական չքավորության միլիոնավոր մասսաներ: Բոլշևիկները դա օգտագործում էին բանվորների և գյուղացիների ուժերի միավորման նպատակով՝ հանուն ռևոլյուցիայի համար մղվող պայքարի: Բոլշևիկյան պարտիան իր թռուցիկներում դնում էր ոչ միայն հաշտության, այլև հողի հարցը:

Պետրոգրադի, Մոսկվայի, Խարկովի, Կիևի, Եկատերինոսլավի, Ռիգայի և ուրիշ շատ այլ արդյունաբերական կենտրոնների պարտիական կոմիտեները բանակի համար հրատարակում էին թռուցիկներ: Բոլշևիկները զինվորներին պատմում էին թիկունքային գործադուլային շարժման, լայն մասսաների մեջ ռևոլյուցիոն դժգոհության աճման, ցարիզմի դեմ համատեղ պայքարի անհրաժեշտության մասին: Բոլշևիկները կոչ էին անում եղբայրանալ ռազմաճակատում: Եղբայրացման առանձին դեպքեր նկատվում էին արդեն 1914 թվականի վերջին, իսկ 1915 թվականի գարնանը ռազմական իշխանությունները բազմիցս հաղորդում էին ռուս-ավստրիական ռազմաճակատում եղբայրացման մասին: Հաջորդ տարում եղբայրացումը հաճախակի երևույթ էր դառնում: Մի շարք զորամասերում ստեղծվեցին պարտիական կազմակերպություններ: Բանակում և նավատորմում աշխատանք էին տանում Ն. Վ. Կռիլենկոն, Ա. Ֆ. Մյասնիկովը, Մ. Վ. Ֆրունզեն և այլ բոլշևիկներ:

Լայն աշխատանք էր ծավալված նավատորմում, որի կազմը կոմպլեկտավորվում էր գլխավորապես որակյալ բանվորներից: Բալթիական նավատորմում յուրաքանչյուր խոշոր ռազմանավի վրա ստեղծվել էին պարտիական խմբեր: Դրանց միավորում էր «Կրոնշտադտի ռազմական կազմակերպության Գլխավոր կոլեկտիվը»: Կրոնշտադտի կոլեկտիվը կապ հաստատեց բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեի ռազմական կազմակերպության հետ:

Արդեն 1915 թվականի հոկտեմբերին «Գանգուտ» գծանավի վրա տեղի ունեցավ նավաստիների ապստամբություն: Շրջապատված լինելով ականակիրներով և սուզանավերով, «Գանգուտը» հանձնվեց: Ձերբակալվեցին մոտ 100 ծովայիններ: Դեկտեմբերին տեղի ունեցավ ապստամբ ծովայինների դատը: 26 մարդ դատապարտվեց տաժանակիր աշխատանքի:

Ծովայինների ապստամբության և նրանց դատի առթիվ Պետերբուրգի



կոմիտեն դիմեց բանակին և նավատորմին, կոչ անելով ռևոլյուցիոն բանակը միավորել ռևոլյուցիոն պրոլետարիատի և ամբողջ ժողովրդի հետ: 1916 թվականի հոկտեմբերին, երբ դատվում էր ծովային-բոլշևիկների մի այլ խումբ, Պետերբուրգի կոմիտեն բանվորներին նորից կոչ արեց բողոքի գործադուլ անել: Պետրոգրադում մոտ 130 հազար բանվորներ երեք օր շարունակ գործադուլ արին: Բանվորների մասսայական ելույթների ճնշման տակ ռազմական դատարանը չհամարձակվեց մահվան դատավճիռ արձակել ծովայինների նկատմամբ: Բանվորական շարժման և զինվորական ելույթների այդ կապը վառ կերպով վկայում էր պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման մասին:

Ցարիզմի տեռորի և պրովոկացիաների պայմաններում բոլշևիկների անձնվեր հերոսական աշխատանքը ցույց տվեց, որ հանձին բոլշևիկների բանվոր դասակարգն ունի մի պարտիա, որն ընդունակ է և պատրաստ գլխավորելու ժողովրդական մասսաներին ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում:

Պարտիան ամեն մի առիթ օգտագործում էր, որպեսզի միջազգային պրոլետարիատին հրազեն դարձներ բոլշևիզմի գաղափարներին և դրանով իսկ սոցիալ-դեմոկրատ բանվորներին օգներ ազատագրվելու օպորտունիստների ազդեցությունից:

Բոլշևիկները մասնակցեցին 1915 թվականի մարտին Բեռնում տեղի ունեցած կանանց Միջազգային սոցիալիստական կոնֆերենցիային, որին ներկա էին 8 երկրների 25 պատվիրակներ: Կոնֆերենցիան հրավիրվեց բոլշևիկ կանանց կազմակերպությունների նախաձեռնությամբ: Պարտիայի ներկայացուցիչներ Ի. Ֆ. Արմանդը և Ն. Կ. Կրուպսկայան աչքի ընկնող դեր խաղացին կոնֆերենցիայում: Բոլշևիկների Կենտրոնական Կոմիտեի պատվիրակությունը հանդես եկավ բանաձևի իր նախագծով, որի մեջ դատապարտեց սոցիալ-շովինիզմը և առաջարկեց ընդունել իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու լոզունգը:

Լենինը, բոլշևիկները մեծ օգնություն էին ցույց տալիս ռևոլյուցիոն երիտասարդության կազմակերպման գործին: Բոլշևիկները հանդես եկան երիտասարդության Միջազգային սոցիալիստական կոնֆերենցիայում, որը նույնպես տեղի ունեցավ Բեռնում, մարտի վերջին: Կոնֆերենցիային մասնակցեցին 10 երկրների ներկայացուցիչներ: Որոշվեց ամեն տարի անցկացնել Միջազգային երիտասարդական օր (ՄՅուԴ):

Թեև այդ երկու կոնֆերենցիաներն էլ ոչ լիովին ընդունեցին բոլշևիկների առաջարկությունները, բայց նրանց ելույթները ուժեղ ազդեցություն թողին միջազգային ռևոլյուցիոն շարժման զարգացման վրա:

1915 թվականի օգոստոսի վերջին Շվեյցարիայի Ցիմմերվալդ գյուղում, Բեռնի մոտակայքում, տեղի ունեցավ Միջազգային սոցիալիստական կոնֆերենցիա: Կոնֆերենցիային մասնակցում էին 11 երկրների 38 պատվիրակներ: Պատվիրակների մեծամասնությունը պատկանում էր ցենտրիստական տարրերին, որոնք համամիտ էին Կաուցկու հայացքներին: Կոնֆերենցիան ընդունեց մանիֆեստ, որի գլխավոր պահանջը պայքարն էր խաղաղության համար: Բայց մանիֆեստում չկար ո՛չ իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու լոզունգը, ո՛չ էլ սեփական կառավա-

*րության պարտության և օպորտունիզմի հետ կապերը լիովին խզելու լոզունգ-
ները։*

*Պարտիան մասնակցեց կոնֆերենցիայի աշխատանքին, թեև այնտեղ գե-
րակշռում էին անհետևողական կամ տատանվող տարրերը։ Բոլշևիկները գըտ-
նում էին, որ նրանց հետ մերձենալը հնարավոր է և անհրաժեշտ սոցիալ-
շովինիստների դեմ պայքարելու համար։ Բայց Լենինն առաջարկում էր իրենց
պլատֆորմում չբավականանալ նրանով, ինչը պիտանի է և ընդունելի այդ
տարրերի համար, այլ քննադատել նրանց տատանումները, նշել նրանց կի-
սատ-պռատությունը և պարզաբանել, որ իմպերիալիստական պատերազմը
քաղաքացիական պատերազմի վերածելը միայն կարող է տալ դեմոկրատա-
կան հաշտություն։*

*Լենինի նախաձեռնությամբ կոնֆերենցիայում կազմակերպվեց ձախ ցիմ-
մերվալդականների խումբ՝ բաղկացած 8 պատվիրակից։ Այդ խումբը առա-
ջադրեց բանաձևի իր նախագիծը, որը հիմնականում պաշտպանում էր լենին-
յան լոզունգները և մի հատուկ հայտարարության մեջ նշում էր մանիֆեստի
թերի լինելը, նրա հեղինակների չցանկանալը կապերը խզել օպորտունիզմից։
Միևնույն ժամանակ խումբը քվեարկեց մանիֆեստի օգտին, որովհետև դա
առաջին քայլն էր պատերազմի դեմ մղած պայքարում։*

*Կոնֆերենցիան վերջանալուց հետո ցիմմերվալդյան ձախ խումբը հա-
տուկ ժողովում կազմակերպորեն ձևավորվեց և ընտրեց ղեկավար օրգան՝ բյու-
րո։ Մնալով ընդհանուր ցիմմերվալդյան միավորման մեջ, խումբը հայտա-
րարեց, որ միջազգային մասշտաբով ինքնուրույն աշխատանք է տանելու
բանաձևի այն նախագծի և մանիֆեստի այն նախագծի հիման վրա, որ ձախ
խմբի անունից առաջարկվել էին կոնֆերենցիայում։ Ձախ խումբը գերմանե-
րեն լեզվով հրատարակեց իր օրգանը՝ «Ֆորբոտե»-ն («Նախագուշակ»)։ Խմբի
առաջավոր ուժը բոլշևիկներն էին, որոնք միակ հետևողական դիրքն էին
գրավում։*

*Ցիմմերվալդյան ձախի շուրջն էլ հենց սկսեց կազմավորվել ինտերնա-
ցիոնալ շարժումը բոլոր երկրներում։ Այդ գործունեության հաջողությունները
երևացին ցիմմերվալդականների միջազգային երկրորդ սոցիալիստական կոն-
ֆերանսում, որը կայացավ 1916 թվականի ապրիլին Շվեյցարիայում, Կին-
տալ գյուղում։ Կոնֆերենցիայում 43 պատվիրակներից ցիմմերվալդյան ձա-
խը ուներ արդեն 12 մարդ, բայց մի շարք հարցերում նա հավաքեց ձայների
մոտ 45 տոկոսը։*

*Բոլշևիկները կատարեցին իրենց ինտերնացիոնալ պարտքը։ Նրանց անձ-
նվեր աշխատանքը նպաստում էր հետագայում բոլոր կապիտալիստական
երկրներում կոմունիստական պարտիաների առաջացմանը։*

## 3. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ:

*Իմպերիալիզմը մարդկությանն ընդհուպ մոտեցրեց սոցիալիստական ռե-
վոլյուցիային։ Նա ռևոլյուցիան դարձրեց օրվա գործնական խնդիր։ Պատե-
րազմն արագացրեց ռևոլյուցիայի նախադրյալների հասունացումը։ Պրոլե-
տարիատի դասակարգային պայքարի նոր պայմանները մարքսիստական
պարտիայից պահանջում էին ռևոլյուցիայի հարցերի նկատմամբ նոր մոտե-*



*ցում, փոփոխված իրադրության նկատմամբ մարքսիզմի հիմնական սկզ-
բունքները ստեղծագործաբար կիրառելու հմտություն։*

*Մարքսիզմի հիմնադիրները բացահայտեցին կապիտալիստական կար-
գերի ծագման, զարգացման և խորտակման օրենքները։ Բայց այն դարա-
շրջանում, երբ ապրում էին Մարքսն ու Էնգելսը, սոցիալիստական ռևոլյու-
ցիան օրվա անմիջական խնդիրը չէր։ Լենինը մարքսիստներից առաջինն էր,
որ տվեց նոր դարաշրջանի խոր վերլուծությունը։ 1916 թվականին Լենինը
գրեց «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» աշխա-
տությունը։ Վերլուծելով իր հավաքած հսկայական կոնկրետ-պատմական
նյութը, Լենինը եկավ այն եզրակացության, որ XX դարի սկզբին կապիտա-
լիզմը գերաճել է նոր ստադիայի՝ իմպերիալիզմի, «գերաճել է և դարձել գա-
ղութները հարստահարելու և երկրագնդի բնակչության հսկայական մեծա-
մասնությունը մի բուռ «առաջավոր» երկրների ձեռքով ֆինանսապես խեղ-
դելու համաշխարհային սիստեմ»* (Երկեր, հատ. 22, էջ 246):

*Իմպերիալիզմը ծայր աստիճան սրեց կապիտալիզմի բոլոր հակասու-
թյունները։ Ամենից առաջ սրվեց կապիտալիզմի հիմնական հակասությունը։
Արտադրությունը ավելի ու ավելի էր դառնում հասարակական, իսկ յուրա-
ցումը մնում էր մասնավոր, արտադրության միջոցները մի բուռ մոնոպո-
լիստների մասնավոր սեփականությունն էին։ Արտադրողական ուժերի զար-
գացման հսկայական առաջադիմությունը օգտակար էր ոչ թե աշխատավոր-
ներին, այլ մոնոպոլիստներին։ Ամենակարող մոնոպոլիաները, որոնց ձեռքին
վիթխարի հարստություններ էին կուտակվել, փաստորեն տնօրինում էին ամ-
բողջ պետական իշխանությունը։ Ամենուրեք ուժեղանում էր քաղաքական
ռեակցիան։ Մոնոպոլիաների տեր ու տնօրինությունը աշխատավորներին բե-
րում էր թանկության հսկայական աճում, գործազրկություն, ուժից վեր հար-
կեր՝ բանակն ու պետական ապարատը պահպանելու համար։ Ճնշման և շա-
հագործման չլսված մեծացումը ծայրահեղորեն սրեց հակասությունը աշխա-
տանքի և կապիտալի միջև, բուրժուազիայի և պրոլետարիատի միջև։*

*Մյուս կողմից, առանձին իմպերիալիստական պետությունների կամ եր-
կրների խմբերի միջև խիստ սրվեցին հակասությունները աշխարհի վերա-
բաժանման համար, ինչը որ հասցրեց համաշխարհային պատերազմի։*

*Եվ, վերջապես, անսահման չափով սրվեցին հակասությունները մի բուռ
իմպերիալիստական պետությունների և բազմաթիվ գաղութների ու կիսագա-
ղութների միջև, որտեղ ստրկացված էին հարյուր միլիոնավոր աշխատավոր-
ներ։ Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը հասցրեց այն
բանին, որ գաղութներում երևան եկավ ազգային պրոլետարիատ՝ ընդունակ
գլխավորելու ժողովրդական մասսաներին։*

*Իմպերիալիզմի ժամանակ բոլոր հակասությունների չլսված սրումով էլ
հենց բնորոշվում է նրա՝ որպես կապիտալիզմի վերջին ստադիայի, բնույթը։
Իմպերիալիզմը,— գրել է Լենինը,— «մեռնող կապիտալիզմն է»։*

*Հենվելով իմպերիալիզմի վերլուծման վրա, Լենինը է՛լ ավելի զարգաց-
րեց սոցիալիստական ռևոլյուցիայի մարքսիստական տեսությունը։ Լենինյան
տեսության հիմնական դրույթները, որոնք զարգացվեցին պատերազմի ժա-
մանակաշրջանում, հետևյալն էին.*

*1. Իմպերիալիզմը ստեղծել է սոցիալիստական ռևոլյուցիայի իրագործե-
լիության օբյեկտիվ նախադրյալներ։ «Իմպերիալիզմը պրոլետարիատի սո-*

ցիալական ռևոլյուցիայի նախօրյակն է», այսպես է բնութագրել Լենինը կապիտալիզմի վերջին ստադիան (նույն տեղը, էջ 250): Բայց ռևոլյուցիաները պատրաստի չեն ծնվում, դրանք չի կարելի արհեստականորեն առաջ բերել կամ ուրիշ երկրից ներմուծել: Ռևոլյուցիան հասունանում է հասարակության ընդերքում, նա աճում է օբյեկտիվորեն հասունացող ճգնաժամերից: Ռևոլյուցիան աներևակայելի է, առանց բնակչության բոլոր խավերն ընդգրկող ընդհանուր քաղաքական ճգնաժամի: Հենց այդպիսի ճգնաժամն էլ առաջ բերեց տվյալ իմպերիալիստական պատերազմը:

Պատերազմը առաջացավ այն պայմաններում, երբ կապիտալիզմը հասավ իր բարձրագույն ստադիային, երբ ձևավորվեց մոնոպոլիաների և ֆինանսական կապիտալի տիրապետությունը, երբ շատ մեծ նշանակություն ձեռք բերեց կապիտալի արտահանումն՝ ապրանքների փոխարեն, սկսվեց աշխարհի տնտեսական բաժանումը միջազգային մոնոպոլիաների կողմից և ավարտվեց աշխարհի տերիտորիալ բաժանումը խոշորագույն կապիտալիստական տերությունների միջև: Պատերազմը ծնունդ առավ իմպերիալիզմից, որը բնորոշվում է բոլոր հակասությունների սրումով: Իմպերիալիստական պատերազմը իր հերթին ծայրահեղորեն սրեց իմպերիալիզմի բոլոր հակասությունները և ջրի երես հանեց դրանք: Դրանով իսկ պատերազմը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դրսևորումն էր ու սկիզբը: Երկրների մեծ մասում նա ստեղծեց ռևոլյուցիոն իրադրություն: Իմպերիալիստական պատերազմը արագացրեց կապիտալիզմի զարգացումը: Լենինը ապացուցեց, որ պատերազմի ժամանակ մոնոպոլիստական կապիտալիզմն սկսել էր դառնալ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմ, մոնոպոլիստներն ավելի ու ավելի էին իրենց ենթարկում պետական իշխանությունը: Դրա հետ միասին պատերազմն այնպես լարեց աշխատավորների բոլոր ուժերը, որ նրանք կանգնեցին երկընտրանքի առաջ՝ կամ մեռնել իմպերիալիզմի իշխանության տակ, կամ ղեկավարությունը հանձնել պրոլետարիատին՝ սոցիալիզմին անցնելու համար:

2. Ռևոլյուցիոն իրադրությունը բնորոշվում է երեք հիմնական հատկանիշներով. առաջին, իրենց տիրապետությունն առաջվա պես շարունակելու անհնարինությունը կառավարող դասակարգերի համար: «Ռևոլյուցիայի առաջացման համար,— գրում էր Լենինը,— սովորաբար բավական չէ միայն, որ «ստորին խավերը չուզենան», այլ պահանջվում է նաև, որ «վերին խավերն էլ չկարողանան» ապրել առաջվա նման» (Երկեր, հատ. 21, էջ 262). երկրորդ, աշխատավոր մասսաների կարիքների ու թշվառությունների խիստ սրում ճգնաժամի հետևանքով. երրորդ, տիրապետող դասակարգերի վարքագծից դժգոհություն, որն արտահայտվում է ժողովրդական լայն մասսաների ակտիվ ելույթներում:

Այդպիսիք են՝ օբյեկտիվ, այսինքն՝ առանձին մարդկանց, պարտիաների, դասակարգերի կամքից անկախ պայմանները, որոնք ստեղծում են ռևոլյուցիոն իրադրություն:

Բայց ամեն մի ռևոլյուցիոն իրադրություն չէ, որ վեր է ածվում ռևոլյուցիայի: Ռևոլյուցիոն իրադրությունը ռևոլյուցիայի վերածվելու համար, օբյեկտիվ պատճառներից բացի, անհրաժեշտ են նաև սուբյեկտիվ պատճառներ, այն է՝ առաջավոր դասակարգի ընդունակությունը՝ ոտքի ելնելու տիրապետող



դասակարգերին տապալելու համար: Իսկ այդպիսի գիտակցություն, այդպիսի պատրաստակամություն կոփվում, նախապատրաստվում և ստեղծվում է, ինչպես ցույց է տվել Լենինը դեռ իր վաղ շրջանի աշխատություններում, բանվոր դասակարգի՝ ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերի վրա կանգնած պարտիայի կողմից:

3. Սոցիալիստական ռևոլյուցիայի համար ամենևին էլ չի պահանջվում, որ պրոլետարիատը դառնա բնակչության մեծամասնությունը, ինչպես այդ պնդում էին կաուցկիականները: Սոցիալիստական ռևոլյուցիան նմանապես մեկ ակտ կամ մեկ ճակատամարտ չէ: Դա դասակարգային մարտերի (տնտեսական, քաղաքական և իդեոլոգիական) մի ամբողջ դարաշրջան է: Լենինը սովորեցնում էր, որ ռևոլյուցիան բաղկացած կլինի բնակչության բոլոր ճնշված և դժգոհ դասակարգերի, խմբերի, տարրերի, ամենից առաջ պրոլետարիատի և նրա դաշնակցի՝ գյուղացիության մի շարք ճակատամարտերից ընդդեմ տիրապետող դասակարգերի, կիսապրոլետարական մասսաների շարժումից՝ ընդդեմ կալվածատիրական, բուրժուական, ազգային և այլ ձևերի ճնշման, գաղութային ժողովուրդների ապստամբությունից և մասսայական պայքարի այլ տեսակներից: Պրոլետարիատի խնդիրն է ղեկավարել այդ բոլոր ճակատամարտերը, մեկ միասնական՝ իմպերիալիզմը տապալելու և սոցիալիստական ռևոլյուցիան իրականացնելու նպատակով: «Ով «մաքուր» սոցիալական ռևոլյուցիայի է սպասում,— գրում էր Լենինը,— նա երբեք այն չի տեսնի: Նա, ով չի հասկանում իսկական ռևոլյուցիան, միայն խոսքով է ռևոլյուցիոներ» (Երկեր, հատ. 22, էջ 479):

4. Իմպերիալիզմի դեմ ուղղված ազգային-ազատագրական շարժումը խարխլում է նրան, թուլացնում է նրա ուժերը և դրանով իսկ ավելի զարգացած երկրների բանվորների համար հեշտացնում գրոհը իմպերիալիզմի վրա: Մյուս կողմից, բանվորների ռևոլյուցիոն պայքարը ապահովում է ճնշված ազգերի ազգային-ազատագրական պայքարի հաջողությունը:

II Ինտերնացիոնալի սնանկացած պարտիաների լիդերները ազգային-ազատագրական շարժումը չէին համարում սոցիալիստական ռևոլյուցիայի բաղկացուցիչ մասը և, այդպիսով, նրան պարտության էին մատնում: Տրոցկիստները, ինչպես և բոլոր ցենտրիստական տարրերը, ժխտում էին ազգային-ազատագրական պատերազմները իմպերիալիզմի դարաշրջանում: Բուխարինը, Պյատակովը նույնպես անհնարին էին համարում ազգային-ազատագրական պատերազմները իմպերիալիզմի պայմաններում և հանդես էին գալիս ազգերի ինքնորոշման ծրագրային պահանջի դեմ:

Լենինն ապացուցեց, որ իմպերիալիզմի ժամանակ ազգային-ազատագրական պատերազմների չընդունելը իրականում հանդիսանում է իմպերիալիզմի պաշտպանություն և նրա արդարացում, նշանակում է հաշվից դուրս գցել ռևոլյուցիայի այնպիսի մի լուրջ ռեզերվ, որպիսին ճնշված ժողովուրդների պայքարն է իմպերիալիզմի դեմ: Լենինը 1916 թվականին գրում էր, որ պարտիան հանդես է գալիս «հանուն ազգային բոլոր շարժումները իմպերիալիզմի դեմ սոցիալիստական ռևոլյուցիայի նպատակներով օգտագործելու» (նույն տեղը, էջ 462):

5. Իմպերիալիզմը համաշխարհային սիստեմ է: Այդ պայմաններում ամենևին էլ պարտադիր չէ, որ ռևոլյուցիան տեղի ունենա առավել բարձր

զարգացած կապիտալիստական երկրում: Իմպերիալիստական շղթան կճեղք-
վի նրա ամենաթույլ օղակում, համապատասխան օբյեկտիվ և սուբյեկտիվ
նախադրյալների՝ կապիտալիզմի զարգացման որոշ մակարդակի, պրոլետա-
րիատի ռևոլյուցիոն պրոլետարական մասսաներին, առաջին հերթին
գյուղացիության ղեկավարելու ընդունակ նրա պարտիայի առկայության պայ-
մաններում: Այնտեղ, որտեղ հակասություններն ավելի սուր են արտահայտ-
վում, և որտեղ առկա են նախապատրաստված ուժեր, այնտեղ էլ հենց կարող
է կատարվել սոցիալիստական ռևոլյուցիա:

6. Իմպերիալիզմը և իմպերիալիստական պատերազմը նոր իրադրու-
թյուն ստեղծեցին: Դրան համապատասխան, Լենինը, ելնելով մարքսիստական
տեսությունից, վերանայեց կապիտալիստական բոլոր երկրներում կամ երկրը-
ների մեծ մասում սոցիալիզմի միաժամանակյա հաղթանակի վերաբերյալ
Մարքսի և Էնգելսի դրույթը, որով բոլոր երկրների մարքսիստները ղեկավար-
վում էին մինչև պատերազմը: Այդ դրույթից հետևում էր, որ սոցիալիզմի
հաղթանակը մեկ, առանձին վերցրած, երկրում անհնարին է: Դա ճիշտ էր
մինչիմպերիալիստական կապիտալիզմի ժամանակաշրջանի համար, երբ նրա
զարգացումը տեղի էր ունենում վերընթաց գծով: Այն ժամանակ սոցիալիս-
տական ռևոլյուցիայի հաջողությունը կարող էր ապահովվել կապիտալիստա-
կան բոլոր երկրների կամ նրանց մեծ մասի պրոլետարիատի միաժամանակյա
ռևոլյուցիոն ելույթով ընդդեմ կապիտալի տիրապետության: Այդ դրությունն
արդեն սկսեց չհամապատասխանել իմպերիալիստական կապիտալիզմի դա-
բաշրջանին: Այն հնացել էր և փոխարինում էր պահանջում:

Իմպերիալիզմի ուսումնասիրման հիման վրա Լենինը ապացուցեց, որ
կապիտալիզմի տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափու-
թյունը իմպերիալիզմի պայմաններում ընդունել է առանձնապես կատաստրո-
ֆիկ և թռիչքաձև բնույթ: Ելնելով այդ օրենքից, Լենինը եկավ այն եզրակա-
ցության, որ իմպերիալիզմի ժամանակաշրջանում սոցիալիզմը չի կարող
հաղթել միաժամանակ բոլոր երկրներում, որ սոցիալիզմի հաղթանակը
հնարավոր է սկզբում մեկ, առանձին վերցրած երկրում կամ մի քանի երկր-
ներում: Լենինը այդ հայացքները շարադրեց «Եվրոպայի Միացյալ Նահանգ-
ների լոզունգի մասին» (1915 թվական) և «Պրոլետարական ռևոլյուցիայի
ռազմական ծրագիրը» (1916 թվական) հոդվածներում:

«Տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունը,
—գրում էր Լենինը,—կապիտալիզմի անպայման օրենքն է: Այստեղից
հետևում է, որ սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է սկզբնապես մի
քանի կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած, կապիտալիստական
երկրում» (Երկեր, հատ. 21, էջ 435):

«Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը» հոդվածում անդ-
րադառնալով այդ հարցին, Լենինը ընդգծում էր.

«Կապիտալիզմի զարգացումը տարբեր երկրներում վերին աստի-
ճանի անհամաչափ կերպով է կատարվում: Այլ կերպ չի էլ կարող լի-
նել ապրանքային արտադրության պայմաններում: Այստեղից բխում է
այն անխախտ եզրակացությունը, որ սոցիալիզմը չի կարող հաղթել
բոլոր երկրներում միաժամանակ: Նա կհաղթի սկզբում մեկ կամ մի
քանի երկրներում, իսկ մնացած երկրները մի որոշ ժամանակ կմնան
բուրժուական կամ մինչբուրժուական» (Երկեր, հատ. 23, էջ 94):



7. Սոցիալիստական ռևոլյուցիայում հաղթանակած պրոլետարիատը
կհաստատի պրոլետարիատի դիկտատուրա, առանց որի անհնարին է
դասակարգերի ոչնչացումն ու սոցիալիզմի կառուցումը: Տարբեր երկրներում՝
նայած տնտեսական զարգացման մակարդակին, դասակարգերի հարաբերակ-
ցությանը, պատմական տրադիցիաներին, հնարավոր է սոցիալիզմին անցնե-
լու ձևի այս կամ այն յուրահատկությունը:

«Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է,
բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրա-
հատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլե-
տարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ,
հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերա-
փոխումների այս կամ այն տեմպի մեջ», գրում էր Լենինը (Երկեր,
հատ. 23, էջ 81):

Նշելով, որ անցումը կապիտալիզմից կոմունիզմին չի կարող չտալ քա-
ղաքական ձևերի հսկայական առատություն և բազմազանություն, Լենինը դրա
հետ միասին ընդգծում էր, որ այդ բոլոր անցումնային ձևերի էությունը մեկ
է՝ պրոլետարիատի դիկտատուրա:

«Պրոլետարիատի, որպես մինչև վերջը միակ ռևոլյուցիոն դասա-
կարգի, դիկտատուրան,—գրում էր Լենինը,—անհրաժեշտ է բուրժուա-
զիայի տապալելու և նրա կոնտրռևոլյուցիոն փորձերը ետ մղելու հա-
մար» (Նույն տեղը, էջ 80):

8. Մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակը առաջ կբերի իմպերիալիստնե-
րի ձգտումը՝ տապալելու սոցիալիստական պետությունը: Այդ պատճառով էլ
պրոլետարիատը պետք է զենքը ձեռքին պաշտպանի սոցիալիստական պե-
տությունը: «Այդ,— գրում էր Լենինը մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի
մասին «Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը» հոդվածում,—
պետք է առաջ բերի ո՛չ միայն բախումներ, այլև մյուս երկրների բուրժուա-
զիայի ձգտումը՝ ջախջախելու սոցիալիստական պետության հաղթական պրո-
լետարիատին: Այս դեպքերում պատերազմը մեր կողմից օրինական և արդա-
րացի կլիներ» (Նույն տեղը, էջ 94): Այսպիսով, սոցիալիստական ռևոլյուցիա-
յի լենինյան տեսության բաղկացուցիչ մասը, որն ուղղակի բխում է մեկ երկ-
րում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության վերաբերյալ ուսմունքից,
Լենինի դրույթն է՝ սոցիալիստական պետության զինված պաշտպանության,
հաղթանակած սոցիալիզմի պաշտպանության համար մղվող արդարացի պա-
տերազմների վերաբերյալ:

Դա նոր տեսական դրույթ էր, սոցիալիստական ռևոլյուցիայի նոր, լե-
նինյան տեսություն:

Սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսությունը հետագա քայլ
հանդիսացավ մարքսիզմի ստեղծագործական զարգացման մեջ, լենինյան այն
գաղափարների զարգացման մեջ, որոնք շարադրվում են «Սոցիալ-դեմոկրա-
տիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» աշխատությու-
նում և այլ երկերում: Լենինի տեսությունը հաշվի էր առնում իմպերիալիզմի
ստեղծած նոր իրադրությունը, համաշխարհային պրոլետարիատի ռևոլյուցիոն
պայքարի նոր փորձը:

Լենինյան տեսությունը բոլոր երկրների բանվոր դասակարգին զինեց
ռևոլյուցիոն շարժիչ ուժերի, նրա հաղթանակի պայմանների և նրա զարգաց-

*ման հեռանկարների հստակ պատկերացումով։ Սոցիալիստական ռևոլյուցիա-
յի լենինյան տեսության ուժն այն է, որ նա ազատություն է տալիս բանվոր-
ների նախաձեռնությանը սեփական ազգային բուրժուազիայի դեմ մղվող պայ-
քարում, յուրաքանչյուր երկրի բանվոր դասակարգին ցույց է տալիս իմպե-
րիալիզմի առաջացրած անհաշիվ աղետներից փրկվելու ուղին։*

## 4. ՓԵՏՐՎԱՐՅԱՆ ԲՈՒՐԺՈՒԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ։ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԶԻՆՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ։ ԵՐԿԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԿՐՈՒՄ։

*Պատմության օբյեկտիվ ընթացքը հաստատեց, թե որքան իրավացի էր
Լենինը, պնդելով, որ պատերազմն ստեղծել է ռևոլյուցիոն իրադրություն։
Պատերազմն առանձնապես ծանր անդրադարձավ հետամնաց Ռուսաստանի
վրա, որը ամենաթույլ օղակն էր իմպերիալիզմի համաշխարհային շղթայում։
Պատերազմի երկու տարին բավական եղավ ցարական Ռուսաստանի ուժերն
ընկճելու համար։ 1916 թվականին քաղաքներում սով սկսվեց։ Պատերազմը
մղելու համար փողը չէր բավականացնում։ Ցարիզմը հարկադրված էր գրեթե
8 միլիարդ ռուբլու օտարերկրյա փոխառություններ կնքել։ Դա ուժեղացրեց
ցարիզմի կախումը անգլիական և ֆրանսիական իմպերիալիզմից։ Ազգային
ինքնուրույնությանը կորուստ էր սպառնում։ Կալվածատերերն ու բուրժուա-
զիան սեփական ժողովրդի դեմ աջակցություն էին փնտրում օտարերկրյա իմ-
պերիալիստներից։ Պրոլետարիատի առաջ խնդիր էր ծառացած փրկել երկիրը
քայքայումից և Ռուսաստանը՝ օտարերկրյա իմպերիալիստների կիսագաղութը
դառնալու սպառնալիքից։*

*Բոլշևիկների պարտիան հասկանում էր, որ ռևոլյուցիան շեմքին է։ Դեռ
1915 թվականին Լենինը «Մի քանի թեզիսներ» հոդվածում տվեց գալիք ռևո-
լյուցիայի խոր վերլուծությունը։ Նա ցույց տվեց, որ առաջիկա ռևոլյուցիան
իր բնույթով լինելու է բուրժուա-դեմոկրատական։ Նրա անմիջական խնդիրը
մնում է ցարիզմի տապալումը, ճորտատիրության բոլոր և ամեն տեսակ մնա-
ցորդների վերացումը։ 1905—1907 թվականների առաջին բուրժուա-դեմոկրա-
տական ռևոլյուցիայից հետո անցած տասը տարվա ընթացքում շատ բան էր
փոխվել։ Ավելի էր խորացել դասակարգային շերտավորումը գյուղում, պրո-
լետարիատն աճել էր և ամրացել, իմպերիալիստական պատերազմը երկրում
սրել էր բոլոր հակասությունները, մերկացրել դրանք։ Պատմական զարգա-
ցումը բարենպաստ պայմաններ էր ստեղծել բուրժուա-դեմոկրատական ռևո-
լյուցիան է՛լ ավելի արագությամբ սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու
համար։ Այդ էր նախ և առաջ ռուսական երկրորդ ռևոլյուցիայի տարբերու-
թյունը առաջին ռևոլյուցիայից։*

*Երկրում ուժգին վերելք էր ապրում բանվորական շարժումը։ 1916 թվա-
կանին տեղի ունեցավ 1500 գործադուլ։ Գործադուլ արին մեկ միլիոնից ավե-
լի բանվորներ, այսինքն՝ երկու անգամ ավելի, քան նախորդ տարում։*

*Բանվորական շարժման ազդեցության տակ հաճախակի դարձան զին-
վորների ելույթները։ Ռազմաճակատում հաճախ ամբողջ գնդեր հրաժարվում
էին հրամանատարության հրամանները կատարելուց։ Հազարավոր զինվորներ
թողնում էին ռազմաճակատը և անցնում թիկունք, դասալքության պատիժը*



*գերադասելով իրենց շահերի համար խորթ պատերազմում զոհվելուց։ Ռազ-
մաճակատի շատ հատվածներում ուժեղացավ եղբայրացումը։*

*Գյուղում գյուղացիները սկսեցին գրավել կալվածատիրական հացն ու ին-
վենտարը, իսկ հաճախ նաև հրկիզում էին կալվածքները, տեղի կալվածա-
տերերին դուրս քշելով իրենց ազնվական բներից։*

*Շարժման մեջ մտան նաև ճնշված ազգերը։ 1916 թվականի կեսերին Մի-
ջին Ասիայում և Ղազախստանում բռնկվեց ապստամբություն, որն ընդգրկեց
միլիոնավոր մարդկանց։ Ռևոլյուցիոն ճգնաժամը բացահայտորեն հասունա-
ցել էր։*

*Ռևոլյուցիայի մոտեցումից անհանգստացած՝ իշխող դասակարգերը սկսե-
ցին նախազգուշական միջոցներ ձեռք առնել։ Ցարական կառավարությունը
որոշեց ցրել Պետական դուման և իշխանությունը հանձնել ռազմական դիկտա-
տորի ձեռքը։ Ռևոլյուցիայի դեմ պայքարելու նպատակով իրեն ազատություն
տալու համար ցարիզմը գաղտնի բանակցություններ սկսեց Գերմանիայի հետ
սեպարատ հաշտություն կնքելու միջոցով պատերազմը դադարեցնելու մասին։*

*Գերմանիայի հետ հաշտության նախապատրաստումը առաջացրեց Ան-
տանտի իմպերիալիստների և ռուսական իմպերիալիստների տագնապը։ Ան-
տանտը վախենում էր կորցնել ռուսական բանակի օգնությունը, իսկ ռուսա-
կան բուրժուազիան վախենում էր, որ կդադարի իր գրպանը մտնող շահույթ-
ների հոսանքը և որ չեն իրագործվի իր իմպերիալիստական մտահղացումնե-
րը։ Ռուսական բուրժուազիան, որին պաշտպանում էին անգլո-ֆրանսիական
և ամերիկյան իմպերիալիստները, իր հերթին որոշեց ռևոլյուցիան կանխել
ցարին փոխելու միջոցով։ Նախատեսվում էր ձերբակալել Նիկոլայ II-ին,
ստիպել նրան գահից հրաժարվելու՝ հօգուտ իր փոքրահասակ որդու, իսկ որ-
պես ռեգենտ-կառավարիչ նշանակել մեծ իշխան Միխայիլին՝ ցարի եղբորը։*

*Երկու դավադրությունն էլ ուղղված էին ռևոլյուցիայի դեմ, բայց վերջի-
նիս մոտեցումը նրանք կանխել չկարողացան։ Օրեցօր աճում էր գործադուլա-
յին ալիքը։ 1917 թվականի հունվարին գործադուլ արին 250 հազար, իսկ
փետրվարին՝ ավելի քան 400 հազար բանվորներ։ Իրադրությունը ծայրահե-
ղորեն շիկացած էր։ Ամեն մի խոշոր գործադուլ կարող էր վերաճել ռևոլյու-
ցիայի։*

*Առանձնապես լարված իրադրություն էր ստեղծվել մայրաքաղաքում։
Փետրվարի 17-ին Պուտիլովի գործարանում արհեստանոցներից մեկը գործա-
դուլ արեց։ Ադմինիստրացիան որոշեց փետրվարի 22-ից փակել ձեռնարկու-
թյունը։ Հետևյալ օրը, փետրվարի 23-ին, տոնում էին Միջազգային կանանց
օրը։ Բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեն բանվորներին կոչ արեց այդ օրը
նշել քաղաքական գործադուլով։ Պուտիլովի բանվորները, ցույց կազմակեր-
պելով, շարժվեցին դեպի քաղաքի կենտրոնը։ Ճանապարհին մյուս գործարան-
ների բանվորները միանում էին պուտիլովցիներին։ Այդ օրը գործադուլ արին
50 ձեռնարկությունների համարյա 90 հազար բանվորներ։ Ցույցին մասնակ-
ցեցին մթերքի համար հերթի կանգնած կանայք։ Հայտնվեցին պլակատներ
«Հաց», «Կորչի՛ պատերազմը», «Կորչի՛ ինքնակալությունը» պահանջներով։*

*Հետևյալ օրը ցույցը ծավալվեց նոր ուժով։ Մայրաքաղաքում գործադուլ
էին անում 200 հազար մարդ։ Բոլշևիկները որոշեցին շարունակել գործադու-
լը, այն դարձնել ընդհանուր գործադուլ և վերածել ապստամբության։ Փետր-
վարի 25-ը նշանավորվեց ընդհանուր գործադուլով։ Սկսվեցին ընդհարումներ*

ոստիկանության հետ։ Եղան սպանվածներ և վիրավորներ։ Ցարական իշխանությունները, երկյուղ կրելով իրադարձությունների զարգացումից, ռազմաճակատից համալրում պահանջեցին։ Նիկոլայ II-ը Զորակայանից ուղիղ գծով հաղորդեց հրաման՝ «Հրամայում եմ վաղը ևեթ մայրաքաղաքում դադարեցնել անկարգությունները...»։ Փետրվարի լույս 26-ի գիշերը պահնորդական բաժանմունքը մասսայական ձերբակալություններ կատարեց բանվորական թաղամասերում։ Նրան հաջողվեց ձերբակալել բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեի 5 անդամների։

Փետրվարի 26-ի առավոտից բոլշևիկների կոչով բանվորները քաղաքական գործադուլից անցան ապստամբության։ Բանվորները զինաթափում էին ոստիկանությանը և իրենք զինվում։ Ոստիկանությունը կրակ բացեց ցուցարարների վրա։ Միայն Զնամենսկայա հրապարակում սպանվեց մոտ 40 մարդ։

Ռևոլյուցիոն իրադարձությունների ազդեցության տակ զինվորներն սկսեցին տատանվել։ Պետերբուրգի կոմիտեն զինվորներին կոչ արեց հարել ռևոլյուցիային. «...միայն բանվոր դասակարգի և ռևոլյուցիոն բանակի եղբայրական դաշինքը,— ասվում էր թռուցիկներում,— ազատագրություն կբերի ստրկացած ժողովրդին և վերջ կտա եղբայրասպան անմիտ պատերազմին»։ Պետրոգրադի պահեստային զորամասերում գտնվում էին մայրաքաղաքի շատ բանվորներ, որոնք կապերը չէին կտրել իրենց ձեռնարկությունների հետ։ Բանվորները թափանցում էին զորանոցները, զինվորներին համոզելով պաշտպանել ռևոլյուցիան։ Պավլովյան գնդի վաշտերից մեկը հրաժարվեց կրակել ժողովրդի վրա։

Հետևյալ օրը, փետրվարի 27-ին, ապստամբությունն ընդգրկեց ամբողջ քաղաքը։ Ապստամբ բանվորները գրավեցին զինանոցը և զինվեցին։ Զինվորներն սկսեցին անցնել ռևոլյուցիայի կողմը։ Երեկոյան դեմ կայազորի ավելի քան 60 հազար զինվորներ միացան ապստամբ ժողովրդին։ Այդպես կազմավորվեց բանվորների և զինվորական շինելներ հագած գյուղացիների դաշինքը։ Բանտերը գրավվեցին և քաղաքական կալանավորները ազատ արձակվեցին։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոն մանիֆեստ լույս ընծայեց՝ կոչ անելով վերջ տալ ցարիզմին և ստեղծել ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն, որը պետք է հաստատի դեմոկրատական ռեսպուբլիկա, մտցնի ութժամյա աշխատանքային օր, բռնագրավի կալվածատիրական հողը հօգուտ գյուղացիության և ամբողջ աշխարհի բանվորների հետ միասին հասնի իմպերիալիստական պատերազմի անհապաղ դադարեցմանը։

Բոլշևիկների պարտիան միակն էր, որը ժողովրդին դիմեց ռևոլյուցիոն պլատֆորմով և մասսաներին կոչ արեց վերջնականապես ջախջախել ցարիզմը։ Բոլշևիկների կողմից ոգեշնչված ժողովրդական մասսաների հարվածների տակ խորտակվեց Ռոմանովների միապետությունը։

Ապստամբության հաղթանակի օրը բոլշևիկները բանվորներին կոչ արին ստեղծել բանվորական դեպուտատների Սովետներ։

«Հաղթելու համար մեզ հարկավոր է կազմակերպվածություն, մեզ հարկավոր է շարժման ղեկավար կենտրոն,— այսպես էին գրում բոլշևիկները թռուցիկում։—

Գործարաններում անհապաղ ձեռնամուխ եղեք գործարանային գործադուլային կոմիտեների ընտրություններին։ Դրանց ներկայացուցիչները կկազմեն բանվորների դեպուտատների Սովետ, որը կազմակերպական դեր կստանձնի շարժման մեջ, որը կստեղծի ժամանակավոր կառավարություն» («Революционное движение в России после свержения самодержавия», ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի հրատ., 1957, էջ 5)։



Փետրվարի 27-ին երեկոյան Տավրիկյան պալատում հայտնվեցին ձեռնարկություններում և զորամասերում ընտրված առաջին պատվիրակները։ Բանվորների ու զինվորների մարտական միասնությունը, որ սկսվել էր Պետրոգրադի փողոցներում ու հրապարակներում, ավարտվեց միասնական ռևոլյուցիոն կազմակերպության՝ բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետի ստեղծմամբ, ի տարբերություն 1905 թվականի ռևոլյուցիայի, երբ Սովետները առանձին-առանձին էին։

Պետրոգրադում ռևոլյուցիոն ապստամբության հաղթանակը պաշտպանություն գտավ ամբողջ երկրում կատարված ռևոլյուցիոն հեղաշրջմամբ։ Բոլոր նահանգներում և գավառային քաղաքների մեծ մասում ընտրվեցին բանվորների և զինվորների Սովետների դեպուտատներ։ Շատ շրջաններում՝ Կենտրոնական-արդյունաբերական մարզում, Ուրալում, Դոնբասում, Սովետները սեփական նախաձեռնությամբ առանց տերերի հետ համաձայնեցնելու մտցնում էին ութժամյա աշխատանքային օր, ցրում էին ոստիկանությունը և ստեղծում Կարմիր գվարդիա՝ ձեռնարկությունը պահպանելու և ռևոլյուցիան պաշտպանելու համար, հեռացնում էին ցարական դատավորներին և իրենց միջից ընտրում ժողովրդական դատավորներ։ Սովետները հաճախ պաշտոնանկ էին անում այն գործարանային վարչությանը, որն աչքի էր ընկնում բանվորների շահագործման առանձին դաժանությամբ, և մտցնում էին բանվորական վերահսկողություն։ Կայազորները ենթարկվում էին Սովետներին։ Բայց ոչ-արդյունաբերական շրջաններում ևս Սովետները հանդես էին գալիս որպես իշխանություն, իրենց վրա էին վերցնում պարենային դժվարությունների դեմ պայքարելու գործը, բանվորներին պաշտպանում էին ձեռնարկատերերի հետ ունեցած կոնֆլիկտներում։ Սովետները, որպես բանվորների ու գյուղացիների դաշինքի օրգաններ, ապստամբության օրգաններ էին և ռևոլյուցիայում հաղթանակած բանվորների ու գյուղացիների իշխանության օրգաններ։

Բայց պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան մարմնավորող Սովետների կողքին ստեղծվեց ժամանակավոր կառավարություն, որը բուրժուազիայի դիկտատուրան էր ներկայացնում։ Մայրաքաղաքում ռևոլյուցիայի հաղթանակի մասին առաջին իսկ լուրերի հայտնվելուն պես Պետական դուման որոշեց ընտրել ժամանակավոր կոմիտե, որին հանձնարարեց «կարգ հաստատել» մայրաքաղաքում, Կոմիտեն բոլորովին էլ չէր մտածում իշխանությունն իր ձեռքը վերցնել։ Կոմիտեի առաջին քայլն այն եղավ, որ նա պատվիրակություն ուղարկեց ռազմաճակատ՝ Նիկոլայ II-ի մոտ, որ համոզի նրան գահից հրաժարվել հօգուտ իր որդու։ Այդ պահանջը պաշտպանեցին բոլոր ռազմաճակատների հրամանատարները, որոնք Նիկոլայ II-ին հայտարարեցին, որ իրենք բանակի համար չեն երաշխավորում։ Ցարը ստորագրեց մի մանիֆեստ, որով նա իր և իր որդու անունից հրաժարվում էր իշխանությունից հօգուտ իր եղբայր Միխայիլի։

Այսպիսով, բուրժուազիայի առաջին իսկ քայլը միապետությունը պահպանելու ձգտումն էր։ Բայց իշխանության հարցը Պետական դումայի պատերի ներսում չէր որոշվում. այդ հարցը որոշեցին ապստամբած բանվորներն

ու զինվորները: Երբ Պետական դումայի ժամանակավոր կոմիտեի անդամ,
կադետ Միլյուկովը փորձեց միտինգներից մեկում հաղորդել միապետություն
պահպանելու մասին, բուռն ցասում համակեց ապստամբ ժողովրդին: Բուր-
ժուազիան որոշեց իշխանությունը վերցնել իր ձեռքը, որ թույլ չտա ռևոլյու-
ցիայի խորացումը:
Պետական դումայի ժամանակավոր կոմիտեն որոշեց բանակցություննե-
րի մեջ մտնել բանվորների և զինվորների դեպուտատների Պետրոգրադի Սո-
վետի հետ: Սովետում և առանձնապես նրա նախագահությունում գերակշռում
էին էսեռներն ու մենշևիկները: Բուրժուական պարտիաներից ոչ պակաս վա-
խենալով ռևոլյուցիայի զարգացումից, էսեռներն ու մենշևիկները իրենց հեր-
թին շտապում էին շուտափույթ դադարեցնել ժողովրդի ռևոլյուցիոն պայքա-
րը: Հարցը Սովետի նիստում չդնելով, էսեռական և մենշևիկյան լիդերները
գաղտնաբար, իրենց համախոհների շրջանում, որոշեցին պաշտպանել Պետա-
կան դումայի ժամանակավոր կոմիտեի ստեղծած բուրժուական կառավարու-
թյունը: Մասսաների վստահությունը չկորցնելու համար էսեռներն ու մենշևիկ-
ները խուսափում էին այդ կառավարությանը բացահայտորեն մասնակցելուց:
Այդ համաձայնության հիման վրա մարտի 2-ին ստեղծվեց ժամանակա-
վոր կառավարություն իշխան Գ. Ե. Լվովի նախագահությամբ: Մինիստրների
մեծամասնությունը պատկանում էր օկտյաբրիստների և կադետների պար-
տիաներին: Կառավարության կազմի մեջ մտավ տրուդովիկ Կերենսկին, որին
ոչ ոք որպես պատվիրակ չէր ուղարկել, բայց որին բուրժուազիան կառավա-
րության մեջ մտցրել էր մասսաներին խաբելու համար, որպես «դեմոկրա-
տիայի պատանդ»,— ինչպես գրում էր բուրժուական մամուլը: Տեղերում ժողո-
վուրդը հեռացրեց նահանգապետներին և իսպրավնիկներին: Նրանց փոխարեն
ժամանակավոր կառավարությունը նշանակեց հին, ցարական օրենքների հա-
մաձայն ընտրված զեմստվային վարչությունների ներկայացուցիչներին, և իր
կոմիսարներին՝ որպես կանոն կադետներից և օկտյաբրիստներից: Կառավա-
րությունը ձգտում էր որքան կարելի է շատ բան պահել պետական հին ապա-
րատից:
Այդպես երկրում հաստատվեց երկիշխանություն՝ ժամանակավոր կառա-
վարություն և Բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետ: Սովետի
էսեռա-մենշևիկյան լիդերները իշխանությունը կամովին զիջեցին բուրժուա-
զիային, պարտավորվելով աջակցել բուրժուական ժամանակավոր կառավա-
րությանը: Ստացվել էր երկու դիկտատուրաների՝ բուրժուազիայի դիկտա-
տուրայի և պրոլետարիատի ու գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական
դիկտատուրայի մի չափազանց ինքնատիպ միահյուսում:
Բուրժուազիայի կողմից պետական իշխանության գրավումը բացատրվում
է մի շարք հանգամանքներով:
Փետրվարյան ռևոլյուցիան շեշտակի բեկում էր ցարիզմի անօրինությու-
նից և տեռորից դեպի լայն քաղաքական ազատություն: Տասնյակ միլիոնա-
վոր մարդիկ, որոնք մինչև այդ չէին մասնակցել քաղաքականությանը, դրա-
նում չէին փորձվել, միանգամից ներքաշվեցին քաղաքական գործունեության
մեջ: Այնպիսի մանրբուրժուական երկրում, ինչպիսին Ռուսաստանն էր, քա-
ղաքականության մեջ ներքաշված այդ մարդկանց գլխավոր զանգվածը կազ-
մում էր մանր բուրժուազիան, որը տատանվում էր բուրժուազիայի և պրոլե-
տարիատի միջև: Դա իր վճռական ազդեցությունն ունեցավ բանվորական լայն



շրջանների վրա: «Մանրբուրժուական վիթխարի ալիքը հեղեղել է ամեն ինչ,
ճնշել է գիտակից պրոլետարիատին ո՛չ միայն իր թվական մեծությամբ, այլև
գաղափարապես, այսինքն՝ քաղաքականության նկատմամբ ունեցած մանր-
բուրժուական հայացքներով վարակել, ընդգրկել է բանվորների խիստ լայն
շրջաններ»,— գրում էր Լենինը (Երկեր, հատ. 24, էջ 55): Մանրբուրժուական
հոսանքն իր հերթին որոշեց Սովետների կազմը, նրանցում մեծամասնություն
տալով մանրբուրժուական պարտիաներին: Այն բանի հետևանքով, որ քաղա-
քական թատերաբեմում երևան եկան միլիոնավոր մանրբուրժուական մաս-
սաներ, էսեռներն ու մենշևիկները ժամանակավորապես գերակշռություն
ստացան Սովետներում: Դրանով է բացատրվում, թե ինչու հաղթանակած
բանվորներն ու գյուղացիները իշխանությունը հանձին իրենց Սովետների կա-
մովին հանձնեցին բուրժուազիայի ներկայացուցիչներին:
Այն ժամանակ, երբ բոլշևիկները մասսաների գլուխն անցած մարտնչում
էին ցարիզմի դեմ, էսեռներն ու մենշևիկները շտապում էին օգտվել ժողովր-
դի հաղթանակից և ռևոլյուցիոն ալիքի վրա հենված հասնել ղեկավարության:
Իշխանությունը բուրժուազիայի կողմից գրավելու մյուս պատճառը պրո-
լետարիատի և գյուղացիության անբավարար կազմակերպվածությունն ու
գիտակցականությունն էր: Ցարիզմի ռեպրեսիաները իրենց ամբողջ ծանրու-
թյամբ ընկնում էին բանվորական կազմակերպությունների վրա: Բոլշևիկների
պարտիայի ղեկավարները մեծ մասամբ գտնվում էին բանտերում, աքսորում
կամ էմիգրացիայում: Լենինը հարկադրված էր ապրել արտասահմանում: Նրա
կապը Ռուսաստանի հետ խիստ դժվարացել էր: Իսկ բուրժուազիայի քաղա-
քական կազմակերպությունները չէին հալածվում: Պատերազմի ժամանակ
բուրժուազիան տնտեսապես և քաղաքականապես ամրացավ, այն ժամանակ
նա ավելի էր կազմակերպված, քան ժողովրդական մասսաները: Ցարիզմի
ռեպրեսիաների հետևանքով պրոլետարիատն ավելի անկազմակերպ գտնվեց:
Նրա քաղաքականապես ավելի հասունացած մասը զորակոչվել էր բանակ,
մասամբ զոհվել ռազմաճակատում: Զորակոչվածների փոխարեն գյուղից
եկել նոր մարդիկ: Նրանց վերադաստիարակման
ձեռնարկություններ էին
համար ժամանակ էր հարկավոր:
Բուրժուազիայի հաղթանակի գործում իր դերը խաղաց նաև օտարերկրյա
կապիտալիստների օգնությունը:

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1914—1918 թվականների համաշխարհային իմպերիալիստական պատե-
րազմը իմպերիալիզմի հակասությունների ծնունդն էր: Պատերազմը ծագեց
կապիտալիզմի զարգացման անհամաչափության, աշխարհի վերաբաժանման
համար մոնոպոլիստների պայքարի և ռևոլյուցիոն շարժումը ճնշելու նրանց
ձգտման հետևանքով:
Պատերազմը II Ինտերնացիոնալի բոլոր պարտիաների ստուգումն էր:
Պատերազմի ժամանակ սոցիալ-օպորտունիզմը վերաճեց սոցիալ-շովինիզմի:
II Ինտերնացիոնալի պարտիաների մեծ մասը դավաճանեց սոցիալիզմին,
հանդես եկավ ի պաշտպանություն իմպերիալիզմի և դրանով իսկ պատասխա-
նատվություն է կրում մարդկության առջև արյունահեղ պատերազմի հրեշա-

վո՛ր հետևանքների համար։ II Ինտերնացիոնալը կրախի ենթարկվեց։ Միայն բոլշևիկների պարտիան էր, որ ցույց տվեց սոցիալիզմի գործին հավատարմության և մասսաների մեջ տարվող ռևոլյուցիոն աշխատանքի օրինակ, մասսաներին, այդ թվում նաև բանակին ռևոլյուցիայի համար նախապատրաստելու պայքարի օրինակ։ Միայն բոլշևիկյան պարտիան տվեց իմպերիալիստական պատերազմի դեմ պայքարելու ճիշտ լոզունգներ՝ հանուն պատերազմող յուրաքանչյուր երկրի բանվոր դասակարգի կողմից գոյություն ունեցող կառավարության տապալման։ Պարտիան է՛լ ավելի զարգացրեց մարքսիզմը, այն հարստացնելով իմպերիալիզմի վերաբերյալ Լենինի ուսմունքով, մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի ուսմունքով։

Պատերազմն անհաշիվ աղետներ բերեց ժողովուրդներին։ Պատերազմի ժամանակ ժողովուրդները տվեցին 10 միլիոնից ավելի սպանված և մոտ 20 միլիոն վիրավոր։ Պատերազմն ուժեղացրեց իմպերիալիզմի բոլոր հակասությունները։ Նա կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ցայտուն արտահայտությունն էր։ Պատերազմն ակնբախորեն ցույց տվեց, թե ուր է տանում իմպերիալիզմի տիրապետությունը։ Բայց կապիտալիզմի զարգացումը չի դադարում պատերազմի ժամանակաշրջանում ևս։ Պատերազմն արագացրեց կապիտալիզմի զարգացումը և մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի։ Դրանով իսկ պատերազմն ուժեղացրեց ռևոլյուցիայի օբյեկտիվ նախադրյալները։ Լենինը գրում էր, որ պատերազմը հանդիսացավ ռևոլյուցիայի ամենակարող «ռեժիսյորը»։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան հաստատեց պարտիայի՝ Լենինի մշակած լոզունգների ճշտությունը։ Ռևոլյուցիան դարձավ իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածման սկիզբը։ Ռևոլյուցիան ցույց տվեց, թե որքան ճիշտ էր պարտիայի դիրքը, որ նկատի ուներ սեփական կառավարության պարտությունը։ Ցարիզմի պարտությունը հեշտացրեց մասսաների ռևոլյուցիոն ելույթը, որոնք և տապալեցին ինքնակալությունը։ Ռևոլյուցիան հաստատեց թե որքան ճիշտ ու ժամանակին էր բոլշևիկների կազմակերպական կապերի խզումը մենշևիկներից, մենշևիկների վտարումը պարտիայից։

Փետրվարյան ռևոլյուցիայում բուն մասսաների ստեղծագործությամբ ստեղծվեցին բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետներ՝ պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դեմոկրատիայի օրգաններ։ Բայց Սովետների մեծ մասում գերակշռություն ունեցող մենշևիկները, էսէռների հետ միասին, դավաճանեցին բանվորների ու գյուղացիների շահերին և պետական իշխանությունը հանձնեցին բուրժուազիայի դիկտատուրայի օրգան ժամանակավոր կառավարությանը։ Երկրում հաստատվեց երկիշխանություն։ Պարտիայի առաջ խնդիր ծառացավ հասնել այն բանին, որ ամբողջ իշխանությունն անցնի Սովետներին։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան իրականացրեց պարտիայի մերձավորագույն խնդիրը՝ ցարիզմի տապալումը և հնարավորություն բացեց կենսագործելու նրա վերջնական նպատակը՝ կապիտալիզմի վերացումը և սոցիալիզմի հաստատումը։

# ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ

## ԳՈՐԾԻՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Հայրենական էլեկտրասարքաշինությունը թերևս արդյունաբերության ամենաերիտասարդ ճյուղն է և իր ինտենսիվ զարգացումը ստացել է Հայրենական Մեծ պատերազմի օրերին ու հետպատերազմյան տարիներին։

Մոտիկ անցյալի տնայնագործական արտադրությունից էլեկտրագործիքաշինությունը դարձել է արդյունաբերության բարձր մեքենայացված ճյուղերից մեկը, որը կիրառում է ժամանակակից տեխնոլոգիա, արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդներ և արժեքավոր նոր նյութեր։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հոգատարության շնորհիվ գործիքաշինական գործարաններն այնքան են հագեցվել տեխնիկայով, բարձր որակյալ պատրաստված բանվորներով և ինժեներատեխնիկական կադրերով, որ կարողացան յուրացնել կոնստրուկտիվորեն բարդ ու ճշտության բարձր դասի էլեկտրաչափիչ գործիքներ և 1958 թվականին, 1951 թվականի համեմատությամբ հինգ անգամ ավելացնել դրանց թողարկումը։

Վերջին երկու տասնամյակում արդյունաբերության բոլոր ճյուղերը այնպիսի մեծ զարգացում են ստացել, որ գործիքաշինությունը նրա հետևից չի հասնում, ետ է մնում։ Ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը, վակուումային ու ռադիոտեխնիկական արդյունաբերությունը և էլեկտրոնիկան ներկայացնում են լայն դիապազոնով չափման սահմաններ, բարձր ճշտություն և մեծ հաճախականություններ, ներառյալ և ռադիոհաճախականություններ ունեցող գործիքների պահանջարկը։

Տեխնիկայի որոշ նոր ճյուղերի՝ ատոմային էներգետիկայի, կիսահաղորդիչների և այլնի զարգացումը պահանջում է մեծ զգայունության գործիքներ։ Տեխնիկայի մի շարք ճյուղերի կողմից պահանջվող էլեկտրաչափիչ գործիքները պետք է դիմացկուն լինեն բարձր մեխանիկական ներգործությունների նկատմամբ, թրթռումների, ցնցումների և հարվածների դեպքում։ Իսկ Արևելքի և տաք կլիմա ունեցող երկրների հետ (Հնդկաստան, Չինաստան, Վիետնամ և այլն) զարգացող առևտրական կապերը գործիքաշինական արդյունաբերության առաջ խնդիր են դրել՝ այնպիսի գործիքներ ստեղծել, որոնք բավարարեն բարձր խոնավությամբ և ջերմաստիճանների լայն դիապազոնով ծանր կլիմայական պայմաններում կատարվող աշխատանքներին։

Գործիքաշինության իրենց պահանջներն են ներկայացնում նաև արդյունաբերության միջանկյալ ճյուղերը, ինչպես, օրինակ, արտադրական պրոցեսների ավտոմատացումն ու մեքենայացումը, էլեկտրական մեթոդներով ոչ էլեկտրական մեծությունների չափումները և այլն։ Մինչդեռ գործիքները և, մասնավորապես, էլեկտրաչափիչ գործիքները հանդիսանում են «տեսողության

-և լսողության օրգաններ», այդ պատճառով էլ գործիքաշինական արդյունա-
բերությունը պետք է ավելի արագ զարգանա և առաջ անցնի արդյունաբերու-
թյան ու տեխնիկայի մյուս ճյուղերից:
Գործիքաշինական տեխնիկայի ետ մնալը չի կարող վնաս չհասցնել երկրի
ժողովրդական տնտեսությանը, չի կարող չարգելակել արդյունաբերության և
գիտության մյուս ճյուղերի զարգացումը:
Հազիվ թե սխալվենք, եթե ասենք, որ ժողովրդական տնտեսությունը էլեկ-
տրաչափիչ գործիքներով բավարարվում է միջին հաշվով ոչ ավելի, քան 40—
45%, իսկ կոնստրուկցիայով և էլեկտրականապես ավելի բարդ, մեծ զգայու-
նություն և էլեկտրաէներգիայի սեփական փոքր սպառում ունեցող էլեկտրա-
չափիչ գործիքներով ոչ ավելի, քան 10—15%:
Ներկայումս հայրենական սարքաշինական արդյունաբերությունը թողար-
կում է սերիական արդյունաբերության ընդամենը 260 անուն էլեկտրաչափիչ
գործիքներ: Իսկ կոպիտ հաշվումը ցույց է տալիս, որ արդյունաբերության և
գիտա-հետազոտական ինստիտուտների ժամանակակից պահանջները բավա-
րարելու համար անհրաժեշտ են առնվազն 860 անուն էլեկտրաչափիչ գործիք-
ներ: Դրա վրա պետք է ավելացնել, որ թողարկվող էլեկտրաչափիչ գործիք-
ներից շատերը արդեն հնացել են, մոդեռնացման պահանջ են զգում, քանի
որ մեծ չափեր ունեն, նյութատար են և իրենց տեխնիկական պարամետրե-
րով այնքան էլ գոհացուցիչ չեն:
ՍՄԿԿ XX համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց գործիքաշինա-
կան արդյունաբերության ետ մնալուն և ցուցումներ տվեց մոտակա տարի-
ներում էլեկտրաչափիչ գործիքների արդյունաբերությունն անհրաժեշտ ծա-
վալով ընդլայնելու համար:
Ինչպես հատուկ է գործիքաշինությանը, այն կարող է հաջողությամբ
զարգանալ միայն բարձր զարգացած տեխնիկայի պայմաններում:
Հայաստանի ծանր արդյունաբերության աննախընթաց աճը ստեղծեց գոր-
ծիքաշինության հաջող զարգացման բոլոր պայմաններն ու հնարավորություն-
ները: Ուստի պատահական չէ, որ ՍՄԿԿ XXI համագումարին ընկեր Ն. Ս.
Խրուշչովի զեկուցման թեզիսներում նախատեսվում է գործիքաշինության ար-
դյունաբերության լայն արմատավորում Հայաստանում, ընդ որում մեքենա-
շինության հետ հավասարապես գործիքաշինությանը հատկացվում է առաջա-
տար արդյունաբերության տեղը:
1959—1965 թվականներին ռեսպուբլիկայում նախատեսված է կառուցել և
գործարկել էլեկտրատեխնիկական արդյունաբերության 11 գործարան, այդ
թվում՝ Լենինականի և Կիրովականի գործիքաշինական գործարանները: Կա-
ռուցվող գործարաններից երկուսը մոտ են գործիքաշինական տեխնիկային:
Մնացած գործարանները նույնպես ազգակից են, լրացնում և նպաստում են
գործիքաշինական արդյունաբերության զարգացմանը: Դրանք կիսահաղոր-
դիչների ու համուղղիչների, ճշգրիտ տեխնիկական քարերի և նոր մետա-
լուրգիայի գործարաններն են:
Գործիքաշինության և, հատկապես, էլեկտրաչափիչ տեխնիկայի գործիքա-
շինության զարգացմանը նպաստում և բարենպաստ պայմաններ են ստեղծում
նաև ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական և քիմիական գործարանները, ինչ-
պես Երևանի կաբելի գործարանը, «պոլիվինիլացետատ» գործարանը, էջմիած-
նի պլաստմասսաների գործարանը, ալյումինի գործարանը:



Նշելով գործիքաշինական զարգացման բարենպաստ պայմանները, միա-
ժամանակ չի կարելի չարձանագրել ռեսպուբլիկայում նոր կառուցվող գործա-
րանների դանդաղ շահագործման հանձնումը և նոր արտադրական կարողու-
թյունների գործարկումը՝ աշխատող գործարանների համար նրանց անբավա-
րար ֆինանսավորման հետևանքով:
Ժողովրդական տնտեսության համար խիստ կարևոր նոր գործիքների նո-
մենկլատուրաների թողարկման մասին վերադաս օրգանների մի շարք որո-
շումներ չեն կատարվել այն պատճառով, որ գործիքաշինության գործարան-
ների արդյունաբերական շինարարության կապիտալ ներդրումները բավարար
չափով չեն ապահովում արտադրական բազայի պատշաճ զարգացումը: Դրա
պատճառը հանդիսանում է նաև այն, որ ռեսպուբլիկայում բացակայում է
նորմալացված դետալների, հանգույցների և կիսաֆաբրիկատների կոոպերա-
ցումը: Հենց այսօր կարելի է և պետք է իրացնել էլեկտրագործիքաշինության
այնպիսի դետալների և հանգույցների կոոպերացումը, ինչպես՝ կետանշիչնե-
րի, կարկասների, սպիրալային զսպանակների, սեղմակների, պլաստմասսա-
յին դետալների, օժանդակ նյութերի, ամրակման նյութի և մյուս նորմալաց-
ված դետալների պատրաստումը: Անհրաժեշտ է ինչքան կարելի է ավելի
արագորեն իրացնել Ժողտնտխորհի որոշումը արտադրության այնպիսի ճյու-
ղերի զարգացման և կենտրոնացման մասին, ինչպես՝ չուգունի ձուլումը, գու-
նավոր մետաղի ձուլումը ճնշման տակ և մագնիսների ձուլումը: Այդ միջո-
ցառումները խիստ կարևոր են ո՛չ միայն գործարանների շահագործման
հանձնումը արագացնելու համար, այլև, որ ամենից գլխավորն է, հնարավո-
րություն են տալիս նպատակահարմար կերպով օգտագործելու սարքավորման
պարկն ու նյութերը, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը: Արդեն այսօր,
առանց հատուկ ծախսումների, կարելի է կոոպերացնել և կենտրոնացնել կե-
տանշիչների պատրաստումը էլեկտրաչափիչ գործիքների գործարանում, սպի-
րալային զսպանակների պատրաստումը Երևանի գործիքաշինական գործա-
րանում, ամրակման նյութը ժամացույցի գործարանում և Վ. Ի. Լենինի
անվան հայէլեկտրագործարանում: Հայաստանում գործիքաշինության արդյու-
նաբերության զարգացման համար հատկապես կարևոր է շահագործման
հանձնել փոշու մետալուրգիայի գործարանը: Այդ գործարանի արտադրանքը,
միաժամանակ էժանացնելով գործիքների համար անհրաժեշտ մի շարք դե-
տալների ու հանգույցների տեխնոլոգիական պրոցեսները, զգալիորեն կբա-
րելավի նրանց որակը, կբարձրացնի նրանց ճշտությունը:
Նոր մետալուրգիայի գործարանի շահագործման հանձնումը թույլ կտա
և կնպաստի նոր տեխնիկայի արտադրության արագ յուրացմանը գործիքաշի-
նական գործարաններում և, որ խիստ էական է, մի շարք գործարաններում
կազատի սարքավորման արտադրական կարողություններ: Անհիմն պնդումներ
չարած լինելու համար իբրև օրինակ բերենք այն փաստը, որ նոր մետա-
լուրգիայի գործարանը շահագործման հանձնելուց հետո միայն էլեկտրաչափիչ
գործիքների գործարանում կազատվեն 5 խառատային հաստոց, 2 ֆրեզերա-
յին հաստոց և 3 գայլիկոնիչ հաստոց: Զգալիորեն կարագացվի ժողովրդա-
կան տնտեսության համար անհրաժեշտ արտադրանքի երեք նոր տեսակների
յուրացումը:
Նոր գործիքաշինական գործարանների շահագործման հանձնումը և աշ-
խատող գործիքաշինական գործարանների ընդարձակումը կպահանջեն մեծ

*քանակությամբ որակյալ բանվորական անձնակազմ և ինժեներա-տեխնիկական կադրեր: Մինչդեռ գործիքաշինական արդյունաբերության մեջ միշտ էլ զգացվել է որակյալ կադրերի կարիքը:*

*ՍՄԿԿ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները հատկապես նշում և ժողտնտխորհների ուշադրությունն են հրավիրում գործիքաշինական գործարաններին կից հատուկ կոնստրուկտորական բյուրոների և հատուկ կոնստրուկտորական ու տեխնոլոգիական բաժինների հետագա ընդարձակման և զարգացման անհրաժեշտության վրա:*

*Ժողովրդական տնտեսությանը չափիչ գործիքներով լիովին բավարարելու պահանջը գործիքաշինական արդյունաբերությանը թելադրում է հետևյալ խնդիրների լուծումը.*

*ա) էլեկտրագործիքաշինության տեսական պրոբլեմների մշակումը.*

*բ) գործիքաշինական տեխնիկայի ժամանակակից պահանջներին համապատասխանող գործիքների նոր տիպերի մշակումը.*

*գ) գործիքների հնացած տիպերի մոդեռնացումը.*

*դ) հանգույցների և դետալների ստանդարտացումն ու նորմալացումը.*

*ե) տեխնոլոգիական պրոցեսների տիպացումը.*

*զ) գործիքաշինության բարձր պահանջներին բավարարող էլեկտրատեխնիկական նյութերի նոր տեսակների մշակումը.*

*է) առաջավոր տեխնոլոգիայի ու աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ մեթոդների արմատավորումը և արտադրական պրոցեսների ավտոմատացումը:*

*Ռեսպուբլիկայում կազմակերպված գիտա-հետազոտական ինստիտուտները և հատուկ կոնստրուկտորական բյուրոները (Երևանում, Կիրովականում և Լենինականում) կոչված են լուծելու վերևում նշված խնդիրները: Դրա հետ միասին անհրաժեշտ է ընդլայնել գործարաններին կից կոնստրուկտորական և տեխնոլոգիական բաժինները: Այդ կազմակերպությունները սովորաբար լրացնում են միմյանց, և նրանց ճիշտ համագործակցությունը ամենաէֆեկտիվ արդյունքը կտա թե՛ ըստ որակի, թե՛ ըստ ժամանակի:*

*Գործիքաշինական տեխնիկայի առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու, ինչպես նաև գործիքաշինության համար բանվորական ու տեխնիկական կադրերի որակավորման գործում շատ կարևոր նշանակություն ունի էքսպերիմենտալ ցեխի կամ բաժնի առկայությունը, նրա առանձնացված արտադրական և լաբորատոր սարքավորումով: Փոխադրումների փոքր արժեքը և էլեկտրաչափիչ գործիքների մասսայական արտադրության մեծ էֆեկտիվությունը աննպատակահարմար են դարձնում միատիպ գործիքների արտադրության կրկնումը:*

*Այդ նկատառումներով ՍՍՌՄ Պետպլանը, ընթացիկ տարում, մշակել է ինչպես գործող, այնպես էլ նախատեսվող գործարանների առարկայական մասնագիտացման նախագիծը: Յուրաքանչյուր գործարանի համար ճշտիվ որոշված և ցուցակագրված են գործիքների որոշակի նոմենկլատուրան և որոշակի տիպը:*

*Միաժամանակ նախատեսվում է համախառն արտադրանքի ծավալի նոր աճ 1965 թվականի համար՝ ՍՍՌՄ Պետպլանի կողմից հաստատված ճյուղային արդյունաբերական շինարարության կապիտալ ներդրումների 1959—1965 թթ. կոնտրոլ թվերի բազայի վրա: Դրան համապատասխան ճյուղային*



*գործարանների համախառն արտադրանքի թողարկումը 1965 թ., 1958 թ. համեմատությամբ, կաճի միջին հաշվով 2,25 անգամ, այդ թվում՝ էլեկտրաչափիչ գործիքների գործարանում՝ 3,6 անգամ:*

*Մասնագիտացման համաձայն գործարանը պետք է յուրացնի փոքր և միջին չափերի վահանային ու փոխադրովի էլեկտրաչափիչ գործիքների կոնստրուկցիաներն ու նրանց թողարկումը, ճշտության բարձր դասի սահմաններին դիապազոնում՝ 0,5—1 և 1,5 դասերից ոչ ավելի ցածր: Ներկայումս գործարանում պատրաստվող գործիքների կոնստրուկցիան ստեղծվել է ընդամենը 5—6 տարի սրանից առաջ և համապատասխանում է գործիքաշինական տեխնիկայի վերջին նվաճումներին: Այնուամենայնիվ, արդեն այսօր այդ գործիքները, իրենց տեխնիկական տվյալներով միշտ չէ, որ բավարարում և համապատասխանում են արդյունաբերության ու, հատկապես, գիտության պահանջներին, վերջին տարիներում նրանց խոշոր աճի հետևանքով:*

*Այդ պատճառով այս էլեկտրաչափիչ գործիքները պահանջում են էական կոնստրուկտիվ փոփոխություններ, հաշվի առնելով զգայունության բարձրացումը 5—10 անգամ և ճշտության դասի բարձրացումը մինչև 0,5:*

*Համանման վիճակում է գտնվում նաև Երևանի գործիքաշինական գործարանը, որը դեռ երիտասարդ է (երկու տարի է ինչ գործում է), բայց արդեն թողարկում է գործիքներ՝ պիրոմետրական միլիվոլտմետրեր և պրոֆիլային տիպի լոգոմետրեր, վահանային և փոխադրովի կոնստրուկցիաներ, որոնք ունեն գրեթե երեսուն տարվա վաղեմիություն: Գործիքները հիմնականում վատ չեն իրենց պարամետրերով, բայց կոնստրուկտիվորեն հնացել են, մեծածավալ և մետաղատար են, պահանջում են էական մոդեռնացում, հաշվի առնելով նրանց թեթևացումը՝ մագնիսական ու գունավոր մետաղների պակասեցումն ու տնտեսումը, ինչպես նաև նրանց որակը (աշխատանքի հարատևությունը) բարելավելու համար:*

*Սերիական թողարկման էլեկտրաչափիչ գործիքների մոդեռնացման հարցերի լուծումը միայն վերևում բերված երկու գործարաններում կտա մոտ 6 մլն ռուբլու տարեկան տնտեսում:*

*Հայաստանի գործիքաշինության հետագա զարգացման նպատակով, մեկ տարի առաջ, էլեկտրաչափիչ գործիքների գործարանին կից կազմակերպվել է Հայաստանի գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալը արդյունաբերական էլեկտրոնիկայի և գործիքների բաժին: Նրա աշխատանքը խոչընդոտվում է աշխատանքային տարածություններով, որոնք գործարանի կողմից չեն կարող հատկացվել: Մինչդեռ արդեն հասունացել է ո՛չ միայն հատուկ կոնստրուկտորական բաժնի, այլև բյուրոյի կազմակերպման հարցը, որը կընդգրկեր ռեսպուբլիկայի գործիքաշինական արդյունաբերության բոլոր հարցերի կոմպլեքսը, ներառյալ նաև բարձր որակյալ ինժեներա-տեխնիկական աշխատողների նախապատրաստումը՝ ստեղծելով Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի հետ սերտ համագործակցության պոտենցիալ հնարավորությունը՝ երիտասարդ մասնագետների պատրաստման գործում:*

*Հատուկ կոնստրուկտորական բյուրոն պետք է ունենա սեփական արտադրական էքսպերիմենտալ բազա և լաբորատորիաներ՝ նոր տեխնիկայի նմուշներ ստեղծելու համար, մշակելով նրանց լրիվ տեխնոլոգիական ցիկլը:*

*Ստեղծագործական գիտա-հետազոտական ինստիտուտների և բազաների*

ստեղծումը կլինի մեր լավագույն պատասխանը ռեսպուբլիկան բարձր պարգևով՝ Լենինի շքանշանով պարգևատրելու առթիվ: Բարձր պարգևը մեր մեջ առաջացնում է մեծ հպարտության զգացմունք, բայց միաժամանակ մեզ պարտավորեցնում է ու բարձրացնում պատասխանատվության զգացմունքը վաղվա աշխատանքային օրվա համար:

Ա. ԴԱՎԻԴՈՎ

Երևանի էլեկտրաչափիչ գործիքների գործարանի գլխավոր ինժեներ

# ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐ

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունն անդուլ հոգատարություն են ցուցաբերում մեր Հայրենիքի աշխատավորների բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ: ՍՄԿՊ XXI համագումարին տրվելիք ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում պարտիան խնդիր է դնում առաջիկա 10—12 տարում մեր երկրում վերացնել բնակարանների պակասը, քաղաքային բնակչության բնակարանային ապահովվածության նորման հասցնել՝ մեկ մարդուն ինը քառակուսի մետրի: Միայն Սովետական երկրում և միայն Կոմունիստական պարտիան կարող են առաջադրել ու լուծել այդպիսի համարձակ խնդիր: Այդ խնդրի իրականացման համար պետք է կառուցել և շահագործման հանձնել մոտավորապես 1.100 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, որից 113 միլիոնը ՍՍՌՄ Պետպլանը նախատեսել է կառուցել 1957—1958 թվականներին, 660 միլիոնը՝ 1959—1965 թվականներին, իսկ մնացած 327 միլիոնը՝ 1966—1968 թթ. ժամանակամիջոցում:

Չնայած առաջադրված խնդրի ամբողջ վիթխարիությանը, պարտիայի և ժողովրդի ջանքերով հաջողությամբ լուծվում է այն: Դրա վկայությունն են վերջին երկու տարվա աշխատանքի ցուցանիշները: 1957 թվականին պետական կապիտալ ներդրումների և բնակչության միջոցների հաշվին Սովետական Միությունում կառուցվել են 51 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ՝ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ նախատեսված 47 միլիոն քառակուսի մետրի դիմաց:

1958 թվականի պլանով նախատեսված է է՛լ ավելի զարգացնել բնակարանային շինարարությունը: Նախատեսված է ընթացիկ տարում պետական կապիտալ ներդրումների և բնակչության միջոցների հաշվին կառուցել 62,2 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, որից 40 միլիոնը պետական բյուջեի հատկացումների հաշվին:

Բնակարանային շինարարությունը առանձնապես լայն թափ է ստացել Հայկական ՍՍՌ-ում:

1959—1965 թթ. կոնտրոլ թվերի նախագծում նախատեսված է պետական բնակարանային շինարարությանը հատկացնել 3.026 միլիոն ռուբլի, որը կկազմի ժողովրդական տնտեսության շին-մոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալի 26,2 տոկոսը: Պետական կապիտալ ներդրումների հիշյալ ծավալը թույլ կտա շահագործման հանձնել երեք միլիոն 930 հազար քառակուսի



մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ 3,8 անգամ ավելի, քան նախորդ յոթ տարիներին: Ինչպես հայտնի է, պետական պլանով 1952-ից մինչև 1958 թվականը կառուցվել է մեկ միլիոն 109 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Բացի դրանից, լրացուցիչ չկենտրոնացված միջոցների ներգրավման հաշվին բնակարանային շինարարության համար կօգտագործվի մոտավորապես 201 միլիոն ռուբլի: Այդ միջոցներով նույն ժամանակաշրջանում կկառուցվի մոտավորապես 127 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Պետական պլանի հատկացումների հաշվին կատարվելիք բնակարանային շինարարությունից բացի նախատեսվում է բնակարանային շինարարության գործում ներդնել նաև բնակչության խնայողությունները:

Նախատեսված է 1959—1965 թթ. բնակչության միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ ռեսպուբլիկայի քաղաքներում, բանվորական ավաններում, սովխոզներում, անտառարդյունաբերական տնտեսություններում կառուցել և շահագործման հանձնել 834 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ, որը 2,3 անգամ ավելի է 1952-ից մինչև 1958 թվականը ռեսպուբլիկայի բնակչության կառուցածից: Բացի դրանից, կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան տարեկան կկառուցեն մոտավորապես 10—11 հազար սեփական բնակելի տուն:

Յոթնամյակի համար նախատեսված բնակարանային շինարարության ծավալը թույլ կտա մինչև 1965 թվականի վերջը ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում, 1958 թվականի համեմատությամբ, բնակարանային ֆոնդը մեծացնել 81 տոկոսով, որը 21 տոկոսով ավելի կլինի, քան Սովետական Միության մեջ այդ ժամանակամիջոցում նախատեսված ընդհանուր աճը (60 տոկոս):

Տարակույս չկա, որ այդ ծրագրի կատարումը լարված ջանքեր կպահանջի: Պարտիական ու սովետական կազմակերպությունները պետք է օգնեն շինարարներին՝ կենսագործելու բնակարանային շինարարության ծրագիրը, վճռականապես և արագ վերացնելու թերությունները և անհապաղ լուծելու չլուծված հարցերը, ինչպիսիք, ցավոք սրտի, դեռ շատ կան: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ շինարարական կազմակերպությունները ապահովեն նախատեսված մեծ ծրագրի լրիվ կատարումը և, երկրորդ, իջեցնեն շինարարության արժեքը, որպեսզի բաց թողնված միջոցներով աշխատավորներին ավելի շատ բնակարաններ տրվեն: Ահա այն գլխավոր խնդիրները, որոնց կատարման նպատակին պետք է ուղղվի պարտկազմակերպությունների կազմակերպական և քաղաքական-մասսայական ամբողջ աշխատանքը:

Սակայն պետք է նշել, որ մեզանում պարտիայի և կառավարության այդ կարևորագույն որոշման կատարման գործում դեռևս շատ թերություններ կան: Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության տարեկան պլանը 11 ամսում կատարվել է 83,8 տոկոսով, իսկ շահագործման հանձնելու պլանը՝ 54,6 տոկոսով: Զգալիորեն բարձրացել է նաև շինարարության արժեքը:

Ինչո՞վ են բացատրվում այս էական թերությունները:

Ամենից առաջ պետք է նշել, որ մեր ռեսպուբլիկայում չափազանց դանդաղ են լուծվում բնակարանային, կուլտուր-կենցաղային և կոմունալ շինարարության պատվիրատուների ֆունկցիաները աշխատավորների դեպուտատ-

ների քաղաքային Սովետներին հանձնելու հարցերը, ինչպես դա սահմանված
է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1957 թվականի հուլիսի
31-ի որոշմամբ։ Դրա հետևանքով քաղաքներում շարունակվում է բնակարա-
նային շինարարության մանրատումը շատ պատվիրատուների և շինարարա-
կան կազմակերպությունների միջև։

Օրինակ, Երևանի քաղսովետը քաղաքում կառուցվող բնակարանների
միայն 17,5 տոկոսի պատվիրատուն է, իսկ Լենինականի և Կիրովականի քաղ-
սովետները միասին վերցրած՝ 7,45 տոկոսի և այլն։ Այս հանգամանքը միջոց-
ները մանրատում է բազմաթիվ օբյեկտների միջև և զգալիորեն աճեցնում չա-
վարտված շինարարությունը, ձգձգում այն և բարձրացնում նրա արժեքը։

Միջոցների մանրատումը բազմաթիվ պատվիրատուների միջև հանգեց-
նում է նաև այն բանին, որ յուրաքանչյուր պատվիրատու տուն է կառուցում իր
ցանկացած, հաճախ ոչ շատ խնայողական անհատական նախագծերով։ Դրա
հետևանքով բնակարանային շինարարության արժեքը շարունակում է մնալ
բարձր։

ՍՄԿԿ XX համագումարը դիրեկտիվ տվեց բնակարանային շինարարու-
թյան արժեքը 1956—1960 թվականներին իջեցնել առնվազն 20 տոկոսով։
Պարտիայի այդ կարևոր դիրեկտիվը կարելի է իրականացնել անարտադրողա-
կան ծախսերի վերացման, նյութերի խստագույն խնայողության, աշխատան-
քի լավագույն կազմակերպման, աշխատատար պրոցեսները առավելագույն
չափով մեքենայացնելու և շինարարության ինդուստրիալ մեթոդներ կիրառելու
դեպքում։

Հայաստանի վիճակագրական վարչության տվյալներով շահագործման
հանձնված բնակելի տարածության մեկ քառակուսի մետրի միջին արժեքը
ռեսպուբլիկայում 1955 թվականին կազմում էր 1,440, 1956 թվականին՝
1,596, 1957 թվականին՝ 1,806, իսկ ըստ պլանի 1958 թվականին՝ 1,457
ռուբլի։

Հանրահայտ է, որ շինարարության արժեքը հնարավոր չէ իջեցնել, եթե
այն չի կատարվում արագ տեմպերով և սահմանված ժամկետներին։

Միևնույն ժամանակ չպետք է կարծել, թե բնակարանային շինարարու-
թյան այդպիսի վիթխարի ծրագիր հնարավոր է սահմանված ժամկետներին
իրագործել առանց աշխատատար պրոցեսները առավելագույն չափով մեքենա-
յացնելու և շինարարության ինդուստրիալ մեթոդները ամենալայն մասշտաբ-
ներով կիրառելու։

Վերջին տարիներս մեզանում որոշ բան է արվել հողային աշխատանքնե-
րը, նյութերի հորիզոնական և ուղղահայաց փոխադրումը, քարի տաշումը և
այլ աշխատանքներ մեքենայացնելու ուղղությամբ։ Բայց այս ամենը բավա-
կան չեն և դեռ շատ բան պետք է արվի հատկապես հարդարման, սան-տեխ-
նիկական աշխատանքները մեքենայացնելու համար։ Հենց այդ աշխատանք-
ներն էլ ամենից շատ ժամանակ և ջանքեր են խլում։ Խոսելով աշխատատար
պրոցեսների մեքենայացման մասին, անհրաժեշտ է հիշել, որ մեքենայացումը
պետք է նպաստի շինարարության ինքնարժեքի իջեցմանը, իսկ դրան կարելի
է հասնել մեխանիզմները ավելի լավ, բարձր արտադրողականությամբ օգտա-
գործելու և մեքենայացման ծախսերը սիստեմատիկաբար նվազեցնելու մի-
ջոցով։

Սակայն այլ ռեսպուբլիկաների շինարարական կազմակերպությունների հա-



մեմատությամբ, մեզանում դեռևս շատ դրամական միջոցներ են ծախսվում աշխատանքների մեքենայացման վրա։ Շինմոնտաժային աշխատանքների մեկ միլիոն ռուբլուն ընկնող մեքենայացման ծախսերը մեզ մոտ կազմում են 100—115 հազար ռուբլի, իսկ Գլավմոսստրոյում՝ միայն 82—85 հազար ռուբլի, թեև մեքենայացման աստիճանը այնտեղ զգալիորեն ավելի բարձր է։

Շինարարության մեջ մեծ նշանակություն ունի աշխատանքի լավ կազմակերպումը և բոլոր բանվորների բարձր արտադրողական աշխատանքը։ Բայց, դժբախտաբար, շինարարական շատ կազմակերպություններում, հատկապես զանազան օժանդակ աշխատանքներում, շատ աշխատուժ է վատնըվում։

Բավական է ասել, որ տրեստների շատ կառավարիչներ, աշխատամասերի պետեր, աշխղեկներ և նույնիսկ կառույցների պարտիական և արհմիութենական կազմակերպություններ չեն հետաքրքրվում և հաշվի չեն առնում բնակարանային շինարարության աշխատատարությունը, մինչդեռ այն պետք է լինի շինարարական կազմակերպությունների աշխատանքի գլխավոր ցուցանիշներից մեկը։ Մոսկվայի և Լենինգրադի առաջավոր կազմակերպություններում բնակելի շենքի մեկ խորանարդ մետրի կառուցման աշխատատարությունը կազմում է 1,2—1,3 մարդ-օր, իսկ փորձնական-ցուցադրական կառույցներում այն հասել է 0,5—0,6 մարդ-օրվա։ Պարտիական կազմակերպությունների և շինարարական կազմակերպությունների խնդիրն է սոցիալիստական լայն մրցություն ծավալել բնակելի շենքերի կառուցման աշխատատարությունը նվազեցնելու համար։

Մեր պայմաններում, երբ բնակելի շենքերի պատերը կառուցվում են բնական քարից, անհատական աշխատանքները պետք է սկսվեն միջհարկային ծածկերի, տանիքածածկերի, սանդղավանդակների և սանդղահրապարակների, աղբատար ու օդափոխիչ խողովակների, միջնորմների, պատուհանների շրջանակների, ցանկապատերի և այլ աշխատանքների անցնելիս։

Ընդսմին անհրաժեշտ է շենքի այդ բոլոր մասերը հավաքել (տեղում մոնտաժել) պատրաստի երկաթբետոնե կոնստրուկցիաներից, որը՝ հաջող տեմպեր ապահովելու հետ մեկտեղ կտնտեսի զգալի քանակությամբ նյութեր։ Օրինակ, սահմանված է, որ տիպային միջնակարգ դպրոցի երկաթե ցանկապատի համար հարկավոր է 30 տոննա մետաղ, իսկ նույնպիսի երկաթբետոնե ցանկապատի համար՝ միայն երեք տոննա մետաղ։ Մեր կառույցների պարտիական և արհմիութենական կազմակերպությունների մերձավորագույն խնդիրն է՝ ընդօրինակել Միության շինարարական առաջավոր կազմակերպությունների փորձը, որոնք վերջին տարիներս հաջողությամբ կիրառում են բնակելի շենքերի հարդարման աշխատանքների ինդուստրիալ մեթոդները։

Ջափազանց առաջադիմական այդ մեթոդը թույլ կտա ծեփագործի, ներկարարի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2—3 անգամ։

Շինարարության արժեքն իջեցնելու և ժամկետները կրճատելու համար, ինչպես նաև բնակարանային շինարարության արժեքի հաշվարկման միասնական կարգ սահմանելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ միութենական ռեսպուբլիկաների մինիստրների Սովետներին առաջարկվեց՝ մինչև 1958 թվականի հուլիսի 1-ը ՍՍՌՄ Պետշինի հետ համաձայնեցնելով հաստատել տարբեր տիպի բնակելի տների, բնակելի մակերեսի մեկ քառակուսի մետրի գների շրջանցված գնացուցակներ և խոշոր

*քաղաքների բնակարանային շինարարության պլանավորման համար սահմա-
նել բնակելի տարածության մեկ քառակուսի մետրի միջին արժեքները։*

*Երևան քաղաքի բնակելի տարածության մեկ քառակուսի մետրի միջին
արժեքը 1959 թվականի համար սահմանված է 1,449 ռուբլի, իսկ 1960 թվա-
կանի համար՝ 1,422 ռուբլի։ Իհարկե, աշխատանքները լավ կազմակերպելու
դեպքում կարելի է իջեցնել այդ, քանի որ միատեսակ, կամ նույնիսկ որոշ
չափով ավելի վատ պայմաններում գտնվող մյուս քաղաքների համեմատու-
թյամբ, այստեղ առկա է որոշ ռեզերվ։ Օրինակ, Էստոնիայի մայրաքաղաք
Տալլինի համար բնակելի տարածության մեկ քառակուսի մետրի միջին ար-
ժեքը սահմանված է 1,271 ռուբլի, Չելյաբինսկի համար՝ 1,340 ռուբլի և այլն։*

*Բնակչությանը բնակարաններով ապահովելու խնդրի լուծման գործում
մեծ նշանակություն ունի անհատական բնակարանային շինարարության ընդ-
լայնումը, որն իրագործվում է բնակչության սեփական միջոցների հաշվին,
պետական վարկի օգնությամբ։ «ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունը
զարգացնելու մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1957
թվականի հուլիսի 31-ի որոշմամբ նախատեսվում է երկրում անհատական
բնակարանային շինարարության տեսակարար կշիռը բնակարանային շինա-
րարության ընդհանուր ծրագրում հասցնել 35 տոկոսի։ Այս կարևոր խնդրի
կատարման համար պետք է պայքարեն բոլոր պարտիական կազմակերպու-
թյունները։*

*Մեզ մոտ անբավարար է կատարվում անհատական բնակարանային շի-
նարարության պլանը։*

*1958 թվականին ռեսպուբլիկայում պետք է կառուցվեին 170 հազար քա-
ռակուսի մետր տարածությամբ անհատական բնակելի տներ, մինչդեռ ինն
ամսում կառուցվել է ընդամենը 71 հազար քառակուսի մետր։*

*1958 թվականի պլանը չկատարելը կասկածի տակ է դնում 1959 թվակա-
նի (պետք է կառուցվի 280 հազար քառակուսի մետր, իսկ կոլտնտեսական-
ների համար՝ ինը հազար տուն), ինչպես նաև հաջորդ տարիների պլանների
կատարումը, քանի որ դրանք զգալիորեն կավելացվեն (յոթ տարում պետք է
կառուցվեն երկու միլիոն 100 հազար քառակուսի մետր տարածությամբ ան-
հատական բնակելի տներ)։*

*Անհատական բնակարանային շինարարության գործում եղած թերություն-
ները հետևանք են այն բանի, որ պարտիական կազմակերպությունների մեծա-
մասնությունը պատշաճ նշանակություն չի տալիս դրան։*

*Անհատական բնակարանային շինարարության հետ կապված բոլոր հար-
ցերը՝ հողամաս ստանալը, նախագծումը, շինանյութեր ձեռք բերելը և այլն,
այնքան են բարդացել, որ խնայողություններ ունեցող և անհատական տուն
կառուցել ցանկացող շատ աշխատավորներ չեն համարձակվում այդ գործին
ձեռնարկել։ Ավելին. պետական առևտրական կազմակերպությունները այնքան
վատ են կազմակերպում բնակչությանը շինանյութեր՝ հատկապես ջրմուղի և
կոյուղու խողովակներ, սանիտարա-տեխնիկական հանգույցի մասեր, ցեմենտ,
մետաղ և այլ նյութեր վաճառելու գործը, որ տուն կառուցողը ընկնում է զա-
նազան գործարքների և միջնորդությունների ցանցը և խճողվում այնտեղ,
կամ վարկաբեկում իրեն։*

*Հարկավոր է մեկընդմիշտ լուծել այդ հարցը։ Մեր պարտիական կազմա-
կերպությունները, գիտակցելով բնակարանային շինարարության գործում*



*բնակչության խնայողությունները ներդնելու ողջ կարևորությունը, պետք է
ինչպես հարկն է զբաղվեն անհատական բնակարանային շինարարության գոր-
ծով և վերացնեն նկատվող թերությունները։*

*Անհատական բնակարանային շինարարության զարգացման համար պայ-
մաններ ստեղծելու նպատակով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սո-
վետի հիշյալ որոշումը նախատեսում է՝ մինչև 1961 թվականը հավաքովի
ստանդարտ բնակելի տների արտադրությունը և տեղական նյութերով կառուց-
վող տների համար դետալների կոմպլեկտների արտադրությունը (որը շատ
կարևոր է մեր ռեսպուբլիկայի պայմաններում) հասցնել 30 միլիոն քառա-
կուսի մետրի, որից 28 միլիոնը պետք է վաճառվի անհատ կառուցողներին։*

*Սակայն պետք է նշել, որ առևտրական կազմակերպությունների կողմից
ռեսպուբլիկա փոխադրված ստանդարտ տները պատրաստված են հին, ոչ
խնայողական նախագծերով, այդ տների որակը ցածր է, իսկ արժեքը բարձր։
Դրա հետևանքով այդպիսի հավաքովի տները ընդունելություն չեն գտնում
կառուցողների կողմից և մնում են առևտրական կազմակերպությունների բա-
զաներում։*

*Ժամանակն է՝ լուծելու անհատական բնակարանային շինարարության
ծրագրի իրագործման հետ կապված կազմակերպական մի շարք հարցեր։ Ժա-
մանակն է՝ կազմակերպելու, կամ, ավելի ճիշտ՝ վերականգնելու, բնակարա-
նային կոոպերատիվների պրակտիկան. կոոպերատիվները կունենան իրենց
շինարարական ու մթերող կազմակերպությունները և ռեսպուբլիկայի քաղաք-
ներում կկառուցեն անհատական տներ։ Գործը լավ կազմակերպելու, պար-
տիական կազմակերպությունների պատշաճ օգնությունն ու հսկողությունը
ապահովելու դեպքում այդ կոոպերատիվները մեծ դեր կխաղան բնակչության
խնայողությունները բնակարանային շինարարության համար ներդնելու
գործում։*

*Լուրջ նշանակություն ունի նաև բնակարանային շինարարությունը սանի-
տարա-տեխնիկական սարքավորումներով ապահովելը։ Միութենական ար-
դյունաբերությունը դեռ լրիվին չի բավարարում բնակարանային շինարարու-
թյան աճող պահանջմունքները։ Մեր ռեսպուբլիկայում ամեն տարի հազարա-
վոր մետր բնակելի տարածություններ շահագործման չեն հանձնվում ռադիա-
տորների, ջեռուցման կաթսաների, օդափոխիչների, կոնքերի, լվացարաննե-
րի, խոհանոցային վառարանների և այլ անհրաժեշտ առարկաների պակասի
պատճառով։*

*Հարց է ծագում. ինչո՞ւ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության
խորհուրդը չի ուսումնասիրում, թե մեր ռեսպուբլիկայի ձեռնարկությունները
ինչ կարող էին անել բնակարանային շինարարությանը նպաստելու համար։
Տարակույս չկա, որ արդյունաբերության աշխատողների ուշադրությունը բա-
վարար չափով մոբիլիզացնելու դեպքում մենք կունենայինք թե՛ սանտեխնի-
կական, թե՛ երկաթբետոնե առարկաներ, թե՛ լինոլեում, թե՛ լինոլիում, պար-
կետ, պատուհանի և դռների լավորակ սարքեր և բնակարանային շինարարու-
թյան համար անհրաժեշտ այլ նյութեր։*

*Պարտիայի առաջադրանքը առաջիկա տարիներում բնակարանային պա-
կասը վերացնելու վերաբերյալ պետք է գտնվի ռեսպուբլիկայի պարտիական
կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։*

**Ս. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**

# ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1959—1965 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

Հայաստանի ընդերքը հարուստ է մի շարք օգտակար հանածոներով, առանձնապես մոլիբդենի, պղնձի, նեֆիլինային սիենիտների, ոսկու պաշարներով։ Այդ բազայի վրա մեր ռեսպուբլիկայում ստեղծվել և արագաթափ զարգանում է գունավոր մետալուրգիան։

Առաջիկա յոթնամյակում մեզ մոտ բուռն վերելք են ապրելու լեռնահանքային արդյունաբերությունն ու գունավոր մետալուրգիան։ 1959—1965 թթ. ընթացքում արտադրական առկա օբյեկտների վերակառուցման ու ընդլայնման, ինչպես և նոր ձեռնարկությունների կառուցման միջոցով գունավոր մետալուրգիայի արտադրանքն ավելացվելու է երեք անգամ։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, արտադրվելու է համարյա չորս անգամ ավելի շատ սև պղինձ, 3,4 անգամ ավելի շատ մոլիբդենի կոնցենտրատ, 4,8 անգամ ավելի շատ կապարի կոնցենտրատ, 5,6 անգամ՝ ցինկի կոնցենտրատ, 6,5 անգամ՝ ծծմբաթթու. զգալիորեն ավելանալու է պղնձարջասպի, ալյումինի արտադրանքը։

1959—1965 թվականներին լեռնահանքային արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի զարգացման հեռանկարային պլանը մշակելիս նախատեսվել է հետևյալ հիմնական խնդիրների լուծումը.

1. Ապահովել մոլիբդենի, կապարի, ցինկի ու պղնձի կոնցենտրատների թողարկման, պղնձի ու ալյումինի արտադրության հետագա աճը, կազմակերպել ոսկու ու նեֆիլինային սիենիտների հումքի հանույթն ու վերամշակումը։ Ընդ որում գունավոր մետաղների հանույթի ու վերամշակման աճման համար նախատեսված մասշտաբները վերացնում են այն խզումը, որ կար հայտաբերված առկա պաշարների և եղած արտադրական կարողությունների օգտագործման միջև, մանավանդ մոլիբդենի ու պղնձի գծով։

2. Հանքաքարի ավելի լրիվ կոմպլեքսային վերամշակում կազմակերպել՝ կորզելով հազվագյուտ մետաղները։

3. Արտադրության լայն մեքենայացման ու ավտոմատացման միջոցով ապահովել աշխատանքի պայմանների հետագա բարելավում, աշխատանքի արտադրողականության բարձրացում և թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցում։

Զանգեզուրի հանքվարչության ձեռնարկությունների կարողության հետագա աճը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումն ապահովելու նպատակով յոթնամյա պլանով նախատեսվում է ընդարձակել ու վերակառուցել հանքահորերն ու հարստացուցիչ ֆաբրիկան, որոնց կարողությունը կաճի ավելի քան 1,5 անգամ։ Հանքվարչության Լենինյան խմբում ներկայումս գործող չորս հանքահորերի փոխարեն նախատեսվում է մեկ կենտրոնական հանքահոր, որը 1,5 անգամ ավելի մեծ արտադրողականություն կունենա, քան բոլոր չորս հանքահորերը միասին վերցրած։ Այդ միաժամանակ կհեշտացնի արտադրության ղեկավարումը, կկրճատի վարչակառավարչական ծախսերը։ Սկսված է կենտրոնական կոմպրեսորային, միացյալ վարչա-կենցաղային կոմբինատի և № 3 հիմնական բովանցքի կառուցումը։

Մոտ տարիներս սկսվելու է գոյություն ունեցող հարստացուցիչ ֆաբրիկայի վերակառուցումն ու ընդարձակումը, որտեղ հնացած տեխնոլոգիական



սարքավորումը փոխարինվելու է ավելի կատարելագործված ու ավտոմատացված սարքավորումով։ Ղափանի հանքերում նոր հանքային տարածությունների շահագործման հանձնումը և հարստացուցիչ ֆաբրիկայի ընդարձակումը կպահանջեն արմատապես վերանայել գիտա-հետազոտական աշխատանքի դրվածքը՝ նպատակ ունենալով պղնձի հետ միասին ապահովել մի քանի այլ հազվագյուտ մետաղների կոմպլեքսային կորզումը նոր տիպի հանքահորերից։

Պղնձահանքի երկրորդ հումքային բազան է Ախթալայի հանքավայրը, որը միավորում է Շամլուղի պղնձահանքերը և Ախթալայի պոլիմետաղային հանքերը։ Վերջին տարիների արդյունավետ հետախուզության շնորհիվ Շամլուղի պղնձահանքի պաշարները աճեցին համարյա չորս, իսկ Ախթալայի պոլիմետաղային հանքերը՝ 5 անգամ։ Ախթալայի հանքերի հումքային բազայի էական ընդարձակումը հնարավորություն տվեց հեռանկարային պլանում նախատեսելու պղնձահանքի հանույթի ավելացում ավելի քան 2 անգամ, պոլիմետաղային հանքերինը՝ ավելի քան 5 անգամ և հարստացուցիչ ֆաբրիկայի կառուցում։ Այս միջոցառումները հնարավորություն կտան Ախթալայի հանքերը դարձնել շահութաբեր ձեռնարկություններ։ Հարստացուցիչ ֆաբրիկայի կառուցումն արդեն սկսված է։

Հայաստանի երկրաբանական ծառայության բեղմնավոր գործունեության շնորհիվ վերջին 20 տարվա ընթացքում մի շարք պղնձա-մոլիբդենային հանքավայրեր են հայտաբերվել Քաջարանում, Դաստակերտում, Ագարակում, որոնց բազայի վրա շահագործման են հանձնվել և կառուցվում են լեռնահարստացուցիչ ձեռնարկություններ։

Քաջարանի պղնձա-մոլիբդենային հանքավայրն իր հանքայնացման բնույթով և պաշարներով հազվագյուտ է։ Նրա բազայի վրա 1952 թվականին շահագործման հանձնվեց Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, որը գունավոր մետալուրգիայի խոշորագույն ձեռնարկություններից մեկն է մեր Միության մեջ։ Կոմբինատն ապահովված է լեռնային խոշոր սարքավորումով և ժամանակակից հարստացուցիչ տեխնիկայով, որը հնարավորություն է տալիս խոշոր մասշտաբի հանույթի ու վերամշակման պայմաններում ունենալու տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներ։

Քաջարանի կոմբինատի մոլիբդենի ու պղնձի կոնցենտրատի ինքարժեքը ամենաէժանն է Միության մեջ։ 1959 — 1965 թվականներին նախատեսվում է կրկնապատկել կոմբինատի կարողությունը։ Արտադրության աճման նախատեսված մասշտաբն ապահովելու համար 1959 թվականից ստորերկրյա հանքահորը վերացվում է և արդյունահանման աշխատանքներն ամբողջությամբ փոխադրվում են բաց հանքերը, որն զգալիորեն կիջեցնի թողարկվող արտադրանքի ինքնարժեքը և կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։ Բաց հանքերի աշխատանքներում նախատեսվում է օգտագործել հզոր լեռնային սարքավորումներ։ Սկսած 1961 թվականից աստիճանաբար պետք է գործարկվի հարստացուցիչ ֆաբրիկայի երկրորդ հերթը։ Հատուկ ուշադրություն է դարձվելու ֆաբրիկայի առանձին հանգույցների և տեխնոլոգիական պրոցեսի ավտոմատացման վրա։ Ավտոմատիկայի Կիրովականի Գիտա-հետազոտական ինստիտուտը մշակել է Քաջարանի ֆաբրիկայի ջարդող և մանրող բաժինների ավտոմատացման նախագիծը։ Լեռնա-մետալուրգիական ինստիտուտի սխեմայով կազմվում է հիդրոփոշեզերծման ավտոմատացման նախագիծ։ Քաջարանի կոմբինատի ընդարձակման կապակցու-

թյամբ գիտա-հետազոտական խոշոր խնդիրներ են ծագում։ Մոլիբդենի ու պղնձի պաշարների մոտ 10 տոկոսը թթվուտայնացված հանքանյութեր են, որոնք անդարձ կորչում են, չգտնելով արդյունաբերական օգտագործում։ Այս խնդրի լուծումը կնպաստի Քաջարանի հանքաքարից ավելի շատ մոլիբդեն ու պղինձ ստանալու գործին։

Յոթնամյա պլանով նախատեսվում է Դաստակերտի պղնձա-մոլիբդենային կոմբինատում, առանց խոշոր հիմնական ներդրումների, ինչպես հարստացուցիչ ֆաբրիկայի, այնպես էլ հանքահորի կարողությունը կրկնապատկել՝ ավելի հզոր ագրեգատներ տեղադրելու և մասնակիորեն հանքաքարի արդյունահանման բաց եղանակին անցնելու միջոցով։

1962 թվականին շարք է մտնելու Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, որն արտադրության մասշտաբով երկրորդն է լինելու Քաջարանի կոմբինատից հետո։ Մոլիբդենի ու պղնձի խոշոր պաշարները, արդյունահանման աշխատանքների բաց մեթոդը, երկաթուղային մագիստրալին մոտիկ լինելը և կլիմայական նպաստավոր պայմանները Ագարակի կոմբինատը դարձնում են ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի ամենահեռանկարային ձեռնարկություններից մեկը։

Լեռնահանքային ձեռնարկությունների հզորության աճը, որ հնարավորություն է տալիս զգալիորեն ավելացնելու պղնձի կոնցենտրատների արտադրանքը, ինչպես և ծծմբաթթվի արտադրությունն ավելացնելու ռեալ հնարավորությունը անհրաժեշտ են դարձրել ընդարձակել և լրիվին վերակառուցել Սովետական Միության գունավոր մետալուրգիայի ամենահին ձեռնարկություններից մեկը՝ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը։

Գոյություն ունեցող տեխնոլոգիական ռեժիմը չի ապահովում հումքի մեջ գտնվող մետաղի բոլոր տեսակների կոմպլեքսային ստացումը, օգտագործումը. տեղի է ունենում գազերի առատ անջատում, որը մեծ չափով կեղտոտում է ոչ միայն գործարանի տերիտորիան, այլև ամբողջ Ալավերդի քաղաքը։ Այս երևույթների հաղթահարման համար հեռանկարային պլանով նախատեսվում է արմատապես փոխել արտադրության տեխնոլոգիայի ամբողջ կոմպլեքսը, այդ թվում թրծումը, ձուլվածքը, լրիվ օգտագործելով Սովետական Միության և արտասահմանյան առաջավոր պրակտիկայի բոլոր նվաճումները։

Կոմբինատի վերակառուցման վճռական տեղամասն է լինելու ծծմբաթթվի արտադրության փոխադրումը աշտարակային եղանակից կոնտակտային եղանակի, որը ծծմբային գազի օգտագործումը 31,5 տոկոսից կհասցնի մինչև 80 տոկոսի, կբարելավի ծծմբաթթվի որակը, 73 տոկոս թթվուտի փոխարեն կարտադրվի 96 տոկոս, կլավացվի ստացվող գազերի զտումը։ Դրանով իսկ պայմաններ կստեղծվեն հազվագյուտ մետաղների կորզման համար, ինչպես նաև կվերացվեն աշխատանքի ծանր ու վնասակար պայմանները և կրկնակի չափով կիջեցվի մեկ տոննա թթվուտի ինքնարժեքը։

Վերակառուցումից հետո Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կդառնա Սովետական Միության գունավոր մետալուրգիայի հզոր ձեռնարկություններից մեկը՝ մետալուրգիական ու քիմիական պրոցեսների լիակատար տեխնոլոգիական կոմպլեքսով։ 1965 թվականին նա կտա 4,2 անգամ ավելի շատ արտադրանք, քան տվել է 1958 թվականին։

Քանաքեռի ալյումինի գործարանն աշխատում է Ուրալից բերված հում-



քով։ Ալյումինի արդյունաբերությունը տեղական հումքով ապահովելու համար յոթնամյա պլանի նախագծով նախատեսվում է կառուցել Ախտայի լեռնա-քիմիական կոմբինատը, որն աշխատելու է նեֆիլինային սիենիտների անսպառ պաշարների բազայի վրա։

1959 — 1965 թթ. ընթացքում մեծ աշխատանք է կատարվելու գունավոր մետալուրգիայի բանվոր-ծառայողների նյութական-կուլտուրական մակարդակի հետագա բարելավման ուղղությամբ։ Կառուցվելու են մի շարք բարեկարգ բանվորական ավաններ։ Նախատեսվում է 1959 թվականի առաջին եռամսյակում ավարտել Հայաստանի գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում բանվորների ու ծառայողների աշխատավարձի կարգավորումը, որ սկսվել է 1958 թվականին. բարձրանալու է ցածր և միջակ աշխատավարձ ստացող բանվորների ու ծառայողների աշխատավարձը։

Աշխատավարձի կարգավորման հետ միասին 1958 թվականին գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում սկսվել է աշխատողների փոխադրումը 7—6-ժամյա բանվորական օրվա։ 1958 թվականի նոյեմբեր և դեկտեմբեր ամիսներից կրճատ բանվորական օրվա են փոխադրվել Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատի և Զանգեզուրի հանքվարչության հանքերի բանվորներն ու ծառայողները։ Մյուս ձեռնարկություններում այդ գործը պետք է ավարտվի 1959 թվականի առաջին եռամսյակում։

Մեր կարծիքով անհրաժեշտ է մի շարք ճշտումներ մտցնել հեռանկարային պլանի մեջ։

Յոթնամյա պլանով հսկայական գումարներ են ներդրվում ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի արագ զարգացման համար։ Դա կապահովի արդյունաբերության զարգացման բարձր տեմպը։ Սակայն անհրաժեշտ է արագացնել պլանով նախատեսված արդյունաբերական շինարարության տեմպերը և կառույցները ավարտել հենց յոթնամյակի առաջին տարիներում՝ 1959 — 1962 թվականներին։ Դրա համար չի պահանջվում կապիտալ ներդրումների ծավալի նոր լուրջ մեծացում։ Այդ ամենը հնարավորություն կտա արագացնելու Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատի կառուցումը այն հաշվով, որ այն ամբողջ կարողությամբ շահագործման հանձնվի ավելի շուտ՝ այն է 1962 թվականին. դրա շնորհիվ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կապահովվի անհրաժեշտ հումքով։ 1962 թվականին պետք է ավարտել Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի կառուցումը, որը հնարավորություն կտա ավելացնելու ինչպես պղնձի, այնպես էլ պոլիմետաղների հանքաքարերի հանույթը. դրանով իսկ կվերանա Ախթալայի ձեռնարկությունների անշահութաբերությունը, կբարելավվեն նաև Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի տեխնիկա-տնտեսական մի շարք ցուցանիշներ։

Անհրաժեշտ է երկհերթ շինարարական աշխատանքների միջոցով իրագործել Զանգեզուրի հանքվարչության ընդհանուր վերակառուցումը, որպեսզի յոթնամյա պլանով նախատեսվածի համեմատությամբ կրկնապատկվի հարստացուցիչ ֆաբրիկայի՝ հանքաքար մշակելու կարողությունը։

Թանկարժեք մետաղների կորուստները կրճատելու համար Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկան պետք է ստանա ոչ թե անկախ կոնցենտրատներ՝ պղինձ, կապար, ցինկ, այլ կոլեկտիվ կոնցենտրատներ, որից հետո Ալավեր-

*դու պղնձա-քիմիական կոմբինատում պիրոմետալուրգիայի եղանակով տեղի կունենա նշված մետաղների անջատումը։*

*Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության 1959—1965 թվականների հեռանկարային պլանով նախատեսված աճը ապահովելու, ինչպես և գործող օբյեկտների ընդարձակման և վերակառուցման համար անհրաժեշտ են լեռնահանքային արդյունաբերության մեծ թվով բարձրորակ մասնագետներ։*

*Այս նկատառումով էլ անհանդուրժելի է Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի լեռնային ֆակուլտետը փակելը և այդ ֆակուլտետի շրջանավարտների թիվը կրճատելը՝ 1962 թվականից, հենց այն ժամանակվանից, երբ առանձնապես սուր կերպով կզգացվի լեռնագործ-մասնագետների կարիքը։*

*Այս հանգամանքը անհրաժեշտ է դարձնում լեռնային ֆակուլտետի վերականգնումը Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտում և լեռնային ինժեներների, հանքային երկրաբանների պատրաստման գործի կենտրոնացումը։*

Ա. ԲԱԲԱՅԱՆ
Հայկական ՍՍՌ ԺՏԽ Գունավոր մետալուրգիայի և լեռնարդյունաբերության վարչության պետի տեղակալ

# ՄԵՐ ԱՌԱՋԱՐԿՆԵՐԸ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը մեծ հեռանկարներ է բաց անում գիտության բոլոր ճյուղերի ծաղկման համար։ Այս առնչությամբ մենք կուզենայինք մի քանի առաջարկություններ անել։*

*Վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայում լայնորեն զարգացել է էլեկտրաարդյունաբերությունը, այն է՛լ ավելի կզարգանա այս յոթնամյակում։ Ամբողջովին ավարտվելու է Սևան-Հրազդան կասկադի շինարարությունը, որի հետևանքով էլ ստեղծվելու է անդրկովկասյան մեկ ընդհանուր էներգոսիստեմ։ Չնայած էլեկտրաարդյունաբերության նախատեսվող աննախընթաց զարգացմանը, ռեսպուբլիկան չունի առանձին մի այնպիսի գիտա-հետազոտական ինստիտուտ, որը զբաղվի էլեկտրատեխնիկայի հարցերով, եթե ի նկատի չունենանք Հայկական ՍՍՌ ԳԱ էլեկտրատեխնիկայի լաբորատորիան, որն իր ներկա հնարավորություններով ի վիճակի չէ լուծելու գիտության այդ բնագավառի առջև ծառացած բարդ խնդիրները։ Այդ իսկ տեսակետից անհրաժեշտ է ստեղծել էլեկտրատեխնիկայի գիտա-հետազոտական ինստիտուտ, գիտական մի շարք պրոբլեմների լուծման համար։*

*Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի սիստեմում կան որոշ գիտական հիմնարկներ, որոնց վերջին տարիների գործունեությունը խիստ կտրված է եղել ժողովրդական տնտեսության պահանջներից։ Այսպես, Կենդանաբանական ինստիտուտի մի փոքրիկ կոլեկտիվի գործունեությունն ուղղված է եղել միայն Հայաստանի ֆաունայի ուսումնասիրությանը, գերազանցապես՝ միջատների ֆաունայի։ Ինստիտուտում երկար տարիներ մշակվում է մի այնպիսի հարց, ինչպիսին է՝ «Վաղքի տարբեր տիպերը ժամանակակից մի քանի կաթնասունների մոտ» և որպես ուսումնասիրության օբյեկտ ընտրված են*



*կրծող կենդանիների տարբեր տեսակները։ Այդպիսի պրոբլեմի մշակումը միայն միջոցների վատնում է, քանի որ այն չի կապված գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրների լուծման հետ, թեպետ կարող է որոշ գիտական հետաքրքրություն ներկայացնել էվոլյուցիոն մորֆոլոգիայի տեսակետից։ Տարվել այդպիսի հետաքրքրություններով, մի կողմ թողնելով անասնապահության հետագա վերելքի հարցերը, նպատակահարմար չէ։*

*Այդ փոքրիկ ինստիտուտի կողքին, ակադեմիայի սիստեմում գոյություն ունի նաև Սևանի հիդրոբիոլոգիական կայանը, որը զբաղված է Սևանա լճի և ռեսպուբլիկայի մյուս ջրավազանների ֆաունայի ուսումնասիրությամբ։ Մեր կարծիքով, նպատակահարմար կլինի այդ երկու հիմնարկները միացնել և ստեղծել մեկ, քիչ թե շատ խոշոր ինստիտուտ։ Այդ նույն ինստիտուտին կարելի է միացնել նաև Գյուղատնտեսության մինիստրության սիստեմում գտնվող Երկրագործական ինստիտուտի բույսերի պաշտպանության սեկտորը և շերամապահական լաբորատորիան, որոնք իրենց գիտական ուղղությամբ ավելի մոտ են կանգնած Կենդանաբանական ինստիտուտին, քան, ասենք՝ Երկրագործության ինստիտուտին։ Այսպիսի մի ինստիտուտի ստեղծումը կնպաստի ֆաունայի առավել ռացիոնալ ուսումնասիրմանը և կմշակվեն մի շարք պրոբլեմներ՝ կապված Հայաստանի ժողովրդական տնտեսության պահանջների հետ։*

*Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստրության սիստեմում են գտնվում մի շարք գիտա-հետազոտական ինստիտուտներ։ Գիտությունների ակադեմիայի նախագահությունը խնդիր է դնում ստեղծել բժշկական գիտությունների բաժանմունք՝ մի շարք գիտա-հետազոտական ինստիտուտներով, այդ թվում նաև ներկայիս ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի, կուրորտոլոգիայի ինստիտուտները և սանիտարիայի ու պրոֆիլակտիկ հիվանդությունների նոր ստեղծվող ինստուտուտը, որոնք Առողջապահության մինիստրության սիստեմից պետք է փոխադրվեն Գիտությունների ակադեմիայի սիստեմը, իրենց կլինիկաների հետ միասին։ Իսկ Առողջապահության մինիստրությունը խնդիր է դնում Գիտությունների ակադեմիային հանձնել միայն ինստիտուտները։ Հարցի այդպիսի լուծումը, մեր կարծիքով, նպատակահարմար չէ, քանի որ Գիտությունների ակադեմիան դժվար թե կարողանա զբաղվել և նույնիսկ ֆինանսավորել այդ կլինիկաները։ Եթե կլինիկաները մնան Առողջապահության մինիստրության սիստեմում, իսկ նրանց համապատասխան ինստիտուտները տեղափոխվեն ակադեմիայի սիստեմ, ապա նրանք կզրկվեն իրենց էքսպերիմենտալ բազայից և գրեթե կկտրվեն կյանքից։ Արդեն ժամանակն է՝ մեր ռեսպուբլիկայում ստեղծել ՍՍՌՄ Բժշկական Գիտությունների ակադեմիայի Հայկական ֆիլիալ և բոլոր գիտա-հետազոտական ինստիտուտներն իրենց կլինիկաների և էքսպերիմենտալ բազաների հետ միասին կենտրոնացնել այդ սիստեմում։ Մենք ունենք բժշկական գիտության ֆրոնտում աշխատող բարձրորակ գիտական կադրեր և հնարավորություն ունենք դիմելու այդ քայլին։*

*Կարևոր հարց է նաև գիտական կադրերի պատրաստումը։ Ինչպես հայտնի է, մինչև վերջին տարիները գիտական կադրերը պատրաստվել են ասպիրանտուրայի, իսկ բարձրորակ կադրերը՝ դոկտորանտուրայի միջոցով։ Ներկայումս դոկտորանտուրան, որպես գիտական կադրերի պատրաստման ձև, վերացված է, իսկ ասպիրանտուրան առայժմ շարունակում է գոյություն ունենալ։ Ասպիրանտուրան որպես գիտական կադրերի պատ-*

րաստման ձև իր ժամանակին հսկայական դեր խաղաց։ Բայց վերջին 2—3
տարիների փորձը ցույց է տալիս, որ ներկայումս պետք է հրաժարվել այդ
ձևից էլ, թողնելով միայն գիտության նորագույն ճյուղերի գծով կադրերի
պատրաստումը՝ ասպիրանտուրայի միջոցով։ Գիտական կադրերի պատրաս-
տումը հիմնականում պետք է կատարվի ի հաշիվ գիտա-հետազոտական հիմ-
նարկների ուսումնական հաստատություններում աշխատող գիտա-տեխնիկա-
կան կազմի և արտադրության մեջ աշխատող առավել աչքի ընկնող կադրերի։

Մեր կարծիքով, ժամանակն է վերանայել նաև դիսերտացիաների պաշտ-
պանության կարգը։ Գիտական կոչումների և գիտական աստիճանների շնոր-
հումը պետք է կատարվի առանց դիսերտացիաների պաշտպանության։ Պետք
է նկատի առնվի տվյալ անձնավորության գիտական և մանկավարժական գոր-
ծունեությունը, գիտա-արտադրական աշխատանքը ժողովրդական տնտեսու-
թյան այս կամ այն բնագավառում, հրատարկված աշխատությունների գիտա-
կան և պրակտիկ արժեքը և այլն։

Գիտության զարգացման հետ մեկտեղ դրվում է ինչպես գիտության նվա-
ճումները արտադրության մեջ ներդնելու, այնպես էլ գիտական աշխատու-
թյունների հրատարկման հարցը։ Առանձին գիտա-հետազոտական ինստի-
տուտներ, հատկապես Առողջապահության մինիստրության սիստեմում գտնը-
վողները, և բարձրագույն ուսումնական հաստատություններ հրատարկում են
իրենց գիտական աշխատությունների ժողովածուները։ Հաճախ այդ ժողովա-
ծուները հրատարակվում են ցածր որակով, բավականին ուշացումներով։ Այս-
պես, Գյուղատնտեսական ինստիտուտի գիտական աշխատությունների ժողո-
վածուն, որը նվիրված էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի
40-ամյակին, լույս տեսավ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը տոնելուց հետո։
և այդ է
ժողովածուների մեծ մասը հրատարակվում է ռուսերեն լեզվով
պատճառը, որ աշխատավորության լայն մասսաները, հատկապես կոլտնտե-
սային աշխատավորությունը, չեն կարողանում ծանոթանալ այդ աշխատու-
թյունների հետ։ Պետք է խիստ պահանջկոտ լինել տպագրության համար
պատրաստվող յուրաքանչյուր աշխատության նկատմամբ։ Պետք է տպագրվեն
միայն այն աշխատությունները, որոնք համապատասխան մասնագետների
կողմից նախօրոք բարձր գնահատականի կարժանանան գիտական որակի տե-
սակետից։ Նպատակահարմար ենք գտնում Առողջապահության մինիստրու-
թյանը կից հրատարակել գիտական աշխատությունների տեղեկատու, որը
պետք է պարբերաբար լույս տեսնի և իր մեջ ամփոփի առողջապահության
սիստեմի գիտա-հետազոտական հիմնարկների առանձին գիտական աշխատու-
թյունները։ Այդպիսի տեղեկատուի հրատարակման դեպքում անհրաժեշտու-
թյուն չի զգացվի առանձին ինստիտուտների կողմից գիտական ժողովածու-
ների հրատարակման և կնպաստի տպագրված գիտական աշխատությունների
որակի բարձրացմանը։

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությանը կից վերջերս
ստեղծվել են մի շարք նոր գիտա-հետազոտական ինստիտուտներ։ Ինչ խոսք,
որ դրանց ստեղծումը թելադրված է եղել ժողովրդական տնտեսության պա-
հանջներից՝ ռեսպուբլիկայում գյուղատնտեսության հետագա վերելքն ապա-
հովելու պահանջից։ Բայց զարմանալին այն է, թե ինչու այդ ինստիտուտնե-
րի կողքին դեռևս շարունակում են գոյություն ունենալ առանձին գիտական
օջախներ, որոնք պետք է միացվեին այդ ինստիտուտներին, ելնելով իրենց



պրոֆիլից։ Այսպես, Գյուղատնտեսության մինիստրության սիստեմում ստեղծ-
վել է Գյուղատնտեսության էկոնոմիկայի ինստիտուտ և դրա կողքին, ԳԱ
Էկոնոմիկայի ինստիտուտում, գոյություն ունի գյուղատնտեսության էկոնոմի-
կայի սեկտոր, կամ ստեղծվել է Հողագիտության և ագրոքիմիայի ինստիտուտ
և դրան չի միացվել Գիտությունների ակադեմիայի ագրոքիմիայի լաբորատո-
րիան. այդ ինստիտուտում կա մի աղքատիկ, ագրոքիմիայի նոր լաբորատո-
րիա, առանց որի ինստիտուտը չի կարող գոյություն ունենալ։ Մեր կարծիքով,
այսպիսի վիճակը հանգեցնում է լրացուցիչ միջոցների ծախսման ու առանձին
գիտական պրոբլեմների լուծման ձգձգման։

Խ. ՋԱՔԱՐՅԱՆ

## ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՄՇԱԿՈՒԹՅԱՆԸ

Մեր երկրում անասնաբուծության զարգացման պայմաններից մեկը,
գլխավոր պայմանը՝ կերի կայուն բազայի ստեղծումն է։ Իսկ կերի բազայի
ընդարձակման գործում կարևոր դեր է կատարում եգիպտացորենը։

Մեր կոլտնտեսությունում եգիպտացորենի մշակությամբ սկսել ենք
զբաղվել 1955 թվականից։ Առաջին տարին ցանք կատարեցինք 20 հեկտա-
րի վրա և ստացանք լավ արդյունք։

Հաշվի առնելով առաջին տարվա փորձը և այն, որ մեր կոլտնտեսու-
թյունը քիչ արոտավայրեր ու խոտհարքեր ունի, սկսեցինք ավելի մեծ
ուշադրություն նվիրել եգիպտացորենի մշակությանը և տարեցտարի ընդար-
ձակել այդ արժեքավոր կուլտուրայի ցանքատարածությունը։

1958 թվականին կոլտնտեսությունը եգիպտացորենի ցանք կատարեց 65
հեկտարի վրա։ Կոլտնտեսականների ազնիվ և ժրաջան աշխատանքը տվեց
հիանալի արդյունք։ Յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացանք 440
ցենտներ ցողուն, իսկ առանձին հողամասերից՝ ավելի բարձր։ Օրինակ,
Ավետիս Գասպարյանն իր մշակած հողամասի մեկ հեկտարից ստացավ
700 ցենտներ ցողուն, բարձր բերք ստացանք նաև սերմացուի համար առանձ-
նացված դաշտերից։

Եվ մեր կոլտնտեսությունը, որ մի ժամանակ անասնապահության բնա-
գավառում շրջանում համարվում էր ամենից ետ մնացողը, այժմ դարձել է
առաջավորներից մեկը։ Եթե 1954 թվականին յուրաքանչյուր կովից ստացել
էինք 862 կիլոգրամ կաթ, ապա 1958 թվականին, կովերին եգիպտացորենից
պատրաստված սիլոսով կերակրելու շնորհիվ, ստացանք 2000 կիլոգրամ
կաթ։ Համապատասխանաբար կաթի համախառն արտադրանքը կոլտնտե-
սությունում 1747 ցենտներից հասել է 3012 ցենտների, կամ յուրաքանչյուր
100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է ավելի քան 300
ցենտներ կաթ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում իր
տեղն է գտել եգիպտացորենի ցանքերի ընդարձակման հարցը։ Ողջունելով
պարտիայի այդ միջոցառումները՝ մենք կցանկանայինք մի քանի դիտողու-
թյուններ անել այդ առնչությամբ։

Հայտնի է, որ մինչև այժմ էլ մեր պայմաններում եգիպտացորենի
մշակության համար մեքենաները օգտագործվում են միայն ցանքի ժամա-

նակ, իսկ աշխատանքի մյուս պրոցեսները (փխրեցում, բերքահավաք) կատարվում են ձեռքով։ Նոր հնգամյակում պետք է ավելի ընդարձակել եգիպտացորենի մշակության համար օգտագործվող մեքենաների արտադրությունը։ Ներկայումս գործածության մեջ եղած եգիպտացորենի սիլոսահատ կոմբայններն ունեն լուրջ թերություններ, չեն կարողանում լրիվին ընդգրկել բարձր ցողունները։ Պետք է արտադրել եգիպտացորենի այնպիսի կոմբայններ, որոնք կարողանան լրիվին ընդգրկել բարձր ցողունները և ունենան բունկեր։

Ելնելով մեր կոլտնտեսության փորձից, նպատակահարմար ենք գտնում եգիպտացորենի ցանքը կատարել լավ նախորդ ունեցող (աշնանացան և այլն) ցրտահերկի վրա, տեղական պարարտանյութի հետ միասին տալ նաև երկու սնուցում՝ հանքային պարարտանյութով, բույսերի խտությունը պահպանել այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր հեկտարի վրա 50 հազար բույս լինի, որովհետև թե՛ շատ խիտ ցանքը, և թե՛ նոսր ցանքը սպասվող արդյունքը չեն տալիս։

Մեր կոլտնտեսությունը 1959 — 1965 թվականներին զգալիորեն աճեցնելու է անասունների գլխաքանակը և բարձրացնելու անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Հաշվի առնելով այդ, յոթնամյակի ընթացքում կոլտնտեսությունում եգիպտացորենի ցանքը ընդարձակվելու և հասցվելու է մինչև 80 հեկտարի, որը հնարավորություն կտա զգալիորեն ավելացնելու կերի բազան։

Եգիպտացորենի ցանքերի մշակությունը մեքենայացնելու նպատակով կոլտնտեսությունը գնելու է մեկ եգիպտացորենի կոմբայն և մեկ կուլտիվատոր։

Ղաշաղանի կոլտնտեսականները, որոնք ջերմորեն ողջունեցին ՍՄԿԿ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները, կլարեն իրենց բոլոր ջանքերը պարտիայի կողմից առաջադրված խնդիրներն անթերի լուծելու համար։

Ե. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
Ալավերդու շրջանի Ղաշաղան գյուղի
կոլտնտեսության նախագահ

---

# ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

## *Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ*

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում սկսվում են հաշվետու-ընտրական ժողովները, որոնք կարևոր իրադարձություն են կոլտնտեսության կյանքում։ Դրանք ամփոփում, հանրագումարի են բերում ո՛չ միայն վարչության, այլև ամբողջ կոլտնտեսության գործունեությունը, բացահայտում են տեղ գտած թերություններն ու սխալները, նշում տնտեսության զարգացման հետագա ուղիները, ընտրում կոլտնտեսության ղեկավարություն։

Կոլտնտեսությունների էկոնոմիկայի հետագա զարգացման և կոլտնտեսային դեմոկրատիայի ընդլայնման հետ միասին ավելի նշանակալից ու կարևոր են դառնում հաշվետու և հաշվետու-ընտրական ժողովները, որոնք այս տարի տեղի են ունենում մեր ժողովրդի և, մասնավորապես, գյուղի աշխատավորության համար կարևորագույն իրադարձությունների պայմաններում։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը ամփոփեց գյուղատնտեսության զարգացման արդյունքները վերջին հինգ տարում և մշակեց գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները։ Ինչպես պլենումի որոշման մեջ, այնպես էլ ՍՄԿԿ XXI համագումարում ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսներում նշված են այն պատմական խնդիրները, որ դնում է պարտիան սոցիալիստական գյուղատնտեսության առջև ընթացիկ յոթնամյակում։

Հայաստանի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, սովխոզային տնտեսությունների բանվորներն ու բանվորուհիները, մեխանիզատորներն ու գյուղատնտեսության մասնագետները, պարտիական, սովետական կազմակերպությունները բարձր ցուցանիշների հասան հատկապես 1958 թվականին։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացումը հնարավորություն տվեց նոյեմբերի 15-ին ժամկետից շուտ կատարելու հացահատիկի, բամբակի, ճակնդեղի, մսի, կաթի, բրդի, ձվի վաճառքի պետական առաջադրանքները։ Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական համարյա բոլոր մթերքների արտադրությունը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը բարձր գնահատելով մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունները, Հայկական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկան պարգևատրեց Լենինի շքանշանով։

Հայաստանի կոմպարտիայի օրերս տեղի ունեցած XX համագումարը նոր, խոշոր խնդիրներ դրեց ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև։ Համագումարի որոշման մեջ նշված է, որ 1965 թվականին ռեսպուբլիկայում խաղողի

*արտադրությունը, համեմատած 1957 թվականի հետ, ավելանալու է 190,2%-ով, մրգինը՝ 204%-ով, բանջարեղենինը՝ 73%-ով, մսինը՝ 109,6%-ով, կաթինը՝ 81,8%-ով, բրդինը՝ 99%-ով, ձվինը՝ 57%-ով։ Որոշ չափով ավելանալու է նաև հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, կարտոֆիլի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։ Հասկանալի է, որ այդ խնդիրների կենսագործման համար պահանջվում է կազմակերպական հսկայական աշխատանք, կոլտնտեսությունների ու սովետական տընտեսությունների գործունեության հետագա բարելավում, ուժերի մաքսիմալ լարում։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի, Հայաստանի կոմպարտիայի XX համագումարի և ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները պետք է գտնվեն կոլտնտեսությունների հաշվետու և հաշվետու-ընտրական ժողովների ուշադրության կենտրոնում, բնորոշեն նրանց բովանդակությունը։*

*Ամփոփելով գյուղատնտեսական տարվա արդյունքները, ոչ մի դեպքում չի կարելի մոռանալ, որ կոլտնտեսությունների գործունեության մեջ դեռևս գոյություն ունեն խոշոր թերություններ, որոնք զգալի չափով դանդաղեցնում են առաջընթացը, խանգարում կոլտնտեսություններին՝ հաջողությամբ լուծելու գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման խնդիրը։*

*Դժբախտաբար ռեսպուբլիկայում դեռևս կան զգալի թվով կոլտնտեսություններ, որոնք սիստեմատիկորեն ցածր բերք են ստանում դաշտավարությունից, չեն բարձրացնում անասնաբուծության մթերատվությունը։ Աշտարակի շրջանի Բյուրականի կոլտնտեսությունը անցյալ տարի 82 հեկտար բերքատու խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացավ ընդամենը 13,3 ցենտներ բերք, պլանով նախատեսված 60 ցենտների փոխարեն։ Նույն շրջանի Կոշ և Փարպի գյուղերի կոլտնտեսություններում խաղողի բերքատվությունը կազմեց 16—17 ցենտներ։ Սիսիանի շրջանի Լեռնաշեն և Ուռուտ գյուղերի կոլտնտեսությունները հացահատիկային ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացան 4—4,1 ցենտներ բերք։ Կիրովականի շրջանի կոլտնտեսությունները անցյալ տարի, 1957 թվականի համեմատությամբ, ավելի քան 100 կիլոգրամով պակասեցրին մեկ կովի կաթնատվությունը։ Ալավերդու շրջանի Այրում գյուղի կոլտնտեսությունը 1957 թվականին մեկ կովից ստացավ ընդամենը 460 կիլոգրամ կաթ, Իջևանի շրջանի Ուզունթալայի կոլտնտեսությունը ֆուրաժային կովի կաթնատվությունը պակասեցրեց 170 կիլոգրամով։ Մի շարք շրջաններում, 1957 թվականի համեմատությամբ, զգալի չափով պակասել է մսի արտադրությունը։*

*Կոլտնտեսությունների հաշվետու-ընտրական ժողովներում պետք է խոր կերպով վերլուծել այն պատճառները, որոնք խանգարում են բերքատվության բարձրացմանը և անասնաբուծության մթերատվության ավելացմանը։ Անհրաժեշտ է, որ կոլտնտեսության վարչության հաշվետու զեկուցումը կազմելուն մասնակցեն գյուղատնտեսության մասնագետները, կոլտնտեսության ակտիվիստները։*

*Նախորդ տարիներում կոլտնտեսությունների զգալի մասում հաշվետու զեկուցումները միայն թվերի և անունների շարադրանք էին, միայն ինֆորմացիա տիրող վիճակի մասին։ Պատահական չէ, որ այդ կոլտնտեսություններում հաշվետու ժողովներն անցան ցածր մակարդակով, չծառայեցին իրենց նպատակին։*



*Հաշվետու զեկուցման հիմքում պետք է դրվեն բերքատվության և մթերատվության բարձրացման հարցերը, նշվեն այն միջոցառումները, որոնք հնարավորություն կտան՝ ապահովելու յոթնամյա պլանի առաջին տարվա խնդիրների կենսագործումը, ավելացնելու կոլտնտեսության եկամուտները։*

*Այդ միջոցառումներից են, մասնավորապես, աշխատանքի կազմակերպումը, արտադրական ճիշտ և առաջավոր նորմաների մշակումը, կոլտնտեսության պայմաններին առավել համապատասխան արտադրական պլանների ընդունումը, տնտեսության եկամուտների բաշխման արդյունավետ կարգի սահմանումը, կոլտնտեսային դեմոկրատիայի և կոլտնտեսականների նախաձեռնության ընդլայնումը և այլն։*

*Աշխատանքի կազմակերպումն ու վարձատրությունը կոլտնտեսային շինարարության կարևոր հարցերից են, որոնք պայմանավորում են գործի հաջողությունը։ Ահա թե ինչու հաշվետու ժողովներում արտադրական նորմաների և լրացուցիչ վարձատրության սիստեմի մշակման հարցերի վրա պետք է կենտրոնացնել ինչպես կոլտնտեսային ակտիվի, այնպես էլ բոլոր կոլտընտեսականների ուշադրությունը։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների զգալի մասում մակերեսային մոտեցում է հանդես բերվում արտադրական նորմաների նկատմամբ։ Մշակվում և ընդունվում է վարձատրության այնպիսի կարգ, որը ո՛չ միայն չի նպաստում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը, այլև հաճախ տեղի է տալիս թյուրիմացությունների։ Տարօրինակ է, որ շատ կոլտնտեսություններում արտադրական սխալ նորմաներ հաստատելու հետևանքով անմիջապես արտադրության մեջ աշխատող կոլտնտեսականներն ավելի քիչ աշխօր են վաստակում, քան երկրորդական, այսպես կոչված՝ «հաստիքային» աշխատողները՝ հաշվետարները, դանձապահները, պահեստապետները, պահակները և ուրիշները։*

*Ուշագրավ է հետևյալ օրինակը. Ախտայի շրջանի Բժնի գյուղի կոլտնտեսությունում աշխատունակ կոլտնտեսականը միջին հաշվով տարեկան վաստակել է 190 աշխօր, իսկ կոլտնտեսության նախագահի մարդատար ավտոմեքենայի վարորդը՝ 600 աշխօր։*

*Առանձին կոլտնտեսություններում սխալ արտադրական նորմաների հաստատման հետևանքով չափազանց մեծ է վարչական ապարատի աշխատողների և շարքային կոլտնտեսականների վարձատրության տարբերությունը։*

*Ախտայի շրջանի Ջրառատի կոլտնտեսությունում 1957 թվականին վարչության նախագահին գրանցվել է 1488 աշխօր, յուրաքանչյուր բրիգադավարին միջինը՝ 705 աշխօր, այն դեպքում, երբ աշխատունակ կոլտնտեսականը միջին հաշվով վաստակել է 168 աշխօր։*

*Բացի այդ, պետք է նկատի ունենալ, որ բրիգադավարների և անասնապահական ֆերմաների վարիչների վարձատրությունը որոշ դեպքերում ավելանում է, եթե նրանք անմիջապես արտադրության մեջ ֆիզիկական աշխատանք են կատարում։ Իհարկե, արտելի կանոնադրությունը թույլատրում է նրանց անմիջական մասնակցություն ունենալ արտադրական աշխատանքներին, բայց այդ աշխատանքի համար վարձատրությունը չպետք է գերազանցի բրիգադավարի կամ ֆերմայի վարիչի հիմնական վարձատրության 25 տոկոսից։ Որոշ կոլտնտեսություններում առանձին մարդիկ չարաշահում են այդ իրավունքը։*

Իջևանի շրջանի Ծաղկավանի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Լ. Զավրադյանին տարվա ընթացքում հիմնական աշխատանքի համար գրանցված է 544 աշխօր, ֆիզիկական աշխատանքի համար՝ 428 աշխօր, այն դեպքում, երբ այդ կոլտնտեսությունում յուրաքանչյուր կոլտնտեսական տարվա ընթացքում միջին հաշվով վաստակում է 275 աշխօր։

Հետաքրքիր է Մեղրու շրջանի Վահրավար գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական և կովաբուծական ֆերմաների վարիչների համար սահմանված վարձատրության կարգը։ Այդ ընկերները վարձատրվում են ըստ արտադրանքի և, բացի դրանից, յուրաքանչյուրին ամիսը գրանցվում է 15 աշխօր, իբր ֆիզիկական աշխատանք կատարելու համար. փաստորեն աշխօրը գրանցվում է ոչ թե կոնկրետ այս կամ այն ֆիզիկական աշխատանքը կատարելու համար, այլ ընդհանրապես, հաստիքային կարգով։

Շատ տեղերում, արտադրական նորմանները մշակելիս, լուրջ մոտեցում հանդես չի բերվում, հաշվի չեն առնվում աշխատանքի դժվարությունը, չափը։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ միատեսակ պայմաններում գտնվող կոլտնտեսություններում միևնույն աշխատանքների համար սահմանվում են տարբեր նորմաներ։

Կիրովականի շրջանի Ժդանով գյուղի կոլտնտեսությունում մեկ հեկտար կարտոֆիլի ցանք կատարելու համար տրվում է 11,6 աշխօր, իսկ նույն շրջանի Լեռնապատ գյուղում՝ 1,5 աշխօր։ Մեկ հեկտարի վրա կարտոֆիլի երկրորդ բուկլիցի համար Ժդանովում տրվում է 35 աշխօր, Արչուտում՝ 6,25 աշխօր։

Էջմիածնի շրջանի Սամաղարի և Ն. Խաթունարխի կոլտնտեսությունում բամբակի ծերատման համար մեկ մարդու արտադրական նորման սահմանված է 0,6 հեկտար, որի համար գրանցվում է 1,25 աշխօր, իսկ նույն շրջանի Աղջաղալայի կոլտնտեսությունում նորման 0,1 հեկտար է, որի վարձատրությունն է 1,2 աշխօր։ Այսպիսով, միևնույն աշխատանքի՝ ծերատման համար Աղջաղալայի կոլտնտեսականը վարձատրվում է 5,7 անգամ ավելի, քան Սամաղարի ու Ն. Խաթունարխի կոլտնտեսականը։

Նման բազմաթիվ օրինակներ կարելի է բերել ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջաններից։ Իհարկե, կոլտնտեսությունների արտադրական նորմաների մեջ տարբերություններ պետք է լինեն։ Բայց այդ տարբերությունները պետք է պայմանավորվեն կոնկրետ առանձնահատկություններով և չպետք է այդքան մեծ չափեր ընդունեն։

Արտադրական ճիշտ նորմաների մշակման գործում շատ անելիքներ ունեն պարտշրջկոմներն ու շրջսովետների գործկոմները։ Նրանք գյուղատնտեսության մասնագետների միջոցով պետք է կոլտնտեսություններին օգնեն՝ գիտականորեն հիմնավորված, տվյալ կոլտնտեսության պայմաններին համապատասխան և նրա էկոնոմիկայի համար առավել նպատակահարմար արտադրական նորմաներ մշակելու։

Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման կարևոր միջոցը լավագույն աշխատանքի համար լրացուցիչ վարձատրության սահմանումն է։ Հայտնի է, որ լրացուցիչ վարձատրությունը խոշոր չափով նպաստում է կոլտնտեսականների աշխատանքային ակտիվության բարձրացմանը և լավ արդյունք է տալիս։ Սակայն այդ գործում նույնպես կոլտնտեսությունների մի մասում թույլ են տրվում խեղաթյուրումներ։ Շատ կոլտնտեսություննե-



րում լրացուցիչ վարձատրության չափը որոշելիս կոլտնտեսականները չեն խորանում այն բանում, թե տվյալ պլանը գերակատարելու դեպքում ինչպես է բաշխվելու լրացուցիչ վարձատրության համար հասանելիք դրամը կամ մթերքը։ Իսկ կոլտնտեսությունների որոշ ղեկավարներ և հաշվային աշխատողներ անազնիվ կերպով մշակում են լրացուցիչ վարձատրության այնպիսի նորմաներ, որոնցից շահում են իրենք։

Կարելի է բերել շատ օրինակներ, բայց բավականանանք մեկով։

Մեղրու շրջանի Նյուվադի գյուղի «Կրմզի Սահրադ» կոլտնտեսությունում խաղողի բերքատվության պլանը կատարելու համար որպես լրացուցիչ վարձատրություն տրված խաղողի 65 տոկոսը ստացել են 109 շարքային կոլտնտեսականներ, մնացած 35 տոկոսը՝ ընդամենը 3 հոգի—կոլտնտեսության վարչության նախագահը, հաշվապահը և գյուղատնտեսը. ընդ որում նախագահը շարքային կոլտնտեսականից 27 անգամ ավելի լրացուցիչ վարձատրություն է ստացել, գյուղատնտեսը՝ 19 անգամ ավելի։

Հաշվետու-ընտրական ժողովներում պետք է լայնորեն քննարկել լրացուցիչ վարձատրության հարցերը, բացահայտել այդ գործում եղած թերությունները, անհրաժեշտ ցուցումներ տալ, որպեսզի 1959 թվականի արտադրական նորմաների մշակման ժամանակ սահմանվի լրացուցիչ վարձատրության այնպիսի կարգ, որը շահագրգռի բոլոր կոլտնտեսականներին։

Գաղտնիք չէ, որ ռեսպուբլիկայի որոշ կոլտնտեսություններում աշխատանքային կարգապահությունը դեռևս պատշաճ բարձրության վրա չի գտնըվում։ Դժբախտաբար կան ոչ քիչ թվով կոլտնտեսականներ, որոնք խուսափում են հանրօգուտ աշխատանքից և դեպքից դեպք են դաշտ դուրս գալիս, հրաժարվում են կատարել վարչության հանձնարարությունները։ Կոլտնտեսությունների զգալի մասում դեռևս շատերը չեն կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը։ Հոկտեմբերյանի շրջանում, օրինակ, անցյալ տարվա առաջին կիսամյակում 10,694 աշխատունակ կոլտնտեսականներից 1173 հոգի չկատարեցին աշխօրերի մինիմումը, իսկ 532 հոգի ոչ մի աշխօր չվաստակեցին. երկրորդ կիսամյակում աշխօրերի մինիմումը չկատարեցին 987 հոգի։

Պետք է նշել, որ այդպիսի կոլտնտեսականների նկատմամբ համապատասխան ներգործուն միջոցներ ձեռք չեն առնվում։ Հաշվետու ժողովներում պետք է վճռական միջոցառումներ մշակվեն կոլտնտեսության աշխատանքը լքողների, հանրօգուտ գործունեությամբ չզբաղվողների, կարգապահությունը խախտողների նկատմամբ։ Այժմ, երբ կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդվել են և զգալի չափով ավելացրել աշխօրերի հասանելիքը, երբ ազնըվորեն աշխատող կոլտնտեսականի վաստակը լիովին բավարարում է նրա տնտեսության կարիքները, երբեք հանդուրժողականություն չպետք է ցուցաբերվի վատ աշխատող կոլտնտեսականի նկատմամբ։

Հաշվետու ժողովներում անհրաժեշտ է սրել հափշտակումների և չարաշահումների դեմ մղվող պայքարը ուժեղացնելու հարցը։ Դժբախտաբար մինչև հիմա էլ առանձին կոլտնտեսություններում անբավարար հսկողության հետևանքով անազնիվ տարրերի կողմից թույլ են տրվում հափշտակության, չարաշահումների ոչ քիչ դեպքեր։

Ախուրյանի շրջանի Կառնուտի կոլտնտեսության հաշվապահ Աղատ Մաճուկյանը 1958 թվականի հունվարին և փետրվարին յուրացրել է 28 հազար ռուբլի կանխիկ դրամ, իսկ պահեստապետ Ա. Մարտիրոսյանը՝ ավելի քան 90

հազար ռուբլի։ Նման օրինակներ կարելի է բերել ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից։ Զարաշահումների և յուրացումների թիվը անհամեմատ ավելի քիչ կլինի, եթե կոլտնտեսությունների վերստուգիչ հանձնաժողովները իրենց բարձրության վրա գտնվեն։ Դժբախտաբար շատ կոլտնտեսություններում վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքը ձևական բնույթ է կրում, նրանք սիստեմատիկ և հանկարծակի ստուգումներ չեն կազմակերպում, իսկ ստուգումների ժամանակ անհրաժեշտ չափով չեն խորանում հարցերի մեջ։

Հոկտեմբերյանի շրջանի 28 կոլտնտեսություններում 1958 թվականի 9 ամսվա ընթացքում կատարվել է ընդամենը 42 ստուգում, ընդ որում 13 կոլտնտեսությունում՝ 2-ական, 15 կոլտնտեսությունում՝ մեկական անգամ։

Այդպիսի վիճակը բացատրվում է, նախ՝ նրանով, որ կոլտնտեսություններում (թերևս նաև շրջաններում) երբեմն թերագնահատվում է վերստուգիչ հանձնաժողովների դերը, անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում նրանց գործունեությանը և, երկրորդ, որ վերստուգիչ հանձնաժողովների կազմում հաճախ ընտրվում են այնպիսի մարդիկ, որոնք չեն կարող ստուգումներ կատարել։

Քննարկելով վերստուգիչ հանձնաժողովի զեկուցումը՝ հաշվետու ժողովը պետք է սպառիչ պատասխան տա այն հարցին, թե կոլտնտեսության վարչությունը ինչ միջոցներ է ձեռնարկել հանձնաժողովի պահանջները կատարելու և անհազանգումներին ընթացք տալու համար։

Կոլտնտեսային շինարարության հարցերը քննարկելիս չպետք է մոռանալ, որ ժողովի հիմնական նպատակը հանրային տնտեսության հետագա զարգացումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացումն է։ Արտադրությանը վերաբերող հարցերը պետք է սերտորեն շաղկապվեն այն խնդիրների հետ, որոնք դրվում են գյուղատնտեսության աշխատողների առջև պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումի և Հայաստանի կոմպարտիայի XX համագումարի որոշումներում։

Առաջիկա տարիներին Հայաստանի կոլտնտեսությունների ամենապատասխանատու խնդիրը մսի արտադրության շեշտակի ավելացումն է։ Հայտնի է, որ խնդիր է դրված մեր ռեսպուբլիկայում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 53 ցենտներ միս (սպանդանոցային քաշով)։ Մսի արտադրության այդպիսի աճ ապահովելու համար, առաջին հերթին, պետք է լուծել կերի բազայի հարցը, խոշոր չափով զարգացնել խոզաբուծությունն ու թռչնաբուծությունը, խելացիորեն կազմակերպել անասունների բտումն ու գիրացումը, մեծ չափով ավելացնել անասունների և, մասնավորապես, կովերի գլխաքանակը։

Ընթացիկ յոթնամյակում խոշոր չափով պետք է ավելանա խաղողի և մրգերի արտադրությունը, այդ պետք է տեղի ունենա ինչպես մեծ մասշտաբի այգետնկումների, այնպես էլ բերքատվության բարձրացման միջոցով։ Նախատեսվում է դաշտավարական մյուս կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության զգալի բարձրացում։

Այդ խնդիրների կատարման համար պետք է լայնորեն ծավալել կոլտնտեսականների սոցիալիստական մրցությունը։ Հայաստանի կոմպարտիայի XX համագումարում խնդիր դրվեց սոցիալիստական մրցությունը ծավալել հետևյալ նշանաբանով՝ պայքարել շրջանի բոլոր կոլտնտեսությունները ավելյալ շրջանի առաջավոր կոլտնտեսության մակարդակին հասցնելու համար։ Այս նշանաբանով ծավալվող մրցությունը հնարավորություն կտա առաջիկա երկու տարում զգալի չափով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։



Հաշվետու-ընտրական ժողովներում պետք է լայնորեն քննարկել վերոհիշյալ խնդիրները, որպեսզի կոլտնտեսային ողջ աշխատավորության անմիջական մասնակցությամբ մշակվեն այն ուղիները, որոնցով ընթանալու է կոլտնտեսությունը պարտիայի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։

Կոլտնտեսությունների հաշվետու-ընտրական ժողովները պետք է միջոցներ մշակեն այս տարվանից սկսած իրենց անբաժանելի ֆոնդերը ավելացնելու, կոլտնտեսականներին երաշխավորված մինիմումով վարձատրելու, գընված նոր տեխնիկան ռացիոնալ օգտագործելու, աստիճանաբար տնտեսական հաշվարկի անցնելու և ողջ գյուղատնտեսության կուլտուրան բարձրացնելու համար։

Հաշվետու-ընտրական ժողովներում կոլտնտեսությունների վարչությունների և վերստուգիչ հանձնաժողովների կազմում պետք է առաջադրել գործիմաց, հեղինակավոր ընկերների։ Պետք է ապահովել կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը հարցերի քննարկման և լուծման գործին։ Նակազը պետք է կազմվի խնամքով և ընդգրկի տնտեսության առջև դրվող բոլոր կարևորագույն հարցերը։

Պարտիայի շրջանային կոմիտեները և շրջսովետների գործկոմները պետք է լուրջ նախապատրաստական աշխատանք տանեն կոլտնտեսություններում հաշվետու ժողովները բարձր մակարդակով անցկացնելու համար։ Անհրաժեշտ կլինի առանձին կոլտնտեսություններ գործուղել մասնագետների, պարտիական-սովետական աշխատողների, որոնք կօգնեն կոլտնտեսությունների վարչություններին և պարտիական կազմակերպություններին՝ լավագույն ձևով նախապատրաստելու ժողովները։

Ոգևորված բարձր պարգևով, Լենինի շքանշանակիր Հայաստանի կոլտնտեսային աշխատավորությունը բազմապատկված եռանդով կպայքարի հաբազատ Կոմունիստական պարտիայի առաջադրանքները պատվով կատարելու, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Խ. ԴՐԱՄԲՅԱՆ

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը կարճ ժամանակամիջոցում տվեց դրական արդյունքներ։ Տնտեսության կառավարման նոր սիստեմը խոշոր հնարավորություններ ստեղծեց ժողովրդական տնտեսությունն ավելի ռացիոնալ վարելու, արտադրողական ուժերն ավելի ճիշտ տեղաբաշխելու և արդյունաբերության տարբեր ճյուղերի միջև առավել ճշգրիտ համամասնություններ ստեղծելու համար։ Դրա լավագույն ապացույցը Հայաստանի ժողտնտխորհի ձեռնարկությունների աշխատանքի արդյունքն է։

Ժողտնտխորհը և ճյուղային վարչությունները աչքի ընկնող հաջողությունների են հասել աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ. գերակատարվել է 1958 թվականի առաջին կիսամյակի աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը և 1957 թվականի համեմատությամբ աճել է 7,7 տոկոսով, գերակատարվել է նաև ինքնարժեքի իջեցման պլանը ինչպես համեմատական, այնպես էլ ամբողջ ապրանքային արտադրանքի գծով։

Աշխատանքի արտադրողականության աճը արտադրության ընդլայնման, ինքնարժեքի իջեցման և կուտակումների ավելացման գլխավոր աղբյուրն է։ Այն ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա վերելքի և բազմակողմանի զարգացման վճռական պայմանն է։ Վ. Ի. Լենինը քանիցս շեշտել է, որ աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար... Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և կպարտվի այն բանի հետևանքով, որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր աշխատանքի արտադրողականություն։

Կոմունիստական պարտիան, կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները և օգտագործելով սոցիալիստական սիստեմի առավելությունները, պատմական ամենակարճ ժամանակամիջոցում կարողացավ ապահովել արդյունաբերության մեջ հասարակական աշխատանքի արտադրողականության աճի չտեսնված, կապիտալիստական հասարակությանն անմատչելի տեմպեր։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականությունը, 1913 թվականի համեմատությամբ աճեց 9,5 անգամ, մինչդեռ ԱՄՆ-ում՝ ընդամենը 2,2 անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման անշեղ վերելքին զուգընթաց աճում է նրա յուրաքանչյուր տոկոսի արժեքային բովանդակությունը։ Բավական է ասել, որ եթե առաջին հնգամյակի տարիներին աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոս արժեքային ար-



տահայտությամբ կազմում էր 190 միլիոն ռուբլի, ապա 1958 թվականին այն կազմեց մոտ 10 միլիարդ ռուբլի։ Միայն Հայաստանի ժողտնտխորհի սիստեմի ձեռնարկություններում 1958 թվականին արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոսը արժեքային արտահայտությամբ կազմեց մոտ 50 միլիոն ռուբլի։

1958 թվականի առաջին կիսամյակում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր ունեցան ժողտնտխորհի որոշ առաջատար ճյուղեր։ Մեքենաշինության և հաստոցաշինության ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճը կազմեց 30,8 տոկոս, քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների գծով՝ 14,5 տոկոս, շինանյութերի արդյունաբերության գծով՝ 19,3 տոկոս, սննդի արդյունաբերության ձեռնարկությունների գծով՝ 16,4 տոկոս և այլն։ Աշխատանքի արտադրողականությունը ավելի բարձր կլիներ, եթե ժողտնտխորհի բոլոր ձեռնարկությունները կատարեին իրենց առաջադրանքները։

Բազմաթիվ են աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները։ Դրանցից գլխավորներն են՝ առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորումը, արտադրական պրոցեսների մեքենայացումը և ավտոմատացումը, արտադրության էլեկտրիֆիկացումը և քիմիզացումը, արտադրության և աշխատանքի կազմակերպման բարելավումը, արտադրության մասնագիտացումը և կոոպերացումը, աշխատողների որակավորման բարձրացումը և սոցիալիստական մրցությունը։

Անցած ժամանակաշրջանում նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման, չօգտագործված ռեզերվների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված ավտոդողերի, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ս. Կիրովի անվան, Քանաքեռի ալյումինի, կոմպրեսորների, ճշգրիտ գործիքների գործարանների և Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի կոլեկտիվների կողմից։ Երևանի ավտոպահեստամասերի գործարանի կոլեկտիվը հին, բարոյապես մաշված տեխնիկան նոր, ավելի բարձր արտադրողական տեխնիկայով փոխարինելու, ինչպես նաև տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման շնորհիվ 1957 թվականի ընթացքում կարողացավ ավտոպահեստամասերի արտադրության ծավալը 1956 թվականի համեմատությամբ ավելացնել 20,9 տոկոսով։ Արտադրությունը զգալիորեն աճեց անցյալ տարվա վեց ամիսների ընթացքում (10,3 տոկոսով)։ Մեկ և կես տարվա ընթացքում գործարանի ցեխերում ստացվել և տեղադրվել են երեք հարյուր հիսունից ավելի մեքենաներ ու սարքեր, այդ թվում՝ բարձր հաճախականության հոսանքի մի քանի ագրեգատներ, որոնց շնորհիվ հնարավոր դարձավ ռեսպուբլիկայում առաջին անգամ մասսայականորեն կիրառել պահեստամասերի ջերմային մշակումը։ Միայն բարձր հաճախականության հոսանքով դետալների մշակման շնորհիվ ջերմային տեղամասի աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 12 անգամ և տվեց կես միլիոն ռուբլու խնայողություն։ Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանի կոլեկտիվը գործարանին կից գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալի մասնակցությամբ կարողացավ անցած երկու տարվա ընթացքում մշակել 50-ից ավելի տարբեր գեներատորների, ուժային տրանսֆորմատորների, շարժական էլեկտրակայանների և դրանք կոմպլեկտավորող զանազան հանգույցների կա-

ռուցվածքներ։ Միատարր սերիայի գեներատորները, տրանսֆորմատորները իրենց կառուցվածքային և տեխնոլոգիական տվյալներով լայն հնարավորություններ են ստեղծում աշխատանքի լավագույն մեթոդների կիրառման, տեխնոլոգիական առաջավոր պրոցեսների արմատավորման և դեֆիցիտային նյութերի խնայողաբար օգտագործման համար։ Գործարանի կոլեկտիվի կողմից լուրջ գործ է կատարված նաև աշխատատար պրոցեսների, միջցեխային տրանսպորտի մեքենայացման ուղղությամբ. այդ նպատակով 1957—1958 թվականների ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել տասնյակ կոնվեյերներ և անընդհատ հոսքի գծեր, որոնց ընդհանուր երկարությունը հասնում է ավելի քան 1500 մետրի։

Տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարել նաև Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կոլեկտիվը։ Նա ստեղծեց փոքր չափերի մի ամբողջ սերիայի նոր բարձր արտադրողականության հաստոց, որը մինչև 1957 թվականը թողարկվող հին կոնստրուկցիայից տարբերվում է իր բազմատիճանությամբ և բարձր արտադրողականությամբ։ Նոր սերիայի հաստոցը հիմնովին փոխեց արտադրության հին տեխնոլոգիան և աշխատանքի կազմակերպումը։ Արտադրության մեջ ներդրվեցին մի շարք ավտոմատ գծեր, իսկ նոր տեխնոլոգիայի հիմքում հիմնականում դրվեցին պնևմատիկան և հիդրավլիկան։ Այս գործարանում, ինչպես և ռեսպուբլիկայի մեքենաշինության մեջ խոշոր նորություն էր մեծ թվով հատուկ ագրեգատային հաստոցների կիրառումը, որոնց վրա մեկ գործողությամբ հնարավոր է մի քանի օպերացիա կատարել։ Այս միջոցառումները մեծ չափով բարձրացրին ինչպես առանձին տեղամասերի, այնպես էլ ամբողջ գործարանի աշխատանքի արտադրողականությունը։

Սակայն Ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գործիքաշինության, Մեքենաշինության և հաստոցաշինության, Տեքստիլ արդյունաբերության, Փայտամշակման և Անտառային արդյունաբերության ճյուղային վարչությունների մի շարք ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարներն անբավարար են զբաղվում տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության, և աշխատանքի ճիշտ կազմակերպման հարցերով։ Դրա հետևանքով ինչպես նախանցյալ, այնպես էլ անցյալ տարի ձեռնարկությունների մի մասում մի շարք կարևոր ցուցանիշների գծով թերակատարվեց պետական առաջադրանքների կատարումը։ Այսպես, 1958 թվականի առաջին կիսամյակի պետական պլանը համախառն արտադրանքի գծով չկատարեցին 23, ամբողջ ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցման գծով՝ 52 ձեռնարկություն, և արտադրանքը զգալի չափով թանկացավ։ 1958 թվականի առաջին եռամսյակում 23 ձեռնարկություն և երկրորդ եռամսյակում 24 ձեռնարկություն չկատարեցին պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։

ՍՄԿԿ XX համագումարը և Կենտրոնական Կոմիտեի 1958 թվականի Մայիսյան պլենումը պարտիական և տնտեսական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման և միջին աշխատավարձի աճի տեմպերի համամասնության հարցի վրա։

Հայտնի է, որ Սովետական պետությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցը և աշխատավարձի աճը պլանավորելիս ելնում է նրանց միջև այնպիսի համամասնությունների սկզբունքից, ըստ որի աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը պետք է գերազանցեն աշխատավարձի աճի տեմպերից։ Դա հնարավորություն է տալիս ստեղծելու սոցիալիստական կուտակման այնպիսի ֆոնդեր, որոնք անհրաժեշտ են ընդլայնված վերարտադրության, երկրի հզորության ամրապնդման և աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացման համար։ Մինչդեռ ինչպես 1957 թվականին, այնպես էլ անցյալ տարի շատ ձեռնարկություններ խախտել են այդ սկզբունքը։ 1958 թվականի առաջին եռամսյակում 42 ձեռնարկություններում և երկրորդ եռամսյակում 39 ձեռնարկություններում մեկ բանվորի միջին աշխատավարձի աճի տեմպերը զգալիորեն գերազանցեցին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերին։ Ժողտնտխորհի ձեռնարկությունների ընդհանուր թվի մոտ 70 տոկոսը նշված ժամանակամիջոցում սիստեմատիկորեն թույլ է տվել աշխատավարձի ֆոնդի հարաբերական գերածախս, որը կազմեց ավելի քան 8,0 միլիոն ռուբլի։ Շատ ձեռնարկություններ նույն ժամանակաշրջանում չկատարեցին օգուտների պլանը և ունեցան մեծ գումարների հասնող ոչ արտադրողական ծախսեր և կորուստներ։



Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանի թերակատարումը և աշխատավարձի ֆոնդի գերածախսը մասամբ արդյունք են այն բանի, որ Ժողտնտխորհի մի շարք ձեռնարկություններ ունեին սահմանված պլանից ավելի բանվորներ, որոնց քանակը միայն 1958 թվականի հուլիս ամսում կազմում էր բանվորների ընդհանուր թվի 5 տոկոսից ավելին, իսկ առանձին ճյուղային վարչությունների գծով՝ մինչև 14 տոկոս։

Հատկապես անբարեհաջող է դրությունը Թեթև արդյունաբերության վարչության ձեռնարկություններում, որոնց մեկ քառորդում միջին աշխատավարձը մեծ չափով գերազանցել է աշխատանքի արտադրողականության աճին։ Գրեթե նույնն է դրությունը էլեկտրատեխնիկական արդյունաբերության և Գործիքաշինության վարչության ձեռնարկությունների մեկ երրորդում։

Շատ ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքի չկատարման, պլանով սահմանված աշխատանքի արտադրողականության աճի և միջին աշխատավարձի նորմալ հարաբերակցության սկզբունքի խախտման պատճառներից մեկն այն է, որ մեծ է օժանդակ բանվորների թիվը։

Օժանդակ բանվորների թիվը Ժողտնտխորհի ձեռնարկությունների գծով (չհաշված լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունները) 1958 թվականի օգոստոս ամսվա տվյալներով կազմում է 40 տոկոս։ Այն բարձր է, հատկապես Քիմիական, Սննդի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և Գործիքաշինության վարչությունների ձեռնարկություններում։ Մի շարք ձեռնարկություններում մեկ արտադրող բանվորին ընկնում է համարյա մեկ օժանդակ բանվոր։

Տեխնոլոգիական սարքավորումների վերանորոգման աշխատանքների կազմակերպման բնագավառում գոյություն ունեն լուրջ թերություններ։ Գրեթե բոլոր ձեռնարկություններում բազմաթիվ փոքր և միջին մեծության էլեկտրո և մեխանիկական վերանորոգման ցեխերում և ծառայություններում զբաղված են մեծ թվով օժանդակ բանվորներ (տեխնոլոգիական սարքավորումների վերանորոգման, պահեստային մասերի պատրաստման, սպասարկման հա-

մար), որոնք կազմում են ձեռնարկության բոլոր օժանդակ բանվորների 30 — 40 տոկոսը։

Այդ ցեխերի և ծառայությունների մեծ մասում վատ է կազմակերպված աշխատանքը, կիրառվող տեխնիկան ու տեխնոլոգիան ծայր աստիճան հետամնաց են և ոչ կատարելագործված։ Այստեղ աշխատանքի գերակշռող մասը հիմնականում կատարվում է ձեռքով, որի հետևանքով ցածր է նրա արտադրողականությունը, բարձր է վերանորոգման աշխատանքների արժեքը։

Այժմ, երբ վերացել են ձեռնարկությունների միջև եղած գերատեսչական պատնեշները, երբ ռեսպուբլիկայի տնտեսական շրջանն իր տրամադրության տակ ունի խոշոր արդյունաբերական բազա, ընդունակ կադրեր, լիովին հնարավոր է ճյուղային վարչությունների գծով կամ տերիտորիալ սկզբունքով ստեղծել բարձր արտադրողականության մասնագիտացված վերանորոգման գործարաններ։ Այդ մեծ չափով կօգնի՝ ձեռնարկություններում բարելավելու վերանորոգման աշխատանքների դրվածքը և կրճատելու օժանդակ բանվորների թիվը։

Ժողտնտխորհը և նրա էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գործիքաշինության վարչությունը անցյալ տարի մեծ աշխատանք կատարեց էլեկտրամոտորների կենտրոնացված վերանորոգման ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի վեց շրջաններում ստեղծվեցին մասնագիտացված վերանորոգման ցեխեր, որոնք իսկապես կարգավորեցին վերանորոգման գործի կազմակերպումը ձեռնարկություններում։ Ժամանակն է, որ համապատասխան կազմակերպությունները մտածեն այդպիսի մասնագիտացված նոր ձեռնարկությունների ստեղծման, մեխանիկական և էլեկտրասարքավորումների հիմնական վերանորոգումը կազմակերպելու մասին։

Մի շարք ձեռնարկություններում շատ են արտադրանքի որակին հսկող և տրանսպորտային աշխատանքներում զբաղված օժանդակ բանվորները, որոնց թիվը կազմում է ընդհանուր բանվորների թվի 15 — 20 տոկոսը։ Երևանի ավտոպահեստամասերի, կաբելի, Լենինականի մահճակալի, հեծանվի, տեքստիլ կոմբինատի, էլեկտրատեխնիկական գործարաններում մեծ քանակությամբ հումք, պատրաստի արտադրանք և տարբեր դետալներ տեղափոխվում են ավտոմեքենաներով, էլեկտրասայլակներով և ձեռքի այլ հարմարանքներով այն դեպքում, երբ կարելի է տեղադրել ավելի կատարելագործված տիպի տրանսպորտի ձևեր, որտեղ սպասարկող բանվորներ գրեթե չեն պահանջվում։ Ավտոպահեստամասերի գործարանում տրանսպորտի ցեխի և տեխնիկական հսկողության բաժնի բանվորները 1958 թվականին կազմում էին գործարանի բոլոր օժանդակ բանվորների 27 տոկոսից ավելին, կամ յուրաքանչյուր արտադրող ութ բանվորին ընկնում էր մեկ տեխնիկական հսկողության աշխատող։

Մեծ թվով օժանդակ բանվորներ զբաղված են գործող սարքավորումների կարգավորման վրա այն դեպքում, երբ Միության մի շարք առաջավոր ձեռնարկություններում վաղուց կիրառվում է և պրակտիկայով արդարացված է ինքնասպասարկումը։ Օժանդակ սպասարկման շատ հարցեր, կապված նրանց ստրուկտուրայի, աշխատանքի կազմակերպման բարելավման, վերանորոգման որակի բարձրացման, օժանդակ բանվորների թվի կրճատման հետ, դեռևս քիչ են ուսումնասիրված։ Ժողտնտխորհն ունի բոլոր հնարավորություն-



ները՝ խորապես զբաղվելու պետական կարևորություն ունեցող այս մեծ գործով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման չօգտագործված խոշոր ռեզերվ պետք է համարել մեր ձեռնարկություններում ներդրված արտադրական կարողությունների ոչ լրիվ օգտագործումը։ Արտադրական կարողությունների օգտագործման ցածր գործակիցը առաջին հերթին պետք է բացատրել մի շարք ձեռնարկություններում մեքենաների հաճախակի խափանումներով, աշխատանքի տեղի անբավարար կազմակերպման, աշխատանքային և արտադրական կարգապահության խախտման և կազմակերպական ու տեխնիկական այլ պատճառներով։

Շատ ձեռնարկություններում պարապուրդները մեծ են, որովհետև վատ է դրված սարքավորումների պրոֆիլակտիկ վերանորոգումը։ Այս ուղղությամբ վիճակն անբավարար է հատկապես թեթև արդյունաբերության, հաստոցաշինության և դազգահաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գործիքաշինության վարչությունների առանձին ձեռնարկություններում։

Կաբելի գործարանում անցյալ տարվա վեց ամիսների ընթացքում միայն աշխատանքի վատ կազմակերպման և սարքավորումների պրոֆիլակտիկ վերանորոգումների վատ դրվածքի պատճառով թույլ տրվեց 83 հազար մեքենա-ժամ պարապուրդ, որը պլանները թերակատարելու հիմնական պատճառներից մեկն էր։ Մեծ են պարապուրդները նաև Նուրբ մահուդի կոմբինատում, Մահուդի ֆաբրիկայում, Ավտոպահեստամասերի, Հեծանվի գործարաններում, Տեքստիլ կոմբինատներում և այլ ձեռնարկություններում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի մեքենաների և սարքավորումների ժամանակին օգտագործումը։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի ժողտնտխորհը գործարկել է 300 միավոր խոշոր մեքենաներ և սարքեր, որոնք մինչ այդ չէին օգտագործվում։

Սակայն ժողտնտխորհի ձեռնարկություններում տասնյակ և հարյուր հազարների հասնող արժողության մեքենաներ և սարքավորումներ մինչև հիմա չեն տեղադրված և տարիների ընթացքում ենթարկվում են մասնակի փչացման։ Այսպես, առ 1-ը հոկտեմբերի 1958 թվականի տվյալներով ժողտնտխորհի ձեռնարկություններում կային 98 միլիոն ռուբլու չտեղադրված մեքենաներ և սարքեր՝ 16 միլիոն ռուբլու նորմատիվի դիմաց։ Վատն այն է, որ չեն օգտագործվում նույնիսկ լավագույն, առաջնակարգ մեքենաներն ու սարքավորումները։ Ալյումինի գործարանի ֆոլգոպրակատնի ցեխի միանգամայն նոր և առաջնակարգ մեքենաներն ու սարքերը 24 միլիոն ռուբլու արժողությամբ արդեն երրորդ տարին է, ինչ չեն օգտագործվում և աստիճանաբար փչանում են այն պատճառով, որ 12,5 միլիոն ռուբլի արժողությամբ ցեխը, որտեղ պետք է շահագործվեին դրանք, Շինարարության մինիստրության և ժողտնտխորհի անբավարար ուշադրության հետևանքով ժամանակին շահագործման չհանձնվեց։ Այս բնույթի փաստեր կան նաև մյուս ճյուղային վարչությունների օբյեկտներում։

Դեռևս 1957 թվականին Կաբելի գործարանի ռեզինի ցեխում դրվեցին մոտ երկու միլիոն ռուբլու արժողությամբ մի քանի բարձր արտադրողականության անընդհատ վուլկանացման ագրեգատներ։ Այդ ագրեգատները լրիվ կարողությամբ օգտագործվելու դեպքում կարելի է ստանալ ավելի քան մեկ

և կես միլիոն ռուբլի տնտեսական օգուտ։ Սակայն այդ ագրեգատները այժմ էլ օգտագործվում են իրենց կարողության միայն 50 տոկոսի սահմաններում, չնայած որ այդ ցեխը և, մասամբ, այդ տեղամասը համարվում է գործարանի նեղ տեղերից մեկը։ Հայէլեկտրագործարանի տրանսֆորմատորների ցեխում 1957 թվականին տեղադրված է տրանսֆորմատորների պատյանների զոդման համար ավտոմատ գիծ, որի վրա ծախսված է ավելի քան մեկ միլիոն ռուբլի գումար։ Այդ ավտոմատ գծի շահագործումով զգալիորեն կբարձրանար արտադրության կուլտուրան և աշխատանքի արտադրողականությունը։ Սակայն գործարանը, ունենալով մեծ թվով ինժեներա-տեխնիկական կադրեր և գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալ, երկու տարվա ընթացքում չկարողացավ Միության համապատասխան գիտա-հետազոտական ինստիտուտի միջոցով վերացնել այդ գծի առանձին մեքենաների թերությունները և օգտագործել այն։

Որոշ ձեռնարկություններում գոյություն ունի նաև մի այլ երևույթ, որը նույնպես արգելակում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը։ Հանրահայտ է, որ ժամանակակից տեխնիկայի և տեխնոլոգիայի զարգացման հիմնական նպատակը տեխնոլոգիական պրոցեսներում բանվորական ժամանակի հնարավորին չափ կրճատումն է, արտադրանքի միավորի վրա ծախսված կենդանի աշխատանքի քանակի անընդհատ իջեցումը։ Պարզ է, որ այդ բոլորը կարելի է ձեռք բերել, երբ սիստեմատիկ կերպով հին, բարոյապես մաշված տեխնիկան փոխարինվի նորով, իսկ նորը՝ նորագույնով։ Սակայն որոշ ձեռնարկություններում դեռևս կիրառվում են արտադրության այնպիսի միջոցներ և սարքավորումներ, որոնք տասնյակ տարիներ արդեն գործածվել են ու հնացել։

Այսպիսի վիճակ գոյություն ունի մեծ մասամբ թեթև արդյունաբերության, հաստոցաշինության ու դազգահաշինության վարչությունների որոշ ձեռնարկություններում։ Մահուդի ֆաբրիկայի, Լենինականի տեքստիլ կոմբինատի գործարաններում, նույբ մահուդի կոմբինատի որոշ ցեխերի, ինչպես և հեծանվի և մահճակալի, մետաղյա իրերի և էլեկտրատեխնիկական գործարանների մի շարք սարքավորումներ ունեն 30—40 տարվա պատմություն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման լուրջ գործոն է ձեռնարկության ռիթմիկ աշխատանքի ապահովումը։ Ոչ ռիթմիկ աշխատանքի հետևանքով լրիվ չեն օգտագործվում տեղադրված կարողությունները, իջնում է արտադրանքի քանակը և որակը, առաջանում են մեծ կորուստներ, արտաժամյա աշխատանք, հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի մեծ գերածախս, ասորտիմենտի խախտում։ Այս ամենը բացասաբար է անդրադառնում ձեռնարկության ընդհանուր տնտեսական և ֆինանսական ցուցանիշների վրա։

Ցնայած ճյուղային վարչությունները և ձեռնարկությունները որոշ աշխատանք կատարել են այս ուղղությամբ, բայց մեծ թվով ձեռնարկություններ դեռևս շարունակում են աշխատել ոչ ռիթմիկ և մեծ գրոհայնությամբ։ 1958 թվականի առաջին և երկրորդ եռամսյակների ընթացքում էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գործիքաշինության ձեռնարկություններում ամսվա առաջին տասնօրյակում արտադրվեց ամբողջ արտադրանքի պլանի միայն 17 տոկոսը, իսկ երրորդ տասնօրյակում՝ 53 տոկոսը կամ երեք անգամ ավելի, քան առաջին տասնօրյակում։ Մեքենաշինության և հաստոցաշի-



նության վարչության ձեռնարկություններն ամբողջությամբ վերցրած նույն ժամանակաշրջանում ամսական արտադրանքի մոտ կեսից ավելին արտադրել են երրորդ տասնօրյակի ընթացքում։ Դրությունը բարվոք չէ նաև Փայտամշակման, Անտառային արդյունաբերության, ինչպես և մյուս վարչությունների որոշ ձեռնարկություններում։

Այս բոլորը վկայում են այն հսկայական ռեզերվների առկայության մասին, որոնք կարող են գործողության մեջ դրվել, եթե բոլոր ձեռնարկություններում արմատավորվի ռիթմիկ աշխատանքը։ Եթե ձեռնարկությունը ամսվա պլանով նախատեսված արտադրանքի կեսից ավելին թողարկում է ամսվա վերջին տասնօրյակում, ապա այն հնարավորություն ունի ամբողջ ամսվա ընթացքում թողարկելու համեմատաբար ավելի շատ արտադրանք, քան փաստացի արտադրում է։

Աշխատանքի կազմակերպման բարելավման, հետևաբար և աշխատանքի արտադրողականության բարձրացման լուրջ գործոն է աշխատավարձի սիստեմի ճիշտ սահմանումը։ Բանվորների աշխատավարձի կարգավորումը մեր արդյունաբերության մեջ որոշվում է երեք գործոններով՝ տարիֆային սիստեմով, աշխատանքի նորմավորումով և աշխատավարձի ձևերով։ Բանվորների աշխատանքի ճիշտ վճարման հիմքում ընկած է տարիֆային սիստեմը. այն անհրաժեշտ է աշխատավարձի ձևի և սիստեմի կառուցման, մասամբ աշխատանքի գործարքային վճարման լայն կիրառման և աշխատավարձի ֆոնդի սահմանման համար։

Սակայն պետք է նշել, որ արտադրողականության անընդհատ աճը և բանվորների աշխատավարձի բարձրացումը ապահովող այս կարևոր միջոցը դեռևս շատ ձեռնարկություններում անբավարար է օգտագործվում։ Շատ ձեռնարկություններում տարիֆային դրույքը բավականին հնացել է, զգալիորեն ետ է մնում բանվորների փաստացի աշխատավարձից, որի պատճառով մեծ ճեղքվածք է առաջացել բանվորների փաստացի աշխատավարձի և տարիֆային դրույքի միջև։ Այս բնականաբար իջեցնում է տարիֆի դերը բանվորի ընդհանուր աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Լենինի անվան հայէլեկտրագործարանի, Ավտոպահեստամասերի, էլեկտրալուսավորման արմատուրայի, Լենինականի մեխանիկական գործարաններում և Կույբիշևի անվան ֆաբրիկայում ու մի շարք այլ ձեռնարկություններում անցած ժամանակաշրջանում փաստացի աշխատավարձը մոտ 2 անգամ գերազանցեց տարիֆային դրույքից։

Հնացած տարիֆային դրույքի և աճած փաստացի աշխատավարձի միջև առաջացած ճեղքվածքի պատճառն այն է, որ շատ ձեռնարկություններում մինչև այժմ մեծ են փորձնական վիճակագրական նորմաները, որոնք չեն համապատասխանում ներդրված տեխնիկայի արտադրության և բանվորների առաջավոր փորձի մակարդակին։

Աշխատավարձի ճիշտ կազմակերպման և աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր տարրը տեխնիկական նորմավորումն է։ Տեխնիկապես հիմնավորված նորմաները արտադրության մեջ տարեցտարի ավելանում են։ Օրինակ, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում տեխնիկապես հիմնավորված նորմաները հիմնական արտադրությունում 1958 թվականին կազմեցին ընդհանուր նորմաների 65—70 տոկոսը։ Սակայն ձեռ-

նարկությունների մի զգալի մասում դեռևս գործում են ոչնչով չհիմնավորված ժամանակի և գնահատման փորձնական-վիճակագրական նորմաներ, որոնք հեշտությամբ գերակատարվում են բանվորների կողմից և խթան չեն հանդիսանում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության ձեռնարկությունների արտադրանքի նորմաների միջին կատարողականը 1957 թվականի դեկտեմբերին կազմեց 208 տոկոս, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գործիքաշինության վարչության գծով՝ 216 տոկոս, իսկ Փոքր հիդրոտուրբինների, Մետաղյա իրերի, Արաբկիրի և Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկաներում նորմաների միջին կատարողականը կազմեց 250 տոկոս և այլն։

Հասկանալի է, որ նշված ձեռնարկություններում նորմաների կատարման այսպիսի վիճակը չի կարելի բացատրել միայն տեխնիկապես չհիմնավորված նորմաների առկայությամբ. այստեղ մեծ դեր է խաղում բանվորների որակավորման բարձրացումը, նրանց արտադրական ակտիվությունը, սոցիալիստական մրցության թափը և այլն։ Բայց երբ էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանում բանվորների 70 տոկոսից ավելին կատարում են երկու և կես նորմա, այդ նշանակում է, որ գործող նորմաները բացարձակորեն չեն համապատասխանում տվյալ ձեռնարկության աճած հնարավորություններին։ Մի շարք ձեռնարկություններում գոյություն ունի արտադրանքի նորմաների արհեստական մանրացում։ Դպրոցական պիտույքների ֆաբրիկայում կիրառվում է 1600—1700 նորմա, Կիրովի անվան կահույքի ֆաբրիկայում՝ 1800 նորմա և այլն։ Բավական է նշել, որ Դպրոցական պիտույքների ֆաբրիկայում միայն դպրոցական գրչակոթի պատրաստման համար մշակված էր 21 նորմա։

Այսպիսի վիճակը արդյունք է մասամբ այն բանի, որ մինչև ժողտնտխորհի կազմակերպումը նորմատիվները սահմանվում էին առանձին մինիստրությունների և գիտա-հետազոտական ինստիտուտների կողմից, որի պատճառով շատ հաճախ նույնանման աշխատանք կատարելու համար նախատեսվում էին ժամանակի տարբեր նորմաներ։

Այժմ, երբ ռեսպուբլիկայի արդյունաբերության գերակշռող մասը ընդգրկված է ժողտնտխորհի սիստեմում, ստեղծված են բոլոր նախապայմանները, որպեսզի ճյուղային վարչությունների սահմաններում կազմակերպվի նորմատիվների համամիացում (ունիֆիկացիա), որը մեծ չափով կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Առաջիկա յոթնամյակի կոնտրոլ թվերի վերաբերյալ ՍՄԿԿ XXI համագումարի քննարկմանը ներկայացվող թեզիսներում նախատեսվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման նոր, վիթխարի տեմպեր։ Դա պարտիական կազմակերպություններից պահանջում է՝ ավելի ուժեղացնել քաղաքական-կազմակերպական դաստիարակչական աշխատանքը, հաջողությամբ մոբիլիզացնել աշխատավոր մասսաների ստեղծագործական ուժերը կոմունիստական շինարարության հոյակապ պլանների կենսագործման համար։

# ՄԵՐ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի որոշումները լայն հնարավորություններ ստեղծեցին գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար։ Ինչպես Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողները, այնպես էլ Հոկտեմբերյան շրջանի Ջանֆիդա գյուղի Ֆրունզեի անվան կոլտնտեսության աշխատավորները այդ պատմական որոշումները դարձրին իրենց ամենօրյա գործունեության մարտական ծրագիրը և լարեցին բոլոր ջանքերը դրանց կենսագործման համար։

Պարտիայի և կառավարության մշակած այդ միջոցառումները ջանֆիդացիներին հնարավորություն տվեցին՝ ավելի ճիշտ և ռացիոնալ օգտագործելու իրենց տնտեսության ռեզերվները և վերջին չորս-հինգ տարվա ընթացքում կոլտնտեսությունը կազմակերպչորեն զգալի չափով ամրապնդելու և որոշակի հաջողությունների հասնելու։

## ՀԱՑԱՀԱՏԻԿ

Կոլտնտեսությունը ցանում է 115 հեկտար հացահատիկ։ Առաջներում յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 15 — 20 ցենտներից չէր անցնում, այդ էլ համարվում էր լուրջ հաջողություն բերքատվության բարձրացման գործում և թվում էր դրանից բարձր բերք ստանալ հնարավոր չէ։ Սակայն կոլտնտեսության առջև կանգնած նոր խնդիրների հաջող լուծումը ստիպեց մտածել այդ ուղղությամբ և գործադրել նորանոր միջոցառումներ հասկավոր կուլտուրաների ցանքատարածություններից ավելի բարձր բերք ստանալու համար։ Կոլտնտեսականների գործադրած ջանքերն ապարդյուն չանցան։ Այժմ մենք յուրաքանչյուր հեկտարից ստանում ենք միջինը 30 ցենտներ հացահատիկի բերք։ Բերքատվության այդ ցուցանիշին հասել ենք աշնանացանը հաջող կատարելու, նրա լավ խնամքի, լիարժեք ծլունակություն ապահովելու շնորհիվ. վաղ գարնանը, աշնանացանի ամբողջ տարածությունը փխրեցնում ենք ու պարարտացնում ֆոսֆորային պարարտանյութով։ Այն տարածությունները, որտեղ բույսերը թույլ են աճած, լրացուցիչ տալիս ենք ազոտական պարարտանյութ։ Կարևոր նշանակություն ունի նաև ցանքերը ժամանակին ջրելը. ինչպես ժամանակից շուտ, այնպես էլ ուշ ջրելը տեղիք է տալիս բերքի անկման։

Լուրջ ուշադրություն է հատկացվում հացահատիկի բերքահավաքի աշխատանքների կազմակերպմանը։ 1957 թվականին հացահատիկի տարածությունների մեծ մասի բերքահավաքը կատարվեց ձեռքով, որովհետև ՄՏ կայանը ժամանակին կոմբայն չտրամադրեց, իսկ սպասել հնարավոր չէր, քանի որ հասունացած հասկերը սկսում էին թափվել։ Մենք ևս խուսափում էինք բեր-

քաղհավաքը կոմբայնով կատարելուց, որովհետև կոմբայնավարը չէր համաձայնում ցողունները ներքևից կտրել։ ՄՏ կայանի ղեկավարները պահանջում էին այն կտրել բարձրից, որովհետև ինչքան քիչ մասսա է մտնում կոմբայնի ծեծող ապարատը, այնքան հանգիստ է աշխատում կոմբայնը։ Իսկ վերևից կատարված հունձը տալիս է ծղնոտի մեծ կորուստ, որը խիստ պակասեցնում է կերի պաշարները։ Այդպիսի վեճերից խուսափելու համար մենք հրաժարվում էինք կոմբայնով հունձ կատարելուց և դիմում ձեռքի աշխատանքին, որը խիստ ծանր էր նստում մեզ վրա։

1958 թվականին, երբ կոլտնտեսությունը գնեց մեքենաները, հացահատիկի ամբողջ ցանքատարածությունները հնձեցինք կոմբայնով։ Հունձը կատարեցինք 10 աշխատանքային օրում, յուրաքանչյուր հեկտարից հավաքելով 31 ցենտներ բերք և չունեցանք ծղնոտի կորուստ։ Առաջավոր բրիգադավարներ Վ. Պողոսյանի և Բ. Զաքարյանի ղեկավարած բրիգադները 22 հեկտար հացահատիկային տարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին միջինը 35 ցենտներ բերք։

## ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Այժմ կոլտնտեսությունն ունի 60 հեկտար խաղողի բերքատու այգիներ։ Կոլտնտեսության հեռանկարային պլանով նախատեսված է մինչև 1965 թվականը այն հասցնել 155 հեկտարի։ Գյուղատնտեսության այս կարևոր և ամենաեկամտաբեր ճյուղը մեր կոլտնտեսությունում տարիներ շարունակ անուշադրության էր մատնված, որի հետևանքով էլ մինչև 1954 թվականը խաղողի այգիների միջին բերքը հեկտարից 14 ցենտներից չէր անցնում։ Վազերը գտնվում էին անմշակ, մոլախոտերով ծածկված հողերում. ստեղծված էր այն կարծիքը, որ մեզ մոտ հնարավոր չէ այգիներից ցանկալի բերք ստանալ։ Տարբեր կոլտնտեսականներ տարբեր կերպ էին բացատրում այգիների ցածր բերքատվությունը. ոմանք ասում էին, որ տեղը լավ չի ընտրված, ավազային հողեր են և ավելի շատ բերք ստանալ հնարավոր չէ։

Ճիշտ է, այգիները գտնվում են ավազային հողերում, 25 — 30 սմ. հողի շերտից հետո ընկած է ավազի շերտը, բայց բերքատվությունը ցածր լինելու գաղտնիքը դրանում չէր. այգեգործության զարգացման և նրա բերքատվության բարձրացման հարցերը պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության կողմից անուշադրության էին մատնված։ Այգիները չէին պարարտացվում հանքային և տեղական պարարտանյութերով։ Այգեփորը, էտը և մյուս աշխատանքները կատարվում էին անորակ, վազերը ծածկված էին մոլախոտերով։

Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը սիստեմատիկաբար քննության առնելով այգեգործության զարգացման և մշակության բարելավման հարցերը՝ կարճ ժամանակամիջոցում կարողացան այգիները հանել այդ վիճակից։ Այժմ, ամեն տարի, այգիները սիստեմատիկաբար պարարտացվում են ո՛չ միայն հանքային պարարտանյութերով, այլև գոմաղբով։ Միայն 1957 թվականին այգիների յուրաքանչյուր հեկտարին տրվել է 200 կգ. հանքային պարարտանյութ, 15 տոննա գոմաղբ, 1958 թվականին՝ 350 կգ. հանքային պարարտանյութ և 20 տոննա գոմաղբ։ Տարեցտարի բարելավվեց այգիների մշակությունը, ներդրվեց առաջավոր այգեգործների փորձը, վերջ տրվեց այգեգործության նկատմամբ եղած անհոգի վերաբերմունքին։ Տարեցտարի սկսեց բարձրանալ այգիների բերքատվությունը։ Եթե 1954 թվականին ամեն մի հեկտարից ստացվել էր 14 ցենտներ խաղողի բերք, 1957 թվականին այն հասավ 54 ցենտների, իսկ 1958 թվականին՝ 60 ցենտների։ Սակայն այս չի նշանակում, որ մենք հասել ենք այգիների բարձր բերքատվության, քանի որ մեր հարևան կոլտնտեսությունները՝ Այգեշատը, Տանձուտը, Արմավիրը հեկտարից ստանում են 110 — 120 ցենտներ բերք։ Պետք է ջանք չխնայենք այդ առաջավոր կոլտնտեսություններին հասնելու համար։



Մեր կոլտնտեսությունում կան բոլոր հնարավորությունները տնկված տարածությունների մշակությունը լավագույն ձևով կատարելու։ 1962 թվականին կունենանք 90 հեկտար, իսկ 1965 թվականին՝ 113 հեկտար բերքատու այգի և ապահովելով 75 ցենտներ միջին բերք, միայն այգեգործությունից կստանանք տարեկան երկուս ու կեսից երեք միլիոն ռուբլու դրամական եկամուտ։

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐ

Մեզ մոտ 302 հեկտար հողատարածության վրա մշակում ենք բամբակ և 15 հեկտարի վրա՝ խորդենի։ Մեր կոլտնտեսությունում բամբակը համարվում է առաջնակարգ կուլտուրա, որից ստանում ենք ամբողջ դրամական եկամտի համարյա կեսից ավելին։ Այս տարի արտակարգ խնամքով կազմակերպեցինք բամբակի նախացանքային մշակությունը։ Բոլոր տարածությունները վարից առաջ պարարտացվեցին հանքային պարարտանյութերով, հատկապես ցիանամիդով, որը պայքարի լավագույն միջոցն է «Սովկա» կոչվող վնասատուների դեմ։ Բամբակի մշակությունը կատարվեց ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում։

Կոլտնտեսությունում եղած 5 կուլտիվատորները ամրացվեցին բամբակագործական բրիգադներին. ինչպես բրիգադավարը և օղակավարը, այնպես և բրիգադային ամրացված տրակտորիստը գլխովին պատասխանատու է աշխատանքների որակի համար։ Գյուղատնտեսական գարնանային աշխատանքներն սկսվելու առաջին իսկ օրվանից պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության հիմնական խնդիրն է եղել՝ օգտագործել կոլտնտեսության բոլոր հնարավորությունները, որպեսզի անպայման կատարվի բամբակի բերքատվության պետական առաջադրանքը։ Բամբակենու պլանտացիաների մշակումը լավ կազմակերպելու, բերքը արագ և անկորուստ հավաքելու շնորհիվ կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 25 ցենտներ բամբակի հումք, 1957 թվականի 21 ցենտների դիմաց, իսկ Ս. Վարդանյանի ղեկավարած բրիգադն ստացավ 32 ցենտներ, նույն բրիգադայի օղակավարուհի Մ. Հարությունյանի օղակը՝ 35 ցենտներ բամբակի բերք։

Հիանալի արդյունք ենք ստանում նաև խորդենուց։ 1957 թվականին մշակում էինք 15 հեկտար խորդենի. միջին բերքատվությունը պլանով նախատեսված էր 85 ցենտներ, բայց մեր աշխատողները պարտավորվեցին ստանալ 130 ցենտներ. նրանք պատվով կատարեցին իրենց պարտավորությունները. մեկ հեկտարի միջին բերքը կազմեց 140 ցենտներ, իսկ Ս. Պողոսյանի բրիգադն ստացավ 160 ցենտներ։ Անցյալ տարի կոլտնտեսության մշակած 17 հեկտար խորդենու պլանտացիաներից ստացանք 2860 ցենտներ բերք, կամ

400 հազար ռուբլու դրամական եկամուտ։ Ա. Ամիրխանյանի ղեկավարած բրիգադայի աշխատողները իրենց մշակած յուրաքանչյուր հեկտար խոզգենուց ստացել են 180 ցենտներ բերք։

## ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Մի քանի տարի առաջ, երբ խոսք էր լինում հանրային անասնապահության մասին, կոլտնտեսականները դժգոհությամբ ասում էին. «Անասնապահությունը մեզ մոտ ավելորդ ճյուղ է, միևնույն է, ոչինչ չենք ստանա»։ Ստեղծված էր այն կարծիքը, որ մենք չենք կարող անասնապահությունը դարձնել կոլտնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը, որովհետև անասնապահական աշխատանքները մեզ մոտ տարվում էին հին ձևերով ու մեթոդներով, անասնապահության մեջ չէին ներդրվում ինչպես գիտության նվաճումները, այնպես էլ առաջավորների փորձը։ Ունեինք ցածր կաթնատվություն ունեցող տեղական կովեր. հոգ չէր տարվում ինչպես նրանց լավ խնամքի, այնպես էլ կերի կայուն բազայի ստեղծման մասին, այդ պատճառով էլ ցածր արդյունք էր ստացվում։

Մինչև 1953 թվականը ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը հասնում էր 900 — 1000 լիտրի։ Պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության առաջ խնդիր դրվեց հանրային անասնաբուծությունը հանել այդ վիճակից և այն դարձնել կոլտնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը։ Պարտիական կազմակերպությունը սիստեմատիկաբար քննության էր առնում և միջոցառումներ մշակում անասնաբուծության մեջ լավագույն անասնապահների փորձը արմատավորելու համար։ Գիտության և առաջավոր փորձի նվաճումները պրոպագանդելով անասնապահների շրջանում՝ կոլտնտեսականները աստիճանաբար հրաժարվեցին անասունները խնամելու հին ձևերից ու մեթոդներից։ Առաջին հերթին բարելավվեցին անասունների ցեղայնությունը, խնամքն ու կերակրումը։ Անհրաժեշտ էր ունենալ ժամանակակից անասնագոմեր, որից զուրկ էր մեր կոլտնտեսությունը։ 1953 թվականից սկսած տարեկան կառուցվում է մեկ տիպային անասնագոմ։ Բոլոր տեսակի անասուններն այժմ ապահովված են ժամանակակից անասնագոմերով։ Մթերատվության բարձրացման համար անհրաժեշտ էր ապահովել կերի կայուն բազա, որի հիմքը մեզ մոտ համարվում էր առվույտը. այն առաջներում հնձվում էր տարեկան երեք անգամ և հեկտարից ստացվում էր 70 — 75 ցենտներ բերք, իսկ դրանով հնարավոր չէր ապահովել անասունների կերակրումը։ Անհրաժեշտ էր բարձրացնել առվույտի համախառն բերքը. ցանքատարածությունների ուրիշ կուլտուրաների հաշվին ընդարձակել չէինք կարող. մնում էր միայն բարձրացնել առվույտի բերքատվությունը, 3 հարի փոխարեն կատարել 4—5 հար. այդ նպատակին մենք կարողացանք հասնել։ Վաղ գարնանը առվույտի բոլոր տարածությունները պարարտացնում ու փոցխում ենք և մինչև առվույտի վնասատուների (թրթուրի) երևալը ցանքերը փոշոտում ԴԴՏ-ով։ Այժմ առվույտը հնձում ենք 5 անգամ, յուրաքանչյուր հեկտարից ստանում 130 — 140 ցենտներ բերք և տարեկան կուտակում 1300 տոննա չոր խոտ։

Միայն կոշտ կերով հնարավոր չէր հասնել անասնաբուծության ցանկալի մթերատվության. անհրաժեշտ էր ստեղծել հյութալի կերի բազա, իսկ դրա



համար ամենից հարմարը, ամենաէժանն ու օգտակարը ճակնդեղն է, որը մեզ մոտ առանձին հողատարածություն չի զբաղեցնում. այն մենք աճեցնում ենք բանջարա-բոստանային կուլտուրաների ազատ մնացած թմբերում, և տարեկան ամբարում ենք 600—700 տոննա ճակնդեղ, մինչև ապրիլի վերջը այն պահում ենք բուրգերով։

Մի քանի տարի առաջ մենք պատշաճ վերաբերմունք չէինք ցուցաբերում եգիպտացորենի նկատմամբ, չհասկանալով դրա կարևոր նշանակությունը անասնաբուծության մեջ։ Համոզվելով, որ եգիպտացորենը շատ արժեքավոր կուլտուրա է կերի բազայի հարստացման համար, այժմ մեր կոլտնտեսությունը կատարում է տարեկան 20 հեկտար գարնանային, 40 հեկտար ամառային ցանք և յուրաքանչյուր հեկտարից ստանում 400 ցենտներ կանաչ մասսա։ Ամեն մի կովի համար միայն եգիպտացորենից պատրաստվում է 8 — 10 տոննա սիլոս։

Մեր պարտիական կազմակերպությունը, կոլտնտեսության վարչության հետ միասին օգտագործելով տնտեսության հնարավորությունները, վերջին տարիներում անասնապահությունը դարձրեց կոլտնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը։ Եթե 1953 թվականին մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կազմում էր 950 կգ., 1958 թվականին այն հասավ 2750 կգ-ի։

Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս կերի բազայի և դրան զուգընթաց կովերի կաթնատվության աճը մեր կոլտնտեսությունում։

| Տարեթիվ | Սիլոս (տոննաներով) | Խոտ (տոննաներով) | Հյութալի կեր (տոննաներով) | Մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը (կգ-ով) | Համախառն կաթը (ցենտներներով) |
|---|---|---|---|---|---|
| 1953 թ. | 250 | 700 | 70 | 950 | 1370 |
| 1954 թ. | 329 | 950 | 91 | 1390 | 2020 |
| 1955 թ. | 588 | 1022 | 473 | 2120 | 2900 |
| 1956 թ. | 780 | 1193 | 473 | 2150 | 2940 |
| 1957 թ. | 900 | 1300 | 671 | 2440 | 3170 |
| 1958 թ. | 1000 | 1300 | 800 | 2750 | 3680 |

Առաջավոր կթվորուհիներ Ա. Ավետիսյանը և Գ. Մանուկյանը իրենց խնամած յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացան 3250 կգ. կաթ։ Սակայն այս չի նշանակում, որ մենք այլևս անելիքներ չունենք. դեռևս լրիվ չեն օգտագործվում մեր հնարավորությունները ինչպես պարտիական կազմակերպության, այնպես էլ կոլտնտեսության վարչության կողմից. անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացմանը։

Անասնապահության մեջ ամենածանր աշխատանքը (մսուրային շրջանում, որը մեզ մոտ տևում է գրեթե ամբողջ տարին) գոմաղբի փոխադրումն է. այդ աշխատանքը, ինչպես և կերի փոխադրումը կատարվում է ձեռքով, որը արհեստականորեն բարձրացնում է ստացված մթերքների ինքնարժեքը և զբաղեցնում զգալի թվով կոլտնտեսականների, որոնց կարելի էր օգտագործել այնպիսի աշխատանքներում, որ հնարավոր չէ մեքենայացնել։

Այդ, ինչպես նաև մյուս միջոցառումների իրականացումը կոլտնտեսությանը հնարավորություն կտա ավելի ռացիոնալ օգտագործելու կոլտնտեսականների ուժերը և զգալի չափով իջեցնելու անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Պարտիական կազմակերպությունում հաշվի են առնված 43 կոմունիստ, որոնցից 5-ը ծառայողներ են (դպրոցում և գյուղական Սովետում), իսկ 38-ը աշխատում են կոլտնտեսությունում. դրանցից 23-ը աշխատում են դաշտում, անասնապահական ֆերմաներում և իրենց անձնական օրինակով դաստիարակում են մյուս կոլտնտեսականներին։ Կոմերիտական կազմակերպության 90 անդամներն աշխատում են մեր կոլտնտեսության տարբեր բնագավառներում. նրանց ճնշող մեծամասնությունը առաջավորներ են և հաղթահարում են կոլտնտեսային աշխատանքների բոլոր դժվարությունները։

Մեզ մոտ պարտիական կազմակերպության գործունեության հիմնական մեթոդը կոլտնտեսականների մեջ աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի արմատավորումն է։ Պարտիական կազմակերպությանը կից գործող ագիտկոլեկտիվը, որի մեջ ընդգրկված են 16 ագիտատորներ, մեր աշխատավորությանը ժամանակին է բացատրում պարտիայի ու կառավարության որոշումները, դրանք կապելով տնտեսության գործնական խնդիրների հետ։ Ագիտատորների միջոցով կազմակերպվում է ինչպես մեր կոլտնտեսության, այնպես էլ հարևան կոլտնտեսությունների առաջավորների փորձի պրոպագանդան։ Կոլտնտեսությունում լայնորեն ծավալված է սոցիալիստական մրցությունը։ Բարձր բերքի և անասնաբուծական մթերքների առատության համար մրցում են բոլորը՝ օղակը օղակի, բրիգադան բրիգադայի, կոլտնտեսականը կոլտնտեսականի հետ։

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԴՐԱՄԱԿԱՆ ԵԿԱՄՈՒՏԸ

Շնորհիվ աշխատանքային կարգապահության, արտադրության մեջ ներդրված նորարարության ու առաջավոր փորձի արմատավորման, ինչպես նաև տնտեսության մեջ եղած ռեզերվների ճիշտ օգտագործման և առաջավոր ագրոտեխնիկայի կենսագործման, տարեցտարի աճում են մեր կոլտնտեսության դրամական եկամուտները։ Այսպես, եթե 1954 թվականին կոլտնտեսությունը ստացել է երեք միլիոն 208 հազար ռուբլու եկամուտ, ապա 1958 թվականին այն հասել է հինգ միլիոն 750 հազար ռուբլու։

Վերջին 5 տարվա ընթացքում կոլտնտեսության անբաժանելի ֆոնդից շինարարության մեջ ներդրվել է 4 միլիոն ռուբլի. կառուցվել են 1 կովանոց՝ 150 գլխի համար, ուր անցկացված են ավտոմատ խմոցներ, խոշոր եղջերավոր անասունների երկու գոմ, յուրաքանչյուրը՝ 170 գլխի, մեկ ոչխարանոց՝ 1000 գլխի, մեկ խոզանոց՝ 200 գլխի, երկու թռչնանոց, յուրաքանչյուրը 500 թևի համար, 1000 տոննա տարողությամբ սիլոսի խրամատներ և նոր պահեստներ։ Կառուցվել և շահագործման են հանձնվել հիվանդանոցը, ծննդատունը, ակումբի շենքը՝ 300 տեղով. ավարտվել է միջնակարգ դպրոցի երկհարկանի շենքի կառուցումը. շենքը ամբողջությամբ կառուցվել է կոլտնտեսու-



թյան միջոցներով և որպես նվեր մեր աշխատավորությանը, շահագործման կհանձնվի մոտակա ամիսներին։ Այդ նույն ժամանակաշրջանում կոլտնտեսության բոլոր ընտանիքները (330 ընտանիք) կառուցել են նոր և հարմարավետ բնակարաններ՝ իրենց պարտեզներով։

«Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանների վերակազմման մասին» ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը մեծ խանդավառությամբ ընդունվեց մեր աշխատավորության կողմից։ Շրջանում առաջինը մեր կոլտնտեսության ընդհանուր ժողովն էր, որ որոշում ընդունեց գնել պետությունից հետևյալ գյուղատնտեսական մեքենաները. «Ստալինեց 80» մեկ հատ, «ԴՏ 54» երեք հատ, «Կաղե 35» մեկ հատ, «Ունիվերսալ» տրակտոր յոթ հատ (իրեն կցվող գործիքներով), հացահատիկի կոմբայն երկու հատ, կալսիչ մեկ հատ, սիլոս մանրացնող մեքենա մեկ հատ։

Յոթնամյակի ընթացքում տարեցտարի աճելու է կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը, յուրաքանչյուր տարի այդ նպատակի համար առանձնացնելու ենք ընդհանուր եկամտի 20—25 տոկոսը։ Նախատեսված է մինչև 1965 թվականը կառուցել գիշերօթիկ դպրոց՝ 300 երեխայի համար, բաղնիք, ճաշարան, փուռ, ձեռք բերել գյուղատնտեսական մի շարք մեքենաներ, մեքենայացնել անասնապահության մի շարք աշխատարար պրոցեսներ։

## ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

Համառոտակի նշեցինք մեր կոլտնտեսության ձեռք բերած հաջողությունները վերջին չորս-հինգ տարվա ընթացքում։ Մեծ ու լուրջ խնդիրներ են կանգնած ջանֆիդացիների առջև առաջիկա յոթնամյակում ինչպես անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու, այնպես էլ խաղողագործությունն ու պտղաբուծությունը զարգացնելու գործում։

Կոլտնտեսության յոթնամյա պլանի համաձայն 1965 թվականին յուրաքանչյուր հարյուր հեկտար հողային տարածության դիմաց արտադրվելու է միս՝ 72,3 ցենտներ, կաթ՝ 467 ցենտներ, բուրդ՝ 21,7 ցենտներ, ձու՝ 21,700 հատ։ Կովերի գլխաքանակը յուրաքանչյուր հարյուր հեկտարի հաշվին հասցվելու է 23 գլխի։ Եթե 1958 թվականին պետությանը վաճառվել է 395 ցենտներ միս, ապա 1965 թվականին վաճառվելու է 511 ցենտներ։ Մսի արտադրության մեջ զգալիորեն ավելանալու է խոզի մսի տեսակարար կշիռը. այդ նկատառումով էլ պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը միջոցառումներ են մշակել առաջիկա մեկ-երկու տարվա ընթացքում խոզաբուծությունը դարձնել տնտեսության արդյունավետ ճյուղերից մեկը։ Անասնաբուծության աճն ապահովելու նպատակով մեծ ուշադրություն է հատկացվելու կերի բազան ընդարձակելուն։ Բավական է ասել, որ 1958 թվականի 1000 տոննա սիլոսի դիմաց, 1965 թվականին պատրաստվելու է 3,500 տոննա, հիմնականում եգիպտացորենից։

Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Ջանֆիդա գյուղի Ֆրունզեի անվան կոլտնտեսության վարչության նախագահ

Կ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պարտբյուրոյի քարտուղար

# ԱԿԱՆԱՎՈՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆԵՐԻ ՈՒՂԻՆ

*Աշխատավորության կոմունիստական դաստիարակության, պարտիայի պատմության գիտական մշակման ու խոր ուսումնասիրության համար հսկայական նշանակություն ունի ՍՄԿՊ-ի և Սովետական պետության ականավոր գործիչների՝ Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտների ու զինակիցների երկերի հրատարակությունը։ Ռուսերեն լույս են տեսել Յա. Մ. Սվերդլովի, Մ. Ի. Կալինինի, Ֆ. Է. Ձերժինսկու, Ն. Կ. Կրուպսկայայի, Ա. Վ. Լունաչարսկու, Ս. Գ. Շահումյանի, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Բ. Մ. Կնունյանցի, Վ. Վ. Կույբիշևի, Ս. Ս. Սպանդարյանի, Ս. Մ. Կիրովի և ուրիշների ընտիր երկերի, հոդվածների և ճառերի ժողովածուները։ Վերջերս քաղաքական գրականության պետական հրատարակչությունը Մոսկվայում ռուսերեն լեզվով լույս ընծայեց նաև Պրոկոֆիյ Ապրասիոնովիչ Ջափարիձեի (պարտիական մականունը Ալյոշա) ընտիր հոդվածների, ճառերի ու նամակների ժողովածուն*, որի մեջ զետեղված են անվանի բոլշևիկ ռևոլյուցիոների 1905—1918 թթ. գրած տպագիր և անտիպ գործերը։*

*Պ. Ա. Ջափարիձեն (1880—1918) Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներից էր, Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտը, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար մղված պայքարի ակտիվ մարտիկը։ Նա իր ամբողջ գիտակցական կյանքը նվիրաբերեց կապիտալիզմի լծից բանվոր դասակարգի ազատագրության մեծ գործին, կոմունիզմի գործին և 1918 թվականի սեպտեմբերին Բաքվի հերոսական կոմունայի 25 այլ ականավոր գործիչների հետ միասին գազանաբար գնդակահարվեց անգլիական ինտերվենտների և նրանց էսեռական գործակալների կողմից։*

*Պ. Ջափարիձեն ՌՍԴԲՊ-ի շարքերն է ընդունվել 1898 թվականին, Թիֆլիսի կազմակերպության միջոցով։ Պարտիայի II համագումարից հետո նա դառնում է համոզված բոլշևիկ, Վ. Ի. Լենինի հավատարիմ ու հետևողական կողմնակիցը։ Ո՛չ ցարիզմի բազմաթիվ հետապնդումները, ո՛չ բանտն ու աքսորը չեն կարողանում ընկճել բոցաշունչ ռևոլյուցիոների անհողդողդ կամքը, շեղել նրան լենինյան ուղուց։ Իր պարտիական պրակտիկ գործունեության հետ միասին Ջափարիձեն զբաղվել է նաև գրական-հրապարակախոսական աշխատանքով։ Նա ակտիվորեն աշխատակցել է մի շարք կենտրոնական և անդրկովկասյան լեգալ ու անլեգալ բոլշևիկյան թերթերի հրատարակության կազմակերպմանը և խմբագրմանը։*

*«Պ. Ա. Ջափարիձեի երկերը,— ասված է ներկա ժողովածուի առաջաբանում,— դրսևորում են լենինյան դպրոցի պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների, պրոլետարիատի մասսայական ռևոլյուցիոն ելույթների բոլշևիկյան փայլուն կազմակերպչի կերպարը» (էջ 3)։ Եվ իրոք, Ջափարիձեի հոդվածները, ճառերն ու նամակները, որոնք կազմում են նրա ռևոլյուցիոն-պարտիական գործունեության անբաժանելի մասը, օգնում են դրանք ուսումնասիրողներին՝ ավելի լավ պատկերացում ունենալու ականավոր բոլշևիկի մասին, պարզելու Անդրկովկասի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումների ու պարտիական կազմակերպությունների պատմության մի շարք հարցեր։*

*Ժողովածուն բացվում է «ՌՍԴԲՊ Բաքվի կոմիտեի՝ պարտիայի III համագումարին զեկուցման համար համառոտ կոնսպեկտով», որը գրել էր Պ. Ջափարիձեն 1905 թվականի սկզբին։*

*1904 թվականի օգոստոսին ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեի որոշմամբ Ջափարիձեն պարտիական աշխատանքի էր տեղափոխվել Բաքու՝ Անդրկովկասի և Ռուսաստանի այդ խոշոր բանվորական և ռևոլյուցիոն կենտրոնը։ Նա Բաքվի բոլշևիկյան կոմիտեի անդամ էր և ղեկավար մասնակցություն ուներ բանվորական ելույթներին։ 1904 թվականի դեկտեմբերին Ջափարիձեն Բաքվի նավթարդյունաբերական բանվորների ընդհանուր գործադուլի ղեկավարներից մեկն էր. այդ գործադուլը վերջացավ արդյունաբերողների հետ բանվորների կնքած պայմանագրով, որը Ռուսաստանի պատմության մեջ առաջին կոլեկտիվ պայմանագիրն էր։ 1905 թվականի գարնանը Ջափարիձեն ընտրվում է պարտիայի III համագումարի դելեգատ՝ Բաքվի*



*բոլշևիկյան կազմակերպությունից և Գոլուբին կեղծանունով ակտիվորեն մասնակցում համագումարի աշխատանքներին։ Համագումարում նա անձամբ ծանոթանում է Վ. Ի. Լենինի հետ. այդ ծանոթությունը անգնահատելի նշանակություն է ունենում Պ. Ջափարիձեի հետագա գործունեության համար։*

*Վերոհիշյալ կոնսպեկտում, III համագումարում ունեցած նրա ելույթներում և Կովկասյան Միութենական կոմիտեին գրած նամակում (1905 թ. հունիս) արտացոլված է այն հերոսական պայքարը, որ մղում էին Բաքվի բոլշևիկները՝ մենշևիկների, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու խմբերի դեմ, պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի համար։ Համագումարի ապրիլի 22-ի (մայիսի 5-ի) նիստում սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններում բանվորների և ինտելիգենտների հարաբերությունների վերաբերյալ բանաձևի քննարկման կապակցությամբ Պ. Ջափարիձեի արտասանած ճառը արժանանում է Վ. Ի. Լենինի բարձր գնահատականին։ Այդ ճառում վճռականորեն առարկելով նրանց դեմ, ովքեր պնդում էին, որ իբր թե բանվորների մեջ չկան այնպիսի ընկերներ, որոնք կարողանային մտնել պարտիական կոմիտեների մեջ, Ջափարիձեն հայտարարում է. «...ես զարմանում եմ, երբ ասում են, թե չկան այնպիսի բանվորներ, որոնք կոմիտեականներ դառնալու ընդունակ լինեին։ Ընդհակառակը* (Լենին — Լսեցե՛ք, լսեցե՛ք), *նրանք այնքան շատ են, որ հնարավորություն չկա բոլորին մտցնել կոմիտեի մեջ...» (էջ 19)։ Բացի վերոհիշյալ ռեպլիկայից համագումարում իր ելույթներից մեկում Վ. Ի. Լենինը նշում է, որ Գոլուբինի (Պ. Ջափարիձեի) այս հայտարարությունը վերին աստիճանի արժեքավոր է։ Դեռևս իր վաղ շրջանի բանավոր ու գրավոր ելույթներում Ջափարիձեն անողոքաբար պայքարել է մենշևիկների, էսեռների, դաշնակների, վրացական նացիոնալիստների և բոլոր այն պարտիաների ու խմբերի դեմ, որոնք օպորտունիստական, նացիոնալիստական վարակ էին տարածում աշխատավորների մեջ։*

*Վերադառնալով համագումարից, Ջափարիձեն Բաքվի բոլշևիկներին ինֆորմացիա է տալիս համագումարի որոշումների մասին և շարունակում անխոնջ պայքարը անդրկովկասյան պրոլետարիատի ինտերնացիոնալ դաստիարակության ու համախմբման համար։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում և հետագա տարիներին Պ. Ջափարիձեն Ի. Ստալինի, Ստ. Շահումյանի, Ս. Օրջոնիկիձեի, Մ. Ազիզբեկովի, Ս. Սպանդարյանի և մյուս ականավոր բոլշևիկների հետ միասին մեծ դեր է կատարում Բաքվի պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարը ղեկավարելու գործում։*

*Ժողովածուում զետեղված «Անցյալ գործադուլային շարժման արդյունքները և առաջիկա պայքարը Բաքվում», «Երկու սովետ», «Նավթարդյունաբերական բանվորների միության մեկ տարին», «Մի քայլ առաջ երկու քայլ հետ», «Ինչպես էինք մենք նայում և ինչպես ենք նայում նավթարդյունաբերողների հետ բանվորների խորհրդակցությանը», «Գործազուրկների կազմակերպման հարցի շուրջը», «Բաքվի լոկաուտները», «Նավթարդյունաբերական կապիտալի հարձակումը և մեր խնդիրները», «Միությունների միավորումը», «Նավթարդյունաբերական բանվորների միությունում», «Առաջիկա համընդհանուր գործադուլի մասին», «Մեր պատասխանը (Նամակ խմբագրությանը)» և այլ հոդվածներում, գրված 1907—1909 թվականներին, Ջափարիձեն ցույց է տալիս և վերլուծում Բաքվի բանվորների հերոսական պայքարը կապիտալիստների դեմ, բոլշևիկների ղեկավար դերն այդ պայքարում, մերկացնում է ցարական ինքնակալությունը, որը ազգային թշնամանք էր սերմանում Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի մեջ՝ նպատակ ունենալով ջլատել նրա ուժերը։*

*Ցույց տալով մենշևիկների, էսեռների, դաշնակների դավաճանությունը բանվոր դասակարգի շահերին, Պ. Ջափարիձեն ընդգծում է, որ պրոլետարիատի՝ կապիտալի դեմ մղած պայքարի հաջողությունը կախված է նրա կազմակերպվածությունից, համախմբվածությունից։ Ամենագլխավոր և հիմնական խնդիրը նա համարում էր պարտիական կազմակերպությունների, պրոֆմիությունների ամրապնդումն ու ուժեղացումը։ «Ամենից առաջ և գլխավորապես,— գրում է Ջափարիձեն 1909 թվականին,— աշխատանքը պետք է վերաբերի մեր պրոլետարական սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններին, և այն աշխատանքը, որն այժմ սկսվել է, անհրաժեշտ է եռանդուն կերպով շարունակել, այսինքն՝ վերականգնել գործարանային, արհեստագործական պարտիական կազմակերպությունները և սերտորեն համախմբել ու մեկ ամբողջական և շարժուն կազմակերպության մեջ միավորել բոլոր գործարանային և շրջանային կազմակերպությունները։ Բոլոր գիտակից և ակտիվ բանվորները պետք է կանգնեն սոցիալ-դեմոկրատական պարտիայի կարմիր դրոշի տակ և տանեն համերաշխ աշխատանք մեկ կազմակերպության մեջ...» (էջ 105)։*

*Ստոլիպինյան դաժան ռեակցիայի տարիներին, ցարիզմի ուժեղացող հետապնդումների պայմաններում Պ. Ջափարիձեն, որպես Բաքվի բոլշևիկյան կազմակերպության մարտական ղեկավարներից մեկը, կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները, հմտորեն զուգակցում է*

---

* П. А. Джапаридзе — „Избранные статьи, речи и письма“, 1905—1918 гг. Москва, 1958 г., 343 стр.

լեգալ և անլեգալ աշխատանքը, խոշոր դեր է կատարում նավթարդյունաբերական բանվորների միության կազմակերպման գործում, ակտիվորեն մասնակցում բանվորական մասսաների նվաճման և նրանց ռևոլյուցիոն նոր գրոհների նախապատրաստելու համար մղված պայքարին։

Իր ռևոլյուցիոն գործունեության համար Ջափարիձեն բազմիցս ձերբակալվում է և աքսորվում։ 1910 թվականի հունիսին նա արտաքսվում է Կովկասից Դոնի Ռոստով, որտեղ, շարունակելով իր պարտիական աշխատանքը, գլխավորում է ՌՍԴԲՊ Դոնի կոմիտեն։ Այնտեղից Ջափարիձեն կապեր է հաստատում բոլշևիկների արտասահմանյան կենտրոնի հետ, հոդվածներ գրում պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ»-ին և «Ռաբոչայա գազետա»-ին։ Այդ թերթերում հրապարակված «Բաց նամակ՝ Վիեննայի «Պրավդա»-ի խմբագրությանը», «Թղթակցություն Դոնի Ռոստովից» հոդվածներում Պ. Ջափարիձեն վճռականորեն հանդես է գալիս լիկվիդատորների, օտզովիստների, տրոցկիստների դեմ, հանուն պարտիայի պահպանման ու ամրապնդման։ «Մեր պարտիան վերջին տարիներին ապրեց լուրջ ճգնաժամ,— գրում է նա,— ...և ահա այդ ծանր ժամանակ, երբ անհրաժեշտ էր լարել բոլոր ուժերը և պաշտպանել մեր պարտիան, ծայրահեղ դեպքում պահպանել ու ամրապնդել այն, մեր պարտիայի մի մասը հանդես եկավ լիկվիդատորական, իսկ մյուս մասը՝ օտզովիստական և բոյկոտիստական քարոզով։ Այդ քարոզը ջուր էր լցնում ռեակցիայի ջրաղացին և մյուս պատճառների հետ միասին մեր պարտիային տանում էր դեպի վերջնական քայքայում ու կործանում...»։ Այնուհետև Ջափարիձեն նշում է, որ «...բոլոր խմբերը, բոլոր պարտիականները պետք է գործադրեն իրենց ողջ ուժերը, որպեսզի շուտափույթ կերպով տեղերում ձևավորվեն մեր կազմակերպությունները...» (էջ՝ 116, 118)։

1911 թվականի մարտին պարտիայի Դոնի կոմիտեի նիստի ժամանակ Ջափարիձեն ձերբակալվում և երեք տարով աքսորվում է Վոլոգդայի նահանգ։ 1914 թվականի հունիսին վերադառնալով Թիֆլիս, նա ղեկավարում է տեղի բոլշևիկյան կազմակերպության աշխատանքները։ Իմպերիալիստական պատերազմի մղձավանջային տարիներին Ջափարիձեն հաստատակամորեն կանգնում է լենինյան դիրքերում։

Ղեկավարվելով պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում լենինյան դիրքորոշմամբ, Պ. Ջափարիձեն կազմակերպում է իմպերիալիստական պատերազմի դեմ ուղղված բոլշևիկյան թռուցիկների կազմման ու տպագրության գործը, պարտիայի առաջադրանքով ռևոլյուցիոն աշխատանք է ծավալում Կովկասյան ռազմաճակատի զորամասերում։ Այս շրջանում նա մեծ օգնություն է ցույց տալիս նաև Հայաստանի բոլշևիկներին։ Ժողովածուում զետեղված «Ընկեր բանվորներ» մայիսմեկյան թռուցիկը և մայիսմեկյան թռուցիկի սևագրությունը (1915 թ.), վկայում են առաջին համաշխարհային պատերազմի շրջանում Ջափարիձեի լենինյան դիրքորոշման մասին։

Ժողովածուում մեծ տեղ են գրավում Ջափարիձեի 1917—1918 թթ. հոդվածներն ու ճառերը, որոնք ցույց են տալիս Անդրկովկասում նրա պարտիական ու պետական ծավալուն գործունեությունը սոցիալիստական ռևոլյուցիայի, սովետական կարգերի հաղթանակի ու ամրապնդման համար մղված պայքարի շատ բարդ ժամանակաշրջանում։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռեվոլյուցիայի հաղթանակից հետո Պ. Ջափարիձեն վերադառնում է Բաքու և Ստ. Շահումյանի, Մ. Ազիզբեկովի, Վ. Ֆիոլետովի ու Անդրկովկասի պրոլետարիատի մյուս ականավոր ղեկավարների հետ միասին գլխավորում Անդրկովկասում ծավալվող ռևոլյուցիոն պայքարը։ «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի» և այլ թերթերում նա հրապարակում է մի շարք հոդվածներ, բանվորական մասսաների առաջ հանդես է գալիս ճառերով ու դասախոսություններով («Ռևոլյուցիան և ազգային հարցը», «Նավթարդյունաբերական բանվորների միության կազմակերպման մասին», «Մեր ընդհանուր պահանջները», «Կոլեկտիվ պայմանագիր», «Կոլեկտիվ պայմանագրի մասին» և այլն), որոնց մեջ վերլուծված են ռևոլյուցիայի մի շարք կարևորագույն հարցեր, արտացոլված է Բաքվի բանվորների հերոսական պայքարը նախահոկտեմբերյան շրջանում։

1917 թվականին Ջափարիձեն, որպես Բաքվի բոլշևիկների դելեգատ, ակտիվորեն մասնակցում է ՌՍԴԲՊ(բ) VI համագումարի աշխատանքներին և համագումարում ընտրվում բոլշևիկյան պարտիայի կենտրոնական կոմիտեի անդամության թեկնածու։ Մեծ հետաքրքրություն են ներկայացնում ժողովածուում տպագրված նրա ճառը բոլշևիկյան պարտիայի VI համագումարում և նրա զեկուցումն ու հոդվածները («Նամակ համագումարից», «Համագումարի մասնակցի տպավորությունները») այդ համագումարի արդյունքների մասին։ Բարձր գնահատելով VI համագումարի պատմական նշանակությունը, որպես սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման համագումարի, Պ. Ջափարիձեն նշում է, որ «Չնայած մեր պարտիայի բացառիկ դրությանը, չնայած բոլոր արգելքներին, համագումարը կարողացավ պատասխան տալ բոլոր կարևորագույն հարցերին»։ Մերկացնելով բուրժուական ժամանակավոր կառավարությանը, մենշևիկներին ու էսեռներին, որոնց



հետապնդումների հետևանքով պարտիայի առաջնորդ Վ. Ի. Լենինը չկարողացավ անձնական մասնակցություն ունենալ համագումարի աշխատանքներին, Պ. Ջափարիձեն «Համագումարի մասնակցի տպավորությունները» հոդվածում խոր հուզմունքով նշում է. «Ազատ» Ռուսաստանում, պրոլետարիատի պարտիայի առաջին լեգալ համագումարում չկա նա, ով իր ամբողջ կյանքը, ոչինչ չխնայելով նվիրաբերել է պրոլետարիատի իսկական դասակարգային պարտիայի ստեղծմանը, չկա նա, ով մեզ մոտ վաղուց հանդիսանում է ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի ճանաչված առաջնորդը, իսկ պատերազմի ժամանակվանից՝ առաջավոր միջազգային պրոլետարիատի լավագույն առաջնորդը. չկա նա, ով մեր պարտիայի գրեթե բոլոր համագումարներում լավագույն և հմուտ ղեկավար-նախագահն էր... Չկա Լենինը— բոլորս զգում ենք, որ նրան է պատկանում նախագահողի տեղը, շատերը չեն զսպում իրենց և նրա անունն արտասանում են՝ անեծքներ թափելով նրա բացակայության համար մեղավորների հասցեին...» (էջ 179)։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո, 1917 թվականի հոկտեմբերի 27-ին, Բաքվի շրջանի բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետի ընդլայնված կոնֆերանսում «Պետրոգրադի դեպքերի մասին» զեկուցման մեջ Ջափարիձեն հայտարարում է. «Անհրաժեշտ է նաև Բաքվում հասնել այն բանին, որ ամբողջ իշխանությունը անցնի Սովետներին», որ սկսվում է «Նոր ռևոլյուցիա, համաշխարհային մասշտաբի ռևոլյուցիա» (էջ 209)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո, 1918 թվականի հունվարին Ջափարիձեն ընտրվում է Բաքվի Սովետի նախագահ, իսկ մարտ-ապրիլին՝ մտնում Բաքվի ռևոլյուցիոն պաշտպանության կոմիտեի մեջ և ղեկավար դեր կատարում մուսավաթականների կոնտրռևոլյուցիոն խռովության ջախջախման ու Բաքվում Սովետական իշխանության ամրապնդման գործում։ Այս շրջանի նրա ճառերը, զեկուցումները, ելույթներն արտացոլում են Բաքվի պրոլետարիատի և ամբողջ Անդրկովկասի ռևոլյուցիոն ուժերի հերոսական պայքարը Անդրկովկասում Սովետական իշխանության հաղթանակի համար։ Պ. Ջափարիձեն վճռականորեն պաշտպանում է Վ. Ի. Լենինի գլխավորած Սովետական կառավարության բոլոր միջոցառումները, անարգանքի սյունին գամելով Անդրկովկասյան կոնտրռևոլյուցիոներներին՝ մենշևիկներին, դաշնակներին, մուսավաթականներին, էսեռներին, որոնք օտարերկրյա իմպերիալիստների օգնությամբ կատաղի պայքար էին մղում Սովետական իշխանության դեմ։ Օտարերկրյա իմպերիալիստներն արշավ էին սկսել երիտասարդ Սովետական Ռուսաստանի դեմ, գերմանա-թուրքական, անգլո-ամերիկյան, ֆրանսիական զավթիչները ինտերվենցիայի էին դիմել Անդրկովկասում։ Այդ կրիտիկական վիճակից դուրս գալու միակ ելքը Ջափարիձեն տեսնում էր Սովետները ճանաչելու, Սովետական Ռուսաստանին միանալու մեջ։ «Ռևոլյուցիոն Ռուսաստանը այդ Սովետական Ռուսաստանն է, և դրա համար մենք պետք է կապվենք կենտրոնի հետ»,— ասում էր նա (էջ 222)։ Թուրքական օկուպանտների առաջխաղացման ծանր օրերին, մուսավաթական կոնտրռևոլյուցիոն խռովության ջախջախումից անմիջապես հետո, 1918 թվականի ապրիլի 8-ին, Բաքվի Սովետի արտակարգ նիստում իր զեկուցման մեջ Պ. Ջափարիձեն նշում էր, որ Բաքուն դարձել է ռևոլյուցիայի օազիսը, այն բոլոր կողմերից շրջապատված է կոնտրռևոլյուցիոն խմբերով. «...այս գոտեմարտում որոշվում է Անդրկովկասի բախտը. պե՞տք է նա գտնվի բեկերի ու խաների իշխանության, Թուրքիայի պրոտեկտորատի տակ, կամ դառնա նրան լրիվ ենթակա, թե պետք է լինի ռևոլյուցիոն Ռուսաստանի ազատ մասը։ Եթե այս պայքարում հաղթանակի Բաքվի Սովետը, ապա այդ կլինի ռևոլյուցիայի հաղթանակը Անդրկովկասում, և նա կլինի ազատ Սովետական Ռուսաստանի ազատ մասը։ Իսկ եթե Բաքվի Սովետը ջախջախվի կոնտրռևոլյուցիոն ուժերի կողմից, ապա Անդրկովկասը կընկնի Թուրքիայի թաթի տակ» (էջ 224)։

Բոլշևիկների ղեկավարությամբ պրոլետարիատի մղած պայքարի հետևանքով Բաքվում հաստատվում է Սովետական իշխանություն, ստեղծվում է Ժողովրդական Կոմիսարների Սովետ՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ։ Պ. Ջափարիձեն Բաքվի Ժողկոմսովետի մեջ է մտնում որպես Ներքին գործերի ժողովրդական կոմիսար, իսկ երբ քաղաքում սրվում է պարենային դրությունը, նա կատարում է նաև Պարենավորման ժողովրդական կոմիսարի պարտականությունները։ Ժողովածուում զետեղված են Բաքվի հերոսական կոմունայի շրջանում Ջափարիձեի բազմաթիվ ճառերը, զեկուցումները, ելույթները և նրա գրչին պատկանող այլ նյութեր, որոնց մեջ խոր վերլուծության է ենթարկված Անդրկովկասի և, մասնավորապես, Բաքվի աշխատավորության մղած պայքարը ներքին կոնտրռևոլյուցիայի և օտարերկրյա ինտերվենտների դեմ։ Ընդգծելով, որ Բաքվի Սովետական իշխանությունը ռուսական ռևոլյուցիայի հենարանն է ամբողջ Անդրկովկասում, բանվորա-գյուղացիական իշխանության փարոսը, նա ցույց է տալիս Բաքվի Ժողկոմսովետի աշխատանքը սոցիալիստական միջոցառումների իրականացման ուղղությամբ։ Պարտիայի Կենտկոմը և անձամբ Վ. Ի. Լենինը մեծ ուշադրությամբ հետևում էին Անդրկովկասում ծավալվող ռևոլյուցիոն

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԳԻՏԱ-ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻՆ

Մեր երկրում սովետական սոցիալիստական կարգերի քառասունմեկամյա գոյության ամենանշանակալի արդյունքներից մեկը նոր, կոմունիստական գիտակցություն ունեցող մարդու ձևավորումն է։ Կյանքի սոցիալ-տնտեսական պայմանների արմատական փոփոխության, սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ, գիտության և կուլտուրայի աննախընթաց վերելքի ու դրանց մասսայականացման շնորհիվ մեր հասարակության անդամների ճնշող մեծամասնությունը վաղուց արդեն ազատագրվել է նախորդ հասարակարգերից ժառանգություն մնացած բազմաթիվ բացասական ու արատավոր սովորույթներից, կեղծ ու հակագիտական հավատալիքներից ու դրանց մնացուկներից։ Սակայն, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի 1954 թվականի նոյեմբերի 10-ի որոշման մեջ, «դրա հետ մեկտեղ չի կարելի հաշվի չառնել այն, որ կան նաև քաղաքացիներ, որոնք, ակտիվորեն մասնակցելով երկրի կյանքին և ազնվաբար կատարելով իրենց քաղաքացիական պարտքը հայրենիքի հանդեպ, դեռևս գտնվում են կրոնական զանազան տեսակի հավատալիքների ազդեցության տակ»։

Սովետական մարդկանց մի որոշ մասի գիտակցության մեջ կրոնական զանազան տեսակի հավատալիքների, սնահավատությունների պահպանման աղբյուրը այդ մարդկանց գիտակցության ցածր մակարդակն է, բնության և հասարակության երևույթների մասին նրանց գիտելիքների անբավարարությունը, ինչպես և հավատացյալ ազգականների ու բարեկամների ազդեցությունը։ Այդ իսկ պատճառով մեր հասարակության մեջ առանձին մարդկանց գիտակցության մեջ պահպանված կրոնական հավատալիքները կարելի է հաղթահարել գիտա-աթեիստական պրոպագանդայի միջոցով։ ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշման մեջ ուղղակիորեն նշված է, որ «...հավատացյալների մեջ խոր, համբերատար, հմտորեն կազմակերպված գիտա-աթեիստական պրոպագանդան կօգնի նրանց՝ վերջ ի վերջո ազատագրվելու կրոնական մոլորություններից»։

Վերջին տարիներս մեր երկրում տարվող գիտա-աթեիստական պրոպագանդան զգալիորեն աշխուժացել է։ Ռուսերեն լեզվով լույս են տեսել տասնյակ լուրջ գրքեր ու հարյուրավոր գրքույկներ կրոնի ծագման, կրոնական հավատալիքների ու սնահավատության առաջացման, կրոնի ու գիտության հակադրության մասին։ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերություններում կազմակերպված են գիտա-աթեիստական սեկցիաներ, կարդացվում են հարյուրավոր դասախոսություններ։ Պարբերական մամուլում հրապարակվում են հակակրոնական հոդվածներ ու ֆելիետոններ։

Առաջին հայացքից կարծես ամեն ինչ լավ է, բարեհաջող, ձևական տեսակետից ամեն ինչ արվում է։ Սակայն այդ միայն առաջին հայացքից։ Գիտա-աթեիստական պրոպագանդայի առկա ձևերի մեջ խորանալու դեպքում աչքի են զարնում մի շարք լուրջ, էական թերություններ, որոնք այս կամ այն չափով արժեքազրկում են այդ պրոպագանդան, հաճախ այն հեռացնում իր նշանակետից։

Դա վերաբերում է հատկապես մեր ռեսպուբլիկայում տարվող գիտա-աթեիստական պրոպագանդային։ Այս միտքն ապացուցելու համար փորձենք վերլուծել կոնկրետ փաստերը։



Հայերեն լեզվով վերջին տարիներս հրատարակված գիտա-աթեիստական գրականության ցանկը այնքան էլ մեծ չէ։ 1954 թվականից մինչև օրս Հայպետհրատը հրատարակել է՝ Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովի «Մտքեր կրոնի մասին», Ի. Գ. Լուպոլովի «Գիտությունը կրոնի դեմ», Վ. Պրոկոֆևի «Կրոնը գիտության և առաջադիմության թշնամին է» գրքույկների, ֆրանսիական գիտնական կոմունիստ Շառլ Էնշլենի «Կրոնի ծագումը» աշխատության և Պ. Պավլոլկինի «Կրոնական սնահավատությունները ու նրանց վնասը» գրքի թարգմանությունները։ Երևանի Պետական համալսարանի հրատարակչությունը լույս է ընծայել Հ. Բատիկյանի և Դ. Զոլախյանի «Գիտությունը և սնոտիապաշտությունը» գիտա-հանրամատչելի գրքույկը։ Հայկ. ՍՍՌ քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը հրապարակել է Լ. Հովհաննիսյանի «Կրոնը և բժշկությունը», Վարդգես Հարությունյանի «Մարքսիզմ-լենինիզմը կրոնի մասին», Ն. Գասպարյանի «Գիտության և կրոնի հակադրությունը», Գ. Գևորգյանի «Գիտությունը և կրոնը տիեզերքի կառուցվածքի մասին» գրքույկները։

Նշվածներից բացի գիտա-աթեիստական գրականության ցանկի մեջ կարելի է մտցնել նաև բնության առանձին երևույթներին նվիրված մեկ-երկու տասնյակ գիտա-հանրամատչելի գրքույկներ, որոնք վերջին տարիներս լույս են ընծայվել ռեսպուբլիկական հրատարակչությունների կողմից։

Հրատարակված գործերն, անտարակույս, կատարել և կատարում են դրական դեր մեր երիտասարդության գիտա-աթեիստական դաստիարակության գործում, նրան ծանոթացնում են կրոնի մասին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հիմնական ասույթների և ժամանակակից գիտության կարևորագույն նվաճումների հետ։ Բայց մի՞թե սրանով են սահմանափակվում գիտա-աթեիստական պրոպագանդայի խնդիրները։

Մի կողմ թողնենք այդ աշխատություններում տեղ գտած տեսական, փաստական առանձին թերությունները։ Ի միջի այլոց նշենք, որ այդպիսի թերությունները, ցավոք սրտի, քիչ չեն։ Օրինակ, Վ. Հարությունյանի գրքույկում հասարակական ուժերի նկատմամբ գերբնական հավատալիքների առաջացումը հեղինակը բացատրում է նրանով, որ «...մարդը, բացի իր տոհմի անդամներից, մնացած բոլոր խմբերին պատկանող անձերից ավելի վատ վերաբերմունքի էր հանդիպում, քան վայրի գազաններից» (էջ 3)։ Կրոնի ծագումը նա կապում է մարդու հասարակական կյանքի սկզբնավորման հետ և նշում, որ կրոնի ծագման ժամանակաշրջանը «Փաստորեն դա նախամարդու ամենավաղ, մանկական շրջանն էր» (էջ 5)։ Այնինչ կրոնը, ինչպես քաջ հայտնի է, ծագել է շատ ավելի ուշ շրջանում։ Այնուհետև, հեղինակն այն կարծիքն է հայտնում, որ դեռևս բազմաստվածության շրջանում «Մարդիկ սկսում են հետզհետե հրաժարվել շատ աստվածներից։ Նրանք իրենց կյանքի ընթացքում զանազան առիթներով աստվածներին դիմելով համոզում էին, որ այդ աստվածները ոչնչով իրենց չեն օգնում, որ իրենց կատարած զոհաբերությունները զուր են անցնում։ Սկզբում մարդիկ բացարձակ կերպով սկսեցին դժգոհել այդ աստվածներից, ապա հասարակական պարսավանքի ենթարկել նրանց, իսկ հետագայում էլ հրաժարվում էին այդպիսի աստվածներին երկրպագելուց» (էջ 12)։ Այս պարբերությունից կարելի է հանգել այն եզրակացության, որ մարդիկ հրաժարվել են այն աստվածներից, որոնք իրենց չեն օգնել, բայց շարունակել են հավատալ մյուս աստվածներին, որոնք, ըստ հեղինակի մտքի, նրանց օգնել են, արդարացրել նրանց արված զոհաբերությունները։ Եթե Վ. Հարությունյանի այս միտքը ճիշտ լիներ, ապա մարդկությունը վաղուց ի վեր պետք է գագարեր աստվածներին հավատալուց, որովհետև չկան և չեն կարող լինել մարդուն օգնող աստվածներ այն պարզ պատճառով, որ այդ բոլոր աստվածները մարդու ստեղծագործությունն են։

Նման կարգի և, մանավորապես, փաստական անճշտություններ կան նաև մի քանի այլ գրքույկներում։ Սակայն բավարարվենք բերվածով։

Մեր կարծիքով, կարևորը ոչ այնքան այս կարգի թերությունների բացահայտումն է, որքան լույս տեսած գիտա-աթեիստական գրականության ընդհանուր բնույթի հարցը։ Վերջին տարիներս լույս տեսած համարյա թե բոլոր հակակրոնական գրքույկները (բացառությամբ Շ. Էնշլենի, Ի. Սկվորցով-Ստեպանովի և Լ. Հովհաննիսյանի աշխատությունների) գրված են, որքան էլ այդ տարօրինակ թվա, ոչ հավատացյալ մարդկանց, աթեիստների համար։ Ավելի ճիշտ՝ դրանք կարող են ազդել միայն աթեիստների վրա, իսկ հավատացյալների վրա դժվար թե կարողանան լուրջ ազդեցություն գործել։

Ինչի՞ վրա է հիմնվում այս խիստ պնդումը։ Ամենից առաջ այն բանի վրա, որ այդ գրքույկների հեղինակները ըստ էության վատ գիտեն կրոնը և այն քննադատում են վերացականորեն, մակերեսորեն, շատ դեպքերում օգտվելով երկրորդ ու երրորդ ձեռքերի տվյալներից։ Համարյա թե բոլոր գրքույկներում, որպես կանոն, բերվում ու քննադատվում են միայն քրիստոնեական կրոնի դրույթները աշխարհի և մարդու արարչագործության մասին և մի քանի (ամենուր համարյա թե միևնույն) պատվիրանները։ Այնուհետև, խոսելով կրոնական սնահավատությունների, հավատալիքների վնասի մասին, եկեղեցու ու կղերականների բացասական դերի մասին, հեղինակները բավարարվում են կամ ընդհանուր հայտարարություններով, կամ էլ, լավագույն դեպքում, օրինակներ են բերում այլ երկրներից (ԱՄՆ-ից, Իտալիայից), ինչպես նաև գեղարվեստական գրականությունից։ Վերջապես, ոչ մի աշխատության մեջ կոնկրետ չեն քննադատվում այն առանձնահատուկ կրոնական հավատալիքները, կրոնական այն աղանդները, որոնք գոյություն ունեն մեզ մոտ՝ Հայաստանում։ Ինչքան ուզեք փաստեր են բերվում կաթոլիկ եկեղեցու և Վատիկանի, Ամերիկայի Միացյալ Նահանգներում կրոնական զանազան աղանդների գործունեությունից, սակայն ոչ մի փաստ չի բերվում Հայաստանում գոյություն ունեցող կրոնի ձևերի ու աղանդների գործունեությունից։ Խոսվում է ընդհանրապես հեքիմների ու գրբացների խաբեության, սրբավայրերում կատարվող կեղծիքների մասին, սակայն չի բերվում ոչ մի կոնկրետ փաստ, Հայաստանում եղած որևէ դեպք։ Օրինական հարց է ծագում՝ ընդհանուր բնույթի, կոնկրետ փաստերից զուրկ նման պրոպա-

գանդան կարո՞ղ է արդյոք ազդել հավատացյալների վրա։

Կրոնական հավատը թեև անհեթեթ, սակայն առանձին մարդկանց գիտակցության մեջ խոր նստած երևույթ է և այն հաղթահարելը չափազանց դժվար գործ է։ Ասում ենք չափազանց դժվար, որովհետև հավատը չի ընդունում, մերժում է գիտության, բանականության տվյալները։ Հավատը կույր է։ Այն հաղթահարելու համար անհրաժեշտ է ամենից առաջ խարխլել, սասանել այն, հարկավոր է հավատացյալի մտքի մեջ կասկած առաջացնել կրոնական դոգմաների, պատվիրանների ճշմարտության նկատմամբ։ Դրանից հետո միայն կարելի է նրա մեջ ավելի ու ավելի խորացնել կասկածը և աստիճանաբար համոզել կրոնական հավատալիքների սնանկության, անհեթեթության մեջ։ Դա դժվար գործ է, որովհետև դրա համար անհրաժեշտ է քաջ գիտենալ կրոնի դրույթներն ու նրանց աստվածաբանական մեկնությունները, ընդ որում ավելի քաջ, քան շարքային հավատացյալները։ Իսկ մեր հեղինակների մեծ մասը, ցավոք սրտի, այն կարծիքին է, որ կարելի է համոզիչ կերպով կրոնը քննադատել, առանց իմանալու այն։

Հավատացյալների վրա գիտության բազմաթիվ տվյալներ դրական ազդեցություն կարող են գործել միայն այն ժամանակ, երբ խախտվել է նրանց հավատը։ Որոշ հեղինակներ ու պրոպագանդիստներ միամտորեն կարծում են, թե հավատացյալները բոլորովին ոչինչ չգիտեն գիտության նվաճումների մասին և դրա համար էլ դեռևս հավատում են կրոնին։ Դա ճիշտ չէ, նրանք այս կամ այն չափով գիտեն, հաղորդակից են գիտության նվաճումներին, սակայն կույր հավատը արգելում է դրանք ըմբռնել, սահմանափակում է դրանց էությունը հասկանալը։

Իսկապես ազդեցիկ, կրոնի նկատմամբ կույր հավատը խարխլող երկեր կարելի է ստեղծել միայն կրոնի ու կրոնական հավատալիքների մանրակրկիտ գիտական հետազոտության միջոցով։ Իսկ դրա համար անհրաժեշտ է հակակրոնական գրականություն ստեղծել հենց հավատացյալների համար և ոչ թե միայն պրոպագանդիստների համար, ինչպես արվում է մինչև այժմ։ Դրա համար հայերեն հրատարակվող գիտա-աթեիստական գրականությունը պետք է լրացվի մեզ մոտ տարածված հավատալիքների, մեզ մոտ պահպանվող կրոնական ուղղությունների ու աղանդների մասին, ընդ որում կյանքից վերցրած կոնկրետ փաստերի հիման վրա գրված հակակրոնական աշխատություններով։ Գիտա-աթեիստական պրոպագանդան ղեկավարող օրգանները և հրատարակչությունները պետք է կողմնորոշեն մեր հեղինակներին, պահանջեն նրանցից՝ ուսումնասիրել կրոնական տեսությունն ու պրակտիկան և աշխատություններ ստեղծել ոչ թե սնահավատությունների մասին ընդհանրապես, այլ, օրինակ, Հայաստանում այս կամ այն չափով տարածված պրիզունների, կրիկունների, յոթերորդ օրվա ադվենտիստների և այլ աղանդների մասին, մեր երկրում պահպանված մատաղի և այլ սովորությունների ծագման մասին, մեզ մոտ եղած «սրբավայրերի» ու մեզ մոտ պաշտվող «սրբերի» առաջացման մասին։ Հավատացյալին կարելի է համոզել միայն իր տեսածի, իր իմացածի մասին եղած կոնկրետ փաստերով. այս չպետք է մոռանալ։ Պետք է միշտ հիշել Վ. Ի. Լենինի ցուցմունքն այն մասին, որ անհրաժեշտ է «...մասսաներին տալ ամենաբազմազան նյութեր աթեիստական պրոպագանդայի վերաբերյալ, նրանց ծանոթացնել կյանքի ամենատարբեր ասպարեզներից բերած փաստերի հետ, մոտենալ նրանց և՛ այսպես, և՛ այնպես, որպեսզի հետաքրքրենք նրանց, արթնացնենք նրանց կրոնական քնից, թափահարենք նրանց ամենաբազմազան կողմերից, ամենատարբեր եղանակներով և այլն» (Երկեր, հ. 33, էջ 270)։

Այնուհետև, գիտության նորագույն նվաճումները պրոպագանդող գրականության հետ միասին անհրաժեշտ է հրատարակել նաև համաշխարհային հակակրոնական գրականության լավագույն երկերը, կրոնի առաջացման մասին եղած լավագույն գիտական հետազոտությունները։ 1922 թվականին գրելով մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին՝ Վ. Ի. Լենինը անհրաժեշտ էր համարում անպայման հրատարակել 18-րդ դարի ֆրանսիական մատերիալիստների աշխույժ, կենդանի, սրամիտ, հակակրոնական երկերը և բուրժուական առաջադեմ գիտնականների հետազոտությունները կրոնի մասին։ Եթե ռուսաց լեզվով այդ բանն այս կամ այն չափով արդեն արված է (և արվում է), ապա հայոց լեզվով այդ ուղղությամբ շատ քիչ բան է արված։ Մինչև այժմ հայ ընթերցողը անծանոթ է Դիդրոյի, Հոլբախի, Վոլտերի հակակրոնական հիանալի երկերին, Լաֆարգի հակակրոնական աշխատություններին։

Կրոնական հավատալիքների հաղթահարման համար մղվող պայքարում լուրջ օգնություն կարող են մատուցել նաև Դիդրոյի «Միանձնուհին», Լեսաժի «Կաղ սատանան» և բազմաթիվ այլ գեղարվեստական գրքեր, որտեղ բացահայտվում են կրոնական հավատալիքների սնանկությունն ու եկեղեցու կեղծիքները։ Սակայն այդ գրքերը հայերեն չեն հրատարակվում։ Ավելին, մինչև այժմ հրապարակի վրա չկա հայ գրողների կրոնական հավատալիքները մերկացնող երկերի թեկուզ մի փոքրիկ ժողովածու։ Էլ չենք խոսում այն մասին, որ մինչև այժմ հայերեն չի հրատարակված Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կրոնի մասին» ժողովածուն։

Ամսագրերում և թերթերում հրապարակվող գիտա-աթեիստական հոդվածների վրա չարժե երկար կանգ առնել. դրանք միայն դեպքից դեպք են լույս տեսնում և, հիմնականում, ընդհանուր բնույթի հարցեր են շոշափում։ Տեղական նյութի, կոնկրետ փաստերի վրա գրված հոդվածները հազվագյուտ են։ Բացի այդ, մեր պարբերական մամուլի էջերում չի պրոպագանդվում հայերեն և այլ լեզուներով լույս տեսնող գիտա-աթեիստական և գիտա-հանրամատչելի գրականությունը։ Թերթերն ու ամսագրերը, որպես կանոն, անդրադառնում են միայն այն գիտա-հանրամատչելի գրքերին, որոնց մեջ կան կոպիտ սխալներ և նկատվում է անփութություն, իսկ հաջողվածների մասին գերադասում են լռել։ Մի՞թե դա արդարացի է։ Իսկ ո՞վ պետք է պրոպագանդի այդ երկերը, հանձնարարի այն ընթերցող լայն մասսաներին, մասսայականացնի, եթե ոչ մեր պարբերական մամուլը։



Գիտա-աթեիստական պրոպագանդայի կարևորագույն օղակներից մեկն էլ բանավոր պրոպագանդան է։ Կենդանի, աշխույժ, գիտական փաստերով հագեցված զեկուցումը, զրույցը հավատացյալների վրա լուրջ ազդեցություն է թողնում։ Բայց այդպիսի՞ն են արդյոք մեզ մոտ կազմակերպվող դասախոսությունները։ Դժբախտաբար, դրանք տառապում են նույն թերություններով, ինչ որ գրավոր պրոպագանդան։ Դրանք ստանդարտ են, պտտվում են միշտ նույն թեմաների շուրջը («Կրոնը և գիտությունը տիեզերքի կառուցվածքի մասին», «Կրոնի և գիտության հակադրությունը», «Սնոտիապաշտությունների վնասը») և կարդացվում են, ըստ էության, նույնպես ոչ հավատացյալների համար։

Ինչպե՞ս են կազմակերպվում այդ դասախոսությունները։ Դասախոսը գալիս է շրջան, նրան ուղարկում են որևէ գյուղ կամ հիմնարկ, և աշխատանքից անմիջապես հետո, կամ ընդմիջումի ժամանակ, առանց որևէ ցուցադրական նյութի, նա կանգնում է հոգնած մարդկանց առաջ և խոսում այն մասին, որ կրոնը հաշիշ է, որ աստված մարդկանց հնարանքն է, որ կրոնական բոլոր հավատալիքները հակագիտական են և այլն, և այլն։ Տեղական կյանքից բերված և ոչ մի փաստ, տվյալ տեղում տարածված կրոնական ոչ մի հավատալիք դասախոսը չի վերլուծում։ Խոսելով տիեզերքի կառուցվածքի մասին՝ նա ոչ մի տեսանելի, շոշափելի ապացույց չի բերում։ Ազդո՞ւմ է արդյոք այդ ձևով կազմակերպված դասախոսությունը ներկա գտնվող հավատացյալների վրա։ Անտարակույս չի ազդում։ Ավելին, այն երբեմն խրտնեցնում է հավատացյալներին գիտա-աթեիստական պրոպագանդայից և պատճառ դառնում, որ նրանք այդպիսի զեկուցումների չհաճախեն։ Ահա մի փոքրիկ փաստ, որին ականատես է եղել տողերիս գրողը մեր մի հեռավոր շրջանում։ Գորգագործական արտելի բանվորուհիները, աշխատանքից հետո, հենց իրենց աշխատանքի վայրում, լսում էին Երևանից եկած դասախոսի զեկուցումը գիտության և կրոնի հակադրության մասին։ Կես ժամ տևող զեկուցման ժամանակ ոչ ոք տեղից ձայն չհանեց, բոլորը կարծես ուշադիր լսում էին զեկուցողի դատողությունները կրոնական հավատալիքների վնասակարության մասին։ Բայց ահա զեկուցումը վերջացավ, և զեկուցողը ունկնդիրներին շնորհակալություն հայտնեց ուշադրության համար։ Այդ ժամանակ տեղից վեր բարձրացավ մի տարեց բանվորուհի և բարձրաձայն ասաց.

— Շնորհակալությունը՝ շնորհակալություն, բայց էլ ոչ մի տեղ էդ զեկուցումը չկարդաս։

Երևի դրանից գոտեպնդված, վեր թռավ մի երիտասարդ աղջիկ ու տեղից բացականչեց.

— Քո ի՞նչ գործն է, թե ես իմ ճուտը որտեղ կմորթեմ։ Կուզեմ իմ դառը կմորթեմ, կուզեմ սրբի դառը կմորթեմ։ Քեզ ի՞նչ։

Շփոթված զեկուցողը շտապեց հեռանալ...

Այդպիսի զեկուցումները, որոնք դժբախտաբար սովորական են, ոչ թե օգուտ, այլ ավելի շատ վնաս են տալիս։

Վերևում նշվեց գիտա-աթեիստական զեկուցումների կազմակերպման մի թերությունը՝ այն, որ դրանք, որպես կանոն, անց են կացվում աշխատանքից հետո, երբ ունկնդիրները հոգնած են և քիչ են տրամադիր խորանալու հաղորդվող նյութի էության մեջ։ Մյուս թերությունն այն է, որ զեկուցումների ժամանակ ցուցադրական նյութեր համարյա չեն օգտագործվում։ Իսկ թե ինչպես դրանք կարելի է օգտագործել և ընդհանրապես ինչպես պետք է կազմակերպել գիտա-աթեիստական զեկուցումը, հիանալի կերպով ցույց է տրված «В помощь политическому самообразованию» ամսագրի 1958 թվականի № 11-ում տպագրված Մոսկվայի ինստիտուտներից մեկի պրոֆեսոր Վ. Տեր-Օգանեզովի «Խոսակցություն գիտության և կրոնի մասին» վերնագրով նամակում։ Այնտեղ պատմվում է, թե ինչպես «Ի՞նչ է ասում գիտությունը և ի՞նչ է ասում աստվածաշունչը տիեզերքի կառուցվածքի մասին» թեմայով զեկուցող դասախոսը նախօրոք զրույց է ունենում ազնիվ կոլտնտեսականների, բայց խորապես հավատացյալ մարդկանց հետ, նրանց մասնակից դարձնում իր զեկուցմանը, ինչպես է նախապատրաստում զեկուցման տեղը։ Դասախոսության ընթացքում նա անուշադիր չի թողնում տեղից տրված ոչ մի

լուծման գործում սովետական երիտասարդության ակտիվ մասնակցության անհրաժեշտությունը։ Երիտասարդության ներկայացուցիչների հետ ունեցած զրույցների ժամանակ Ն. Ս. Խրուշչովը լսում է երիտասարդ մարդկանց կարծիքները, նրանց առջև պարտիայի անունից դնում է նոր պահանջներ, ցույց է տալիս այդ պահանջներն իրականացնելու ուղիները։

Ժողովածուն բացվում է 1954 թ. փետրվարի 22-ին Կրեմլում, խոպան ու խամ հողերի յուրացման համար կոմերիտականների առաջին խմբի ուղևորմանը նվիրված Մոսկվա քաղաքի և Մոսկվայի մարզի կոմերիտականների ժողովում Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառով։

Սովետական երիտասարդության մեջ լայն արձագանք է գտել խոպան ու խամ հողերի յուրացման մասին պարտիայի կոչը։ Եվ ահա առաջինը դեպի Արևելք, դեպի խոպան հողերն են մեկնում Մոսկվա քաղաքի և Մոսկվայի մարզի կոմերիտականները։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովը պարտիայի ու կառավարության անունից ողջունում է մեծ սխրագործության ելած երիտասարդ հերոսների առաջին խմբին։ Նա պարզ ու համոզիչ կերպով ցույց է տալիս երիտասարդության մասսայական-կամավորական շարժման համաժողովրդական նշանակությունը, դրա պատմական իմաստը։ Երկրին հարկավոր է ավելի շատ հացահատիկ, ավելի շատ միս, ավելի շատ կաթ։ Եվ լավ է, որ երիտասարդությունն իր գործն է համարում այդ, կամավոր կերպով, իր սրտի թելադրանքով մեկնում է՝ լուծելու այդ դժվարին խնդիրը։ Ն. Ս. Խրուշչովը խորհուրդ է տալիս երիտասարդներին վաղօրոք իրենց հերոսներ չերևակայել, այլ խնդիր է դնում, որ նրանք դժվարին պայմաններում, դժվարությունները հաղթահարող աշխատանքով ապացուցեն, որ իսկապես հերոսներ են։

Ն. Ս. Խրուշչովի ճառերը պարտիայի գործնական առաջադրանքներն են երիտասարդությանը։ Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել Արևելքում ստեղծել ինդուստրիայի և էներգետիկայի նոր, հզոր օջախներ։ Կոմերիտականներն ու երիտասարդները այդ պետք է համարեն իրենց պատվի գործը, պետք է իրենց ուժերը տրամադրեն այդ մեծ խնդրի կենսագործմանը։

«Կոմերիտմիությունն իր շարքերում ունի 18 և կես միլիոն մարդ,— ասում է Ն. Ս. Խրուշչովը։— Հապա կոմերիտականները մի՞թե իրենց միջից չեն կարողանա առանձնացնել 300—500 հազար մարդ։ Կարծում եմ, որ լրիվ չափով կկարողանան։ Մենք հավատում ենք կոմերիտմիության ու երիտասարդության ուժերին, հավատում ենք նրանց մարտունակությանը» (էջ 73—74)։

Իր ճառերում Ն. Ս. Խրուշչովը երիտասարդության հետ քննարկում է երկրի տնտեսական շինարարության խնդիրները, նրան հաղորդում պարտիայի մտահղացումները։ Նա երիտասարդությունից չի թաքցնում մեր առաջընթացի դժվարությունները, ընդհակառակը, շեշտը դնում է հենց այդ դժվարությունների վրա, գլխավորը համարելով դրանք հաղթահարելը։

Ուշադրությունը բևեռելով երկրի տնտեսական շինարարության խնդիրների վրա, Ն. Ս. Խրուշչովը միաժամանակ անդրադառնում է երիտասարդության կոմունիստական դաստիարակության կարևոր հարցերին։



ՀամԼԿԵՄ քառասնամյակի առթիվ Հայպետհրատը ավարտեց «Լենինյան կոմերիտմիության հինգ շքանշանները» սերիայով գրքույկների թարգմանական հրատարակությունը։ Անցյալում լույս էին տեսել այդ սերիայի երեք գրքույկները՝ «Կարմիր դրոշի շքանշան կոմերիտմիությանը», «Լենինի շքանշան կոմերիտմիությանը», «Լենինի երկրորդ շքանշան կոմերիտմիությանը»։

Վերջերս լույս տեսան «Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշան կոմերիտմիությանը» և «Հինգերորդ շքանշանը կոմերիտմիության դրոշին» գրքույկները։ «Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշան կոմերիտմիությանը» գրքույկում պատմվում է առաջին հնգամյակի տարիներին կոմերիտմիության կատարած աշխատանքի ու պայքարի մասին։ Այստեղ վառ ու համոզիչ փաստերի միջոցով ցույց է տրվում այն կարևոր ու հիմնականը, որ կատարել է կոմերիտմիությունը երկրի ինդուստրացման առաջին տարիներին։ Գրքույկում հանգամանորեն խոսվում է 1929 թվականին մեր երկրում սոցիալիստական մրցությունը նախաձեռնելու և ծավալելու գործում կոմերիտմիության կատարած մեծ դերի մասին։ Առանձին տեղ է տրված դեպի նորակառույցները կոմերիտականների կատարած առաջին մոբիլիզացիայի լուսաբանմանը, ցույց է տրված մասնավորապես Ստալինգրադի և Խարկովի տրակտորային գործարանների, Ուրալ-Կուզնեցկի կոմբինատի, Կոմսոմոլսկ և այլ քաղաքների կառուցման համար կոմերիտականների կատարած մեծ աշխատանքը։

«Հինգերորդ շքանշանը կոմերիտմիության դրոշին» գրքույկը մի ծավալուն հերոսական ակնարկ է, հաճելի մի պատմվածք կոմերիտմիության երեկվա ու այսօրվա գործերի մասին։ Այս գրքույկի նյութը մարմնացումն է խոպան ու խամ հողերը յուրացնելու առթիվ Կոմունիստական պարտիայի որոշումների ու երիտասարդությանը ուղղած կոչերի, մարմնացումը



պարտիական այն առաջադրանքների, որոնց մասին խոսում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր «Երիտասարդությո՛ւն, դեպի նոր սխրագործություններ» ժողովածուում ամփոփված ճառերում։

Կոմերիտմիությունը կատարեց պատմական մեծ սխրագործություն։ Գրքույկում շարադրված նյութը վառ գույներով ցույց է տալիս այն հերոսականությունն ու ռոմանտիկան, որով ապրում է սովետական երիտասարդությունը այսօր։ Դրանով իսկ, շարադրված փաստերը, երկրի բոլոր ծայրերի բազմաթիվ կոմերիտական կազմակերպությունների կյանքից բերված օրինակները մի ուժգին հարված են այն սկեպտիկներին, որոնք չեն տեսնում կոմերիտմիության կյանքի այսօրվա մեծ հերոսականությունը։ Խոպան ու խամ հողերի յուրացման, Արևելքի նորակառույցների շինարարության, պարենային և արդյունաբերական ապրանքների առատության համար յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության կատարած ամենօրյա մեծ աշխատանքի մեջ թաքնված է մեր օրերի մեծ ռոմանտիկան և հերոսականությունը։

Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը հրատարակել է Հ. Ավետիսյանի «Հայաստանի կոմերիտմիությունը սոցիալիզմի կառուցման համար մղված պայքարում» գրքույկը, իսկ մինչ այդ Գիտությունների ակադեմիայի «Տեղեկագիր»-ում տպագրվել էին նույն հեղինակի երկու ծավալուն ուսումնասիրությունները՝ «Հայաստանի կոմերիտմիության պատմությունից (ՀԼԿԵՄ-ը առաջին հնգամյակի առաջին տարում)» և «Հայաստանի Լենինյան Կոմերիտմիության մասնակցությունը ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացման գործում առաջին հնգամյակի տարիներին»: Անցյալում այս հարցերով մեր պատմաբաններից ոչ ոք չի զբաղվել և հրապարակի վրա չի եղել առանձին, թեկուզ և փոքրածավալ մի ուսումնասիրություն։ Հ. Ավետիսյանը նախ տալիս է ՀԼԿԵՄ պատմության տվյալ էտապների սիստեմատիկ շարադրանքը. ծավալի փոքրությունը նրան չի խանգարել պատասխան տալու գլխավոր հարցերին։ Դրա հետ մեկտեղ հեղինակը բարձրացնում և գիտական շրջանառության մեջ է դնում մի շարք նոր նյութեր, որոնք լայնորեն օգտագործվեցին և՛ մեր մամուլում, և՛ ՀամԼԿԵՄ 40-ամյակին նվիրված դասախոսություններում ու պրոպագանդիստական աշխատանքի ժամանակ։ Այդ նույն ընկերությունը հրատարակել է Կամո Ուղումյանի «Լենինյան կոմերիտմիության մարտական ուղին» գրքույկը, որպես նյութեր զեկուցողների համար։ Հեղինակը, օգտվելով հրապարակի

վրա եղած տարբեր աղբյուրներից, աշխատել է կազմել մի ամփոփ տեքստ, որը գործնական օգնություն լինի զեկուցողների և դասախոսությունների համար։ Եվ դա նրան հաջողվել է։

Երիտասարդության պանծալի տոնի առթիվ կոմերիտական գրականությունը հարստացավ «Լուսիկ Լիսինյան. Հուշեր, նամակներ, քաղվածքներ օրագրերից» ժողովածուով ևս։ Սրանով Հայպետհրատը երկրորդ գործն է հրատարակում երիտասարդ ականավոր ռևոլյուցիոներներից մեկի մասին։ Հայպետհրատի լույս ընծայած այս ժողովածուի կազմող Ռ. Փաշինյանը օգտագործել է անցյալում հրապարակված նյութերը, ավելացնելով իր կողմից ձեռք բերված նոր նյութերը։ Ժողովածուն, Ռ. Փաշինյանի առաջաբանով և ծանոթագրություններով հանդերձ, բացի փաստական նյութերի և հիշողությունների մի արժեքավոր գումար լինելուց, մի կենսագրական ուսումնասիրություն է, որը, անկասկած, կարժանանա ընթերցողների լայն խավերի հետաքրքրությանը։

ՀԼԿԵՄ պատմության մասին «Ավանգարդ» թերթում հոդվածների մի ամբողջ շարքով հանդես եկավ պատմական գիտությունների թեկնածու Հ. Պողոսյանը: Այստեղ լուսաբանվում է ՀԼԿԵՄ պատմության անցյալում քիչ ուսումնասիրված, ավելի ճիշտ ուրիշների կողմից չուսումնասիրված մի կարևոր էտապ, որի գիտական մշակման ուղղությամբ դեռ տարիներ առաջ իր շնորհակալ աշխատանքն է սկսել Հ. Պողոսյանը։ Հոդվածների այդ շարքի միջոցով ընթերցողները շատ նորություններ իմացան Սովետական Հայաստանի գյուղատնտեսության կոլեկտիվացման գործում կոմերիտմիության ունեցած մասնակցության մասին։

ՀԼԿԵՄ պատմության հետագա լուսաբանման համար լավ նյութ են հանդիսանում նաև կոմերիտմիության անցյալ գործունեության մասին հին բոլշևիկների և հին կոմերիտականների հրապարակած հուշերը։ «Կոմսոմոլեց» թերթը տպագրել է ընկ. Ս. Օրբելյանի հուշերը, որտեղ հեղինակը իր տպավորություններն ու որոշ փաստեր է հաղորդում Զանգեզուրի կոմերիտական կազմակերպության անցյալի մասին։

«Ավանգարդ» թերթում տպագրված է պահեստի գնդապետ Ս. Սարգսյանի «Սեկուշը» հոդվածը։ Հեղինակը դրանով ընթերցողների ուշադրությանն է հանձնում Դարալագյազի նախկին կոմերիտական ակտիվիստ Սեկուշ Սարգսյանի հերոսական կյանքի առանձին էպիզոդներ, որոնց մասին արժե, որ մեր կոմերիտականները իմանան և հիշեն։ Սեկուշ Սարգսյանը պարտիայի գործին նվիրված անվախ մի կոմերիտական էր, որը խիզախորեն մարտնչում

ձակորեն դիմում է դատավորներին,— երբ դրսում ռևոլյուցիա է. դուք մտադիր եք պաշտպանել մի ռեժիմ, որին պատմությունը դատապարտել է կործանման։ Դատեցեք ուրեմն, պարոնայք դատավորներ, իսկ մեզ ձեզ հետ կդատի ռևոլյուցիան»։

Ժողովածուում տպագրված են նաև Բ. Կնունյանցի ճառերը Պետերբուրգի բանվորների դեպուտատների Սովետի դատական պրոցեսում (1906 թ. սեպտեմբերին)։

Նշված ժողովածուում տեղ են գտել ռուսական առաջին ռևոլյուցիայի շրջանում բոլշևիկների տակտիկական գիծը պրոպագանդող մի շարք հոդվածներ («Ցարական մանիֆեստը ազատության մասին և մեր պահանջները», «Կազմակերպության մասին», «Դիմակը պատռված է», «Ռևոլյուցիան գալիս է», «Նորից մեկ բուրժուական պարտիա» և այլն), որոնք ժամանակին տպագրվել են «Новая жизнь» և այլ բոլշևիկյան թերթերում, ինչպես նաև մի շարք առանձին տպագրված թռուցիկներ («Կազմակերպվեցե՛ք», «Անհրաժե՞շտ է բանվորին քաղաքական պայքար» և այլն)։

«Ինչպիսի ընտրական սիստեմ է պետք բանվոր դասակարգին» աշխատությունում, որն առանձին գրքույկով առաջին անգամ հրատարակվել է 1906 թվականին, Կնունյանցը փաստական հարուստ նյութերով ցույց է տալիս բուրժուական ընտրական սիստեմի ամբողջ սնանկությունը և բանվոր դասակարգի շահերի պաշտպանման միակ հնարավորությունը տեսնում է վերջինիս կազմակերպվածության, և շահագործող դասակարգերի դեմ մղվող պայքարում նրա վճռականության մեջ։

«Բանվորների դեպուտատների առաջին Սովետը» գրքույկը, «Բանվորների դեպուտատների Սովետ թե՞ պարտիա», «Պայքար 8-ժամյա բանվորական օրվա համար» և այլ հոդվածներում Կնունյանցը ամփոփում է Պետերբուրգի Սովետի պայքարի փորձը, պատասխանում պրոլետարական շարժմանը հուզող մի շարք հարցերի։ Այս աշխատություններն ունեն ո՛չ միայն պատմագիտական, այլև տեսական որոշ արժեք։ Սակայն «Բանվորների դեպուտատների Սովետ թե՞ պարտիա» հոդվածի հենց հարցադրումը սխալ է, որի վրա ժամանակին ուշադրություն է հրավիրել Վ. Ի. Լենինը. «Ինձ թվում է,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ հարցն այդպես դնել չի կարելի, որ լուծումն անպայման պետք է լինի՝ և բանվորների Դեպուտատների Սովետ, և պարտիա։ Հարցը — այն էլ չափազանց կարևոր—հարցն այն է միայն, թե ինչպես զատել կամ ինչպես միացնել Սովետի խնդիրները և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական պարտիայի խնդիրները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 10, էջ 6)։

Հետագայում, մասնավորապես «Բանվորների դեպուտատների առաջին Սովետը» աշխատության մեջ Բ. Կնունյանցը ճշտում է իր տեսակետը Սովետների նկատմամբ, դիտելով նրանց որպես ռևոլյուցիոն իշխանության սաղմի։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից անմիջապես հետո գրված «Դեկտեմբերյան տարելից», ««Հաղթողների» ցնծությունը», և այլ հոդվածներում Կնունյանցը հանդես է գալիս պայքարի լեգալ հնարավորությունները օգտագործելու օգտին, իր ընթերցողներին հավատ ներշնչում ռևոլյուցիայի հաղթանակի նկատմամբ։

Հետաքրքրությամբ է ընթերցվում որոշ կրճատումներով տպագրված «Աքսորի և փախուստի երեք ամիս» ընդարձակ հոդվածը. Կնունյանցը ամենայն մանրամասնությամբ նկարագրում է աքսորյալների կյանքը հեռավոր Օրդորսկում, տեղական բնակչության՝ նրանց նկատմամբ ցուցաբերած սրտացավ վերաբերմունքը, և ցարական կառավարության դաժան քաղաքականությունը Հյուսիսի ժողովուրդների հանդեպ։ «Նոր Ինտերնացիոնալի VII կոնգրեսը» հոդվածը նվիրված է II Ինտերնացիոնալի օպորտունիզմի դեմ Լենինի գլխավորությամբ բոլշևիկների մղած պայքարին։

Ժողովածուում տպագրված են նաև Բ. Կնունյանցի՝ 1908—1911 թթ. գրած մի շարք հոդվածներ։ Ժողովածուն ավարտվում է «Ազատ Ջեյրդաև» մահազդով, որը Բ. Կնունյանցի վերջին հոդվածն է, գրված բանտում, իր մահացած ռևոլյուցիոներ ընկերոջ հիշատակին։ Բ. Կնունյանցի՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով տոգորված այս վերջին տողերը վկայում են այն մասին, որ նա մնաց որպես բոցաշունչ ռևոլյուցիոներ։

Բ. Կնունյանցի «Ընտիր երկերի ժողովածուն» կարևոր դեր կխաղա մեր մասսաների կոմունիստական դաստիարակության գործում։

Կ. ԳԱԼՍՏՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՀԱՐՑ

Մարտունու շրջանի Ադամխան գյուղի բնակիչ Ա. Հայրապետյանը վերադարձել է Սովետական Բանակից, որտեղ նա ընդունվել է ՍՄԿՊ անդամության թեկնածու։ Նկատի ունենալով, որ չկան իր հետ համատեղ աշխատող կոմունիստներ, Հայրապետյանը դիմել է գյուղի տերիտորիալ սկզբնական կազմակերպությանը (որտեղ նա հաշվի է առնված) թեկնածուական ժամկետը երկարացնելու համար. պարտիական կազմակերպությունը քննության է առել նրա դիմումը և որոշել է մեկ տարի ժամանակով երկարացնել նրա թեկնածուական ժամկետը։ Խնդրում ենք պատասխանել, թե ճի՞շտ է արդյոք վարվել սկզբնական պարտիական կազմակերպությունը։ Շրջանային կոմիտեի որոշ աշխատողներ առարկում են պարտկազմակերպության այդ որոշմանը. նրանք գտնում են, որ Հայրապետյանի ՍՄԿՊ անդամ ընդունվելու համար կարող են երաշխավորել գյուղի ղեկավարները, որոնք, չնայած նրա հետ համատեղ չեն աշխատել, բայց համագյուղացի են և մանկությունից նրան լավ են ճանաչում։ Շրջկոմի աշխատողներից ոմանք էլ գտնում են, որ Հայրապետյանին կարող են երաշխավորել իրենց հարևան գյուղի այն կոմունիստները, որոնք նրա հետ համատեղ աշխատել են մինչև նրա բանակ մեկնելը։

Գ. ՀՈՒՆԱՆՅԱՆ
ՀԿՊ Մարտունու շրջկոմի նրահանգիչ

## ՊԱՏԱՍԽԱՆ

Համաձայն ՍՄԿՊ Կանոնադրության ՍՄԿՊ շարքերն ընդունվողին երաշխավորող կոմունիստները պետք է ճանաչեն մեկ տարվա համատեղ աշխատանքից։ Տվյալ դեպքում, եթե Ադամխան գյուղի կոմունիստները Ա. Հայրապետյանին համատեղ աշխատանքից չեն ճանաչում, ապա չեն կարող նրան երաշխավորել ՍՄԿՊ անդամ ընդունվելու համար։ Իսկ եթե հարևան գյուղի կոմունիստները Ա. Հայրապետյանին ճանաչում են համատեղ աշխատանքից մինչև Սովետական Բանակ մեկնելը, ապա նրանց իրավունք է վերապահվում երաշխավորելու նրան։ Իսկ ինչ վերաբերում է նրան, որ Հայրապետյանի Սովետական Բանակ մեկնելուց հետո նրա հետ աշխատող կոմունիստները կտրված են եղել նրանից, ապա դա խանգարիչ հանգամանք չի կարող հանդիսանալ, մանավանդ որ ընկ. Հայրապետյանն իր արժանիքների համար բանակում է ընդունվել ՍՄԿՊ անդամության թեկնածու։

*ՀԱՐՑ*

*Խնդրում ենք պատասխանել. ՍՄԿՊ անդամության թեկնածու կամ անդամ ընդունվելիս անհրաժե՞շտ է արդյոք ինքնակենսագրականը հաստատել պարտշրջկոմի կողմից։*

Ա. Քերոբյան

Ապարանի շրջանի Ջառջառիս գյուղի ակումբի գրադարանավար

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*ՍՄԿՊ շարքերն ընդունվողը մյուս փաստաթղթերի հետ միասին ներկայացնում է իր ձեռքով գրած ինքնակենսագրություն, որը ոչ մեկի, ինչպես նաև պարտշրջկոմի կողմից չի հաստատվում։ Պարտիայի շարքերն ընդունվողը ինքն է պատասխանատու իր ինքնակենսագրության ճշտության համար։ Իսկ եթե պարտիական կազմակերպությունը ցանկանում է ստուգել ՍՄԿՊ շարքերն ընդունվողի ինքնակենսագրության այս կամ այն տվյալի ճշտությունը, ապա նա կարող է համապատասխան կազմակերպություններից հարցում անել։*

*ՀԱՐՑ*

*Խնդրում ենք պատասխանել. որքանո՞վ է ճիշտ, երբ կոլտնտեսային արտադրության մեջ չաշխատող կին կոմունիստները (որոնց ամուսինները ուսուցիչներ են) հաշվառման մեջ են գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունում. Նպատակահարմար չէ՞ արդյոք նրանց տեղափոխել տերիտորիալ, կամ դպրոցական սկզբնական պարտիական կազմակերպություն։*

Շ. ՖԱՐՄԱՆՅԱՆ

Ադրբեջանական ՍՍՌ Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզի Մարտունու շրջանի Հերհեր գյուղի սկզբնական պարտկազմակերպության քարտուղար

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Կոլտնտեսային պարտիական կազմակերպության բոլոր անդամները պարտավոր են աշխատել կոլտնտեսային արտադրության մեջ։ Իսկ եթե առանձին կին կոմունիստներ այս կամ այն պատճառով չեն աշխատում կոլտնտեսային արտադրության մեջ, ապա դա չի նշանակում, որ նրանց պետք է կոլտնտեսային պարտիական կազմակերպությունից տեղափոխել դպրոցական կամ տերիտորիալ պարտիական կազմակերպություն նրա համար, որ նրանց ամուսինները ուսուցիչներ են։ Այդպիսի դեպքերում պետք է անհատական մոտեցում ունենալ յուրաքանչյուր կին կոմունիստի նկատմամբ, պարզել թե ինչու նա չի աշխատում կոլտնտեսության մեջ։ Չէ՞ որ իր ժամանակին այդ կոմունիստները աշխատել են կոլտնտեսային արտադրության մեջ, նրանց համար ավելի հետաքրքիր է լինել կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում, քան թե դպրոցական կամ տերիտորիալ։ Եթե կին կոմունիստը*



*հարգելի պատճառով ի վիճակի չէ արտադրական աշխատանք կատարելու, ապա նրա ուժերը պետք է օգտագործել հասարակական այլ աշխատանքներում։*

*ՀԱՐՑ*

*Խնդրում ենք պատասխանել. կարո՞ղ է արդյոք պարտիական կազմակերպությունն իր նախաձեռնությամբ, առանց դիմումի, քննել կոմունիստին տրված պարտիական տույժը վերացնելու հարցը։*

Վ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Դաստակերտի կոմբինատի պարտբյուրոյի անդամ

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Այս կամ այն զանցանքի համար պարտիական տույժը նպատակ ունի ուղղելու, դաստիարակելու կոմունիստին, նրան զերծ պահելու անվայել արարքներից։ Պարտիական կազմակերպությունը տույժի ենթարկելով կոմունիստին, պարտավոր է նրա նկատմամբ ցուցաբերել առանձնահատուկ վերաբերմունք, հետևել նրա հետագա վարքագծին, նրա համար ստեղծել պարտիական, ընկերական մթնոլորտ, որպեսզի նա ուղղի իր սխալները։ Իհարկե, պարտիական տույժը վերացնելու համար պետք է դիմի ինքը՝ կոմունիստը։ Սակայն շատ անգամ կոմունիստը զգալով նույնիսկ, որ ժամանակն է վերացնել իր պարտիական տույժը, լռում է, չի դիմում պարտիական կազմակերպությանը։ Տվյալ դեպքում, երբ պարտիական կազմակերպությունը համոզված է, որ կոմունիստը պարտիական տույժից հետո իրեն լավ է դրսևորել, պետք է նրան խորհուրդ տա դիմում ներկայացնելու՝ իր տույժը վերացնելու համար։ Ճիշտ է, դիմում ներկայացնելը ձևական կողմն է, բայց այն հիմք է ծառայում տվյալ հարցը քննարկելու համար։*

*ՀԱՐՑ*

*Եթե գյուղական դպրոցում աշխատում են վեց կոմունիստ ուսուցիչ, կարիք կա՞ դպրոցում ստեղծել առանձին պարտիական կազմակերպություն, թե՞ կոմունիստ ուսուցիչներին ընդգրկել կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում։*

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ամասիայի շրջանի Մեղրաշատ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության բյուրոյի անդամ

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն «սկզբնական պարտիական կազմակերպություններ ստեղծվում են ֆաբրիկաներում, գործարաններում, սովետական տնտեսություններում, ՄՏ կայաններում և տնտեսական այլ ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային ուժերի զորամասերում, գյուղերում, հիմնարկներում, ուսումնական հաստատություններում և այլն՝ պարտիայի առնվազն 3 անդամների առկայության դեպքում»։ Ստեղծված սկզբնական պարտկազմակերպությունները*

հաստատվում են շրջանային, քաղաքային կոմիտեների կամ համապատասխան քաղբաժինների կողմից։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ դպրոցում, ուր աշխատում են 3 և ավելի կոմունիստ, վերը նշված սկզբունքով կազմակերպվում է սկզբնական պարտիական կազմակերպություն։

*ՀԱՐՑ*

Շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո վերացվել են բաժինները։ Շրջկոմի բյուրոյի որոշմամբ սկզբնական պարտիական կազմակերպություններին են ամրացված շրջկոմի հրահանգիչները։ Յուրաքանչյուր հրահանգիչ իրեն ամրացված կազմակերպությունների գործունեության համար պատասխանատու է շրջկոմի առաջ։ Սակայն որքանո՞վ է ճիշտ, երբ շրջանի ակտիվը, այդ թվում և հրահանգիչները, սկսած սիլոսացման շրջանից մինչև աշնանացանի վերջը, ամրացվում են ըստ առանձին գյուղերի։

Տ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿՊ Գորիսի շրջկոմի հրահանգիչ

*ՊԱՏԱՍԽԱՆ*

Պարտիական ակտիվի ուժերն օգտագործել այս կամ այն կարևոր քաղաքական և տնտեսական միջոցառումների անցկացման ժամանակ շատ անհրաժեշտ է։ Առանց պարտիական ակտիվի՝ շրջկոմի գործունեությունը չի կարող լինել բազմակողմանի և կազմակերպված։ Բայց երբ շրջկոմի հրահանգիչը երկար ժամանակ ամրացվում է մի գյուղի, նա կտրվում է իր սպասարկած մյուս պարտիական կազմակերպություններից։ Պարզ է, որ այդ դեպքում նա չի կարող կոնկրետ օգնություն ցույց տալ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներին, չի կարող իրականացնել իր աշխատանքային պլանում նախատեսված միջոցառումները։ Նպատակահարմար է, ինարկե, շրջկոմի հրահանգչին չամրացնել միայն մեկ գյուղի, այլ հնարավորություն ստեղծել, որպեսզի նա մշտապես կապված լինի իրեն ամրացված սկզբնական պարտկազմակերպությունների հետ, որոնց աշխատանքի համար նա պատասխանատու է։

---

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

Հարգելի խմբագրություն.

«Մոլոդայա Գվարդիա» հրատարակչությունը (Մոսկվա) լույս է ընծայել «За власть Советов» ժողովածուն, ուր զետեղված են 1913 թվականից ՍՄԿԿ անդամ Նիկոլայ (Ջումշուդ) Օգանեսովի հիշողությունները՝ «Բաքուն այն օրերին» վերնագրով։

Մենք՝ Բաքվի բոլշևիկյան կազմակերպության մարտական դրուժինայի նախկին անդամներս, կարդալով ընկ. Օգանեսովի հիշողությունները, ցավով ենք նշում, որ այնտեղ թույլ են տրվել մի շարք անճշտություններ, սխալներ։

Ամենից առաջ, ըստ հեղինակի ստացվում է, որ Բաքվի բոլշևիկյան կազմակերպության մարտական դրուժինան ձևավորվել է 1917 թվականի օգոստոս ամսին։ Դա ճիշտ չէ։ Մարտական դրուժինայի կազմավորումը և նրա անդամների ուսուցումը սկսվել է 1918 թվականի փետրվարից։ Երկրորդ՝ ընկ. Օգանեսովը իր հիշողություններում սկզբից մինչև վերջ պնդում է, որ ինքը եղել է այդ դրուժինայի կազմակերպիչն ու պետը։ Այնինչ իրողությունն այն է, որ մարտական դրուժինայի կոմիսարը եղել է Սերգո Մարտիկյանը, իսկ զանազան ժամանակներում դրուժինայի հրամանատարներն են եղել ընկ. ընկ. Կ. Բաստամովը, Արտ. Հովհաննիսյանը և Ն. Անանչենկոն։ Մենք չենք ունեցել այլ հրամանատարներ, կամ, ինչպես հեղինակն է ասում, պետեր։ Իր անձը ինքնաթմբկահարելու նպատակով ընկ. Օգանեսովը կոպիտ կերպով աղավաղում է փաստերը, վերագրելով իրեն այնպիսի ծառայություններ, որ ինքը չի կատարել։

Տվյալ հիշողության մեջ կան այլ կարգի սխալներ, անճշտություններ։

1. Հիշողություններում ասված է, որ մուսավաթիստների շտաբը գտնվում էր իբր թե «Իսմայիլիում» (էջ 237). իրականում այն տեղավորված էր քաղաքի մուսուլմանական թաղամասում, ոչ հեռու մզկիթից։ Վերջապես, հարկավոր էր իմանալ, որ բնակելի վայրերում, հատկապես այնպիսի մի մեծ քաղաքում, ինչպիսին Բաքուն էր, զինվորական մասերը չէին կարող գործել մեծ զանգվածներով։ Քաղաքում մարտական գործողությունները տեղի են ունեցել փոքր խմբերով, գրավել ենք տուն առ տուն, փողոց առ փողոց։ Այնինչ հեղինակը «Իսմայիլի» գրավումը նկարագրել է որպես մի խոշորական դաշտային մարտ։

2. Ըստ հեղինակի, 1917 թվականի դեկտեմբերին Բաքվում իբրև թե սկսվել էր Կարմիր Բանակի կանոնավոր զորամասերի կազմավորումը։ Անհասկանալի է, թե ինչպե՞ս Կովկասյան բանակի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն կարող էր 1917 թվականին կազմավորել կանոնավոր զորամասեր, քանի որ Կարմիր Բանակի կազմակերպման մասին դեկրետը հրապարակվել է 1918 թվականի փետրվարին։ Մեզ թվում է, որ ընկ. Օգանեսովը խոր թյուրիմացության մեջ է։ Այդ շրջանում կազմակերպվել են ոչ թե Կարմիր Բանակի զորամասեր, այլ դաշնակցական կանոնավոր գումարտակներ, որոնց հետ ոչ մի առնչություն, ընդհանուր բան չեն ունեցել մեր մարտական դրուժինան, Կարմիր Գվարդիան, անգամ հին բանակի ռևոլյուցիոն մասը։

3. Հիշողություններում ճշմարտացի չի տրված հեղինակի մասնակցությունը Շամխորի իրադարձություններին։ Ամենից առաջ, ոչ թե Ստ. Շահումյանն է Բաքվից մեկնել Ն. Օգանեսովի հետ, այլ Ն. Օգանեսովը կարող էր ընկնել այն վագոնը, ուր գտնվում էր Ստ. Շահումյանը։ Ինչպես հայտնի է, Ստ. Շահումյանը Բաքվից մեկնել է հունվարի 7-ին և հասել Գյանջա այն ժամանակ, երբ արդեն ավարտվել էին Շամխորի արյունոտ իրադարձությունները։ Այստեղից էլ հասկանալի է, որ հիշողությունների հեղինակը չէր կարող, ինչպես ինքն է գրում, «ընկնել կռվի ամենախորքը» (էջ 234)։

Նկարագրված ժամանակ Գյանջա—Շամխոր երկաթուղային ճանապարհը հսկում էին մուսավաթիստները։ Այդ պայմաններում, հասկանալի է, որ Շահումյանը Գյանջա կայարանում չէր կարող ազատ դուրս գալ վագոնից։ Ստ. Շահումյանին օգնության եկավ Գյանջայի բոլշևիկյան կազմակերպությունը. ընկ. Ասքանազ Մռավյանը ինքը գնաց կայարան, զարտուղի ճանապարհներով Ստ. Շահումյանին դուրս բերեց վագոնից և բարեհաջող հասցրեց քաղաք (տե՛ս Վ. Մռավյան, «Հանդիպումներ Շահումյանի հետ», Հայպետհրատ, 1953 թ.)։

Ն. Օգանեսովը գրում է, որ գնացքում իր հրամանատարության տակ կային դրուժինայի երեք վաշտ։ Հարց է առաջանում, ունենալով

*երեք վաշտ, մի՞թե նա չէր կարող ուղեկցել Ստ. Շահումյանին դեպի քաղաք։*

*4. Աղճատված ու Ն. Օգանեսովի կողմից կեղծված է Շենդրիկովկայի օպերացիան (տե՛ս էջ 234—235)։ Այստեղ էլ հեղինակը իրեն է վերագրել ծառայություններ, որ ինքը չի կատարել։*

*Այս բոլորից հետո կասկածանք է հարուցում հեղինակի այն գրածը, որ իբր թե նա հանդիպումներ է ունեցել Վ. Ի. Լենինի և Ստ. Շահումյանի հետ Պետրոգրադում, ինչպես և այն, որ իբր թե Շահումյանը Ն. Օգանեսովին ասել է, թե Բաքվի նավթագործ բանվորները «քեզ ճանաչում են որպես հին դրուժիննիկի» (էջ 232)։ Իրականում մինչև 1918 թվականը մեզ մոտ չեն եղել կազմակերպված պարտիական դրուժինաներ։*

*Մենք վճռականորեն բողոքում ենք Ն. Օգանեսովի կողմից պարտիայի անցյալի պատմության առանձին էպիզոդների, իրադարձությունների ու փաստերի կոպիտ աղավաղման ու կեղծումների դեմ։ Եթե Ն. Օգանեսովը որոշել էր հանդես գալ իր հիշողություններով, ապա նա պարտավոր էր գրել ճշմարտացի ու ազնվորեն, առանց գունազարդման ու ինքնաթմբկահարման։*

Բաքվի մարտական դրուժինայի նախկին անդամներ՝

*Ա. ԱՂԱՄԱԼՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1917 թվականից),*

*Ե. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1920 թվականից),*

*Գ. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1918 թվականից),*

*Մ. ԹՈՒՄԱՆՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1917 թվականից),*

*Մ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1917 թվականից)։*

*Թ. ՄԱՐՏԻԿՅԱՆ (ՍՄԿՊ անդամ 1928 թվականից),*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս .Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Գ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

*ՎՖ 00976* *Պատվեր 1* *Տիրաժ 9350*

Տպ. 8 մամուլ, մամուլում 68.840 նիշ: *Ստորագրված է տպագրության 21/I 1959 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*